### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4 ԱՊՐԻԼ. 1968
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 47-ՐԴ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

Содержание



# ԳԻՏԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԻՄՆԱԴԻՐԸ

## ԹԵԶԻՍՆԵՐ ԿԱՐԼ ՄԱՐՔՍԻ ԾՆՆԴՅԱՆ 150-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

1968 թվականի մայիսի 5-ին լրանում է գիտական կոմունիզմի հիմնադիր, հանճարեղ մտածող, բոցաշունչ հեղափոխական, համաշխարհային պրոլետարիատի ուսուցիչ և առաջնորդ Կարլ Մարքսի ծննդյան 150-ամյակը։

Կարլ Մարքսը իր համախոհ և հավատարիմ զինակից Ֆրիդրիխ Էնգելսի հետ կոմունիզմի պայքարի դրոշը պարզեցին մարդկության պատմության այն բեկումնային պահին, երբ հասարակական կյանքի ասպարեզ էր դուրս եկել պատմության մեջ ամենահեղափոխական դասակարգը՝ պրոլետարիատը։ Մարքսի ու Էնգելսի ամբողջ տեսական ու պրակտիկ գործունեությունը նպաստեց այդ դասակարգի քաղաքական և գաղափարական զարգացմանը։

Մարքսի մեծությունն այն է, որ նա պատասխաններ տվեց պատմական զարգացման ամբողջ ընթացքի կողմից օրակարգի մեջ դրված հարցերին։ Մարքսը մեծագույն հեղաշրջում կատարեց մարդկության հասարակական գիտակցության մեջ, մշակեց պրոլետարիատի գիտական աշխարհայացքը, որը ճիշտ է արտացոլում պատմական զարգացման օրենքները։ Նա սոցիալիզմը ուտոպիայից վերածեց գիտության, հիմնավորեց կապիտալիզմի կործանման և կոմունիզմի հաղթանակի անխուսափելիությունը։ Կ. Մարքսը բանվոր դասակարգին զինեց իր պատմական միսիայի ըմբռնմամբ՝ որպես շահագործական կարգերի գերեզմանափորի և սոցիալիստական հասարակության կերտողի, մատնանշեց հեղափոխական տեսությունը մասսայական բանվորական շարժման հետ միացնելու ուղիները։

Պրոլետարիատի ազատագրության պայքարը Մարքսի կյանքի ու գործունեության գլխավոր բովանդակությունն էր, նա այդ պայքարին նվիրվում էր իր անընկճելի բնավորության ամբողջ կրքով։ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» մարտական նշանաբանով Մարքսն ու Էնգելսը դրեցին կազմակերպված միջազգային կոմունիստական շարժման սկիզբը։

Անսովոր դժվարին էր Մարքսի կյանքի ուղին։ Նա հալածանքների էր ենթարկվում բոլոր եվրոպական երկրների ռեակցիոն ուժերի կողմից, նրա կյանքը թունավորում էին բուրժուազիայի գաղափարական զինակիրները։ Սակայն անսահմանորեն հավատարիմ լինելով պրոլետարական հեղափոխականի պարտքին, Մարքսը արիաբար դիմացավ բոլոր փորձություններին։

Հեղափոխական պայքարի ընթացքում և կյանքի ձախորդությունների ժամանակ Մարքսը միշտ գտնում էր իր մարտական սխրակից և մերձավորագույն

բարեկամ Էնգելսի շատ հուսալի և գործուն աջակցությունը։ Նրանք միասին էին կանգնած դարաշրջանի հեղափոխական իրադարձությունների կենտրոնում, միասին էին մշակում պրոլետարիատի հեղափոխական ուսմունքը։

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի մահից հետո նրանց գործը շարունակեց Վ. Ի. Լենինը, որը մարքսիզմը զարգացրեց պատմական նոր պայմաններում։

Մարքսիստական գաղափարները իրենց կենսականությունը ցույց տվեցին պրոլետարիատի դասակարգային պայքարի բոլոր փուլերում։ Այդ գաղափարները հսկայական դեր խաղացին մինչմոնոպոլիստական կապիտալիզմի դարաշրջանում, երբ պրոլետարիատը սկսեց վերածվել ինքնուրույն քաղաքական ուժի, սկսեց ձևավորվել պրոլետարական հեղափոխության բանակը։

Մարքս-լենինյան գաղափարները պրակտիկ գործունեության ուղեցույց դարձան պրոլետարական հեղափոխականների և աշխատավոր զանգվածների համար, որոնք հանուն իրենց ազատության պայքարի ելան իմպերիալիզմի դարաշրջանում, երբ կապիտալիզմի համեմատաբար խաղաղ զարգացման ժամանակաշրջանից հետո սկսվել էր հեղափոխական բուռն ցնցումների շրջանը, որի սկիզբը դրեց 1905 թվականի ռուսական հեղափոխությունը։ Առաջին համաշխարհային պատերազմը ծայր աստիճանի սրեց և ջրի երես հանեց կապիտալիստական սիստեմի խորագույն հակասությունները։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որը պատմության մեջ առաջին անգամ հաստատեց աշխատավոր գյուղացիության հետ դաշինք կնքած բանվոր դասակարգի իշխանությունը, մարդկության համար բաց արեց սոցիալիզմի ուղին։

Մարքս-լենինյան ուսմունքը նոր հաղթանակներ է տանում արդի դարաշրջանում, որն սկսվեց մեծ Հոկտեմբերի հաղթանակով, համաշխարհային մասշտաբով սոցիալիզմին անցնելու դարաշրջանում։ Սովետական Միությունում, իսկ նրանից հետո մի շարք ուրիշ երկրներում, գործնականում իրականացվում է հասարակական կյանքի կառուցումը մարքսիզմ-լենինիզմի գիտական հիման վրա։ Այդ ուսմունքի ուժի և կենսունակության ցայտուն արտահայտությունը հանդիսացավ համաշխարհային սոցիալիստական սիստեմի գոյացումը։ Միևնույն ժամանակ կապիտալիստական աշխարհում ավելի ու ավելի են սրվում հակասությունները և սաստկանում պրոլետարիատի ու բոլոր աշխատավորների դասակարգային մարտերը մոնոպոլիստական բուրժուազիայի դեմ. ազատագրական շարժման հարվածների ներքո փուլ եկավ իմպերիալիզմի գաղութային սիստեմը։ Պայքարի ընթացքում ուժերի հարաբերակցությունը միջազգային ասպարեզում ավելի ու ավելի է փոխվում հօգուտ սոցիալիզմի։ Մարքսիզմ-լենինիզմի գաղափարները, տիրապետելով միլիոնավորների մտքերին, նյութական մեծ ուժ են դարձել։

## I. ՄԱՐՔՍԸ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՊՐՈԼԵՏԱՐԻԱՏԻ ՄԵԾԱԳՈՒՅՆ ՏԵՍԱԲԱՆՆ Է ԵՎ ԱՌԱՋՆՈՐԴԸ

1. Էնգելսի համագործակցությամբ Մարքսի մշակած ուսմունքը մի ամբողջական աշխարհայացք է, փիլիսոփայական, տնտեսագիտական և սոցիալ-քաղաքական հայացքների մի կուռ համակարգ։ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը ստեղծեցին դիալեկտիկական-մատերիալիստական փիլիսոփայությունը, գիտական քաղաքատնտեսությունը և գիտական սոցիալիզմը, որոնք կազմում են մարքսիզմի երեք անքակտելի մասերը։ Այդ մասերից յուրաքանչյուրն այն





նախորդ հասարակական մտքի քննադատական յուրացման և հետագա զարգացման արգասիքն է, որն առավել բարձր մակարդակի հասավ XIX դարի իր երեք գլխավոր հոսանքներում՝ գերմանական դասական փիլիսոփայության, անգլիական քաղաքատնտեսության և ֆրանսիական ուտոպիական սոցիալիզմի մեջ։ Մարքսիզմն առաջացավ ոչ թե գիտության զարգացման մայրուղուց դուրս, այլ եղավ գիտության բոլոր լավագույն նվաճումների օրինական ժառանգորդն ու շարունակողը։ Մարքսիզմին նախորդած հասարակական տեսությունները գերազանցապես հայեցողական բնույթ էին կրում։ Ի տարբերություն դրանց, մարքսիզմը աճեց հեղափոխական պայքարի բովում և հուժկու զենք դարձավ աշխարհը ոչ միայն ճանաչելու, այլև արմատապես վերափոխելու համար։

ա) Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը մեծագույն հեղաշրջում կատարեցին փիլիսոփայության մեջ, ստեղծելով դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմը՝ բնության, հասարակության և մարդկային մտածողության զարգացման առավել ընդհանուր օրենքների գիտությունը։

Մինչմարքսյան ժամանակաշրջանում շատ փիլիսոփաներ էին մատերիալիստական հետևությունների հանգում։ Սակայն նրանց մատերիալիզմը համակողմանի ու հետևողական չէր, օրգանապես չէր զուգորդվում զարգացման տեսության հետ, չէր տարածվում մարդկային հասարակության ճանաչողության վրա։ Մարքսն ու Էնգելսը վճռականորեն հաղթահարեցին զանազան փիլիսոփայական հոսանքների իդեալիզմն ու մետաֆիզիկան, մատերիալիզմը միացրին դիալեկտիկայի հետ, նրա դրույթները տարածեցին հասարակական պրոցեսների ճանաչողության վրա, ստեղծելով նոր, իրոք գիտական փիլիսոփայական ուսմունք՝ դիալեկտիկական մատերիալիզմը։

Դեն նետելով նախորդ փիլիսոփայության հայեցողականությունը, մարքսիզմը նրան ակտիվ, վերափոխիչ բնույթ տվեց, այն սերտորեն կապելով հասարակական-պատմական պրակտիկայի հետ։ «Փիլիսոփաները լոկ տարբեր կերպ բացատրել են աշխարհը, նշում էր Մարքսը, սակայն խնդիրը այն փոխելն է» (Երկեր, հ. 3, էջ 4)*։

Մատերիալիզմը կիրառելով պատմական զարգացումը ըմբռնելու համար, Մարքսն ապացուցեց նյութական արտադրության որոշիչ դերը հասարակական կյանքում։ Ըստ Մարքսի, պատմությունը մի օրինաչափ պրոցես է, որի ընթացքում հասարակական-տնտեսական մի ֆորմացիան փոխարինում է մյուսին։ Մարքսը հիմնավորեց ժողովրդական զանգվածների վճռական դերը պատմության մեջ և այդ դերի մեծացումը հասարակական զարգացման ընթացքում։ Ընդունելով պատմական պրոցեսի օբյեկտիվ բնույթը, մարքսիզմը մեծ դեր է հատկացնում մարդկային գիտակցական գործունեությանը, հսկայական նշանակություն է տալիս հեղափոխական տեսությանը։

բ) Կ. Մարքսը ստեղծեց գիտական քաղաքատնտեսությունը, տնտեսագիտորեն հիմնավորեց բանվոր դասակարգի հեղափոխական պայքարը և հաղթանակը։

Իր գլխավոր աշխատության մեջ՝ «Կապիտալում» և մյուս գործերում Մարքսը բացահայտեց բուրժուական հասարակության շարժման տնտեսական օրենքները և կապիտալիստական շահագործման մեխանիզմը, ապացուցելով, որ այդ շահագործումը կատարվում է վարձու բանվորների աշխատանքի

* Այս և մյուս մեջբերումները արված են ռուսական աղբյուրներից։— Խմբ։

2. Մարքսը սահմանեց պրոլետարիատի դասակարգային պայքարի ստրատեգիայի ու տակտիկայի կարևորագույն սկզբունքները: Նա անհրաժեշտ էր համարում, որ հեղափոխական շարժման բոլոր փուլերում ապահովված լինի.

— ամբողջ ազատագրական շարժման մեջ բանվոր դասակարգի ղեկավար դերի ապահովումը՝ իր քաղաքական կուսակցության գլխավորությամբ,

— շարժման վերջնական նպատակների համար մղվող պայքարի զուգորդումը բանվոր դասակարգի տնտեսական ու քաղաքական մերձավորագույն խնդիրների լուծման հետ,

— պրոլետարիատի ամուր դաշինքի հաստատումը աշխատավորության լայն խավերի, և առաջին հերթին գյուղացիության հետ,

— պրոլետարիատի դասակարգային շարժման միացումը դեմոկրատական ազատությունների համար, ճնշված ժողովուրդների ազգային-ազատագրության համար մղվող պայքարը պաշտպանելու հետ,

— հավատարմությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմին,

— հավատարմությունը գիտական կոմունիզմի սկզբունքներին և տակտիկայի ճկունությունը:

Մարքսիզմն ուսուցանում է, որ կապիտալի միջազգային ուժին, տարբեր երկրների բուրժուազիային, որը փորձում է միացյալ ջանքերով ճնշել պրոլետարական շարժումը, բանվոր դասակարգը պետք է հակադրի իր ինտերնացիոնալ միասնությունը: Բանվոր դասակարգի միջազգային համերաշխությունը նրա հաղթանակի անվերապահ պայմանն է: «Անցյալի փորձը, գրել է Մարքսը, ցույց տվեց, որ քամահրական վերաբերմունքը եղբայրական դաշինքի նկատմամբ, որ պետք է գոյություն ունենա տարբեր երկրների բանվորների միջև և ազատության պայքարում նրանց դրդի ամուր թիկունք լինել միմյանց, պատժվում է նրանց ցիրուցան ջանքերի ընդհանուր պարտությամբ» (Երկեր, հ. 16, էջ 10—11):

Վճռական պայքար մղելով բուրժուական նացիոնալիզմի ու շովինիզմի դեմ, Մարքսը ընդգծում էր, որ բանվոր դասակարգի իսկական ազգային շահերը ոչ միայն չեն հակասում ինտերնացիոնալ շահերին, այլ, ընդհակառակը, օրգանապես զուգորդվում են դրանց հետ: Ինտերնացիոնալիզմի սկզբունքները մոռացության տալը վնաս է հասցնում ոչ միայն միջազգային բանվորական շարժմանը ամբողջությամբ վերցված, այլև ամենից առաջ տվյալ երկրի բանվոր դասակարգի ազգային շահերին:

Կ. Մարքսը բացահայտեց պրոլետարիատի դասակարգային պայքարի փոխադարձ կապը միլիտարիզմի դեմ, զավթողական պատերազմների դեմ մղվող պայքարի հետ: Նա բոլոր երկրների պրոլետարներին համատեղ գործողությունների էր կոչում ընդդեմ շահագործողների ու նրանց միլիտարիստական քաղաքականության, որոնք, հետապնդելով հանցավոր նպատակներ, խաղ են անում ազգային նախապաշարումների հետ և արյուն հեղում կողոպտչական պատերազմներում ու վատնում ժողովուրդների հարստությունը: «Բանվոր դասակարգը պատմության ասպարեզ է թևակոխում արդեն ոչ թե որպես հլու կատարածու, այլ որպես անկախ ուժ, որը գիտակցում է իր սեփական պատասխանատվությունը և ընդունակ է խաղաղություն թելադրելու այնտեղ, որտեղ իր, այսպես կոչված, տերերը գոռում են պատերազմի մասին» (Երկեր, հ. 16, էջ 372—373):



3. Հիմնավորելով պրոլետարիատի համաշխարհային պատմական դերը, Մարքսը հանգեց այն հետևության, որ անհրաժեշտ է ստեղծել նրա դասակարգային կազմակերպությունը: Նա մեծ նշանակություն էր տալիս արհմիությունններին, որպես իրենց տնտեսական շահերի համար մղվող պայքարում բանվորների մասսայական կազմակերպությունների: Բայց ըստ Մարքսի ուսմունքի, պրոլետարիատի դասակարգային կազմակերպության բարձրագույն ձևը, նրա առաջավոր ղեկավար ուժը կարող է լինել միայն բանվոր դասակարգի հեղափոխական կուսակցությունը:

Մարքսը անդուլ կերպով ընդգծում էր, որ պրոլետարական կուսակցության գաղափարական միասնությունն ու համախմբվածությունը նրա մարտունակության աղբյուրն է: Նա մշակեց կուսակցության կազմակերպական կառուցվածքի հիմունքները, պրոլետարական կուսակցության սկզբունքները՝ կանոնադրության և ծրագրի կատարման պարտադրականություն, փոքրամասնության ենթարկվելը մեծամասնության, խիստ կարգապահության զուգորդումը ներկուսակցական լայն դեմոկրատիայի հետ, կուսակցության յուրաքանչյուր անդամի իրավունքների պահպանում: Պասկազերծ անելով իբր պատմությունը կերտող հերոսների մասին իդեալիստական տեսությունը, Մարքսը և Էնգելսը վճռականորեն հանդես եկան հանուն ղեկավարման կոլեկտիվ մեթոդների, ընդդեմ առանձին գործիչների մեծարման:

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը ստեղծեցին միջազգային առաջին կոմունիստական կազմակերպությունը՝ Կոմունիստների միությունը, որը դարձավ պրոլետարական հեղափոխականների դաստիարակության դպրոց և պատմության մեջ մտավ որպես պրոլետարական կուսակցության սաղմ, որպես Առաջին Ինտերնացիոնալի նախորդ: Կոմունիստների միության ծրագիրը եղավ Մարքսի և Էնգելսի գրած «Կոմունիստական կուսակցության մանիֆեստը»:

1848—1849 թվականների հեղափոխությունը գործնականորեն հաստատեց դասակարգային պայքարի մարքսիստական տեսության հետևությունները: Մարքսի և Էնգելսի գլխավորած Կոմունիստների միության անդամները ամենաեռանդուն մասնակցությունը ցուցաբերեցին ծավալված հեղափոխական-դեմոկրատական շարժմանը, պաշտպանելով պրոլետարիատի շահերը: «Նոր Հռենոսյան լրագիրը», որը խմբագրում էր Մարքսը, դարձավ ոչ միայն առաջավոր դեմոկրատիայի տրիբունա, այլև կազմակերպող հեղափոխական կենտրոն: Հեղափոխության պարտությունից հետո սկսված ժամանակաշրջանում պրոլետարական հեղափոխականների համախմբման ուղղությամբ Մարքսի գործունեությունը և նրա կողմից գիտական տեսության հետագա մշակումը հսկայական դեր խաղացին պրոլետարիատի ազատագրական պայքարի նոր, ավելի բարձր էտապի նախապատրաստման գործում:

4. Կ. Մարքսի հեղափոխական պրակտիկ գործունեության աչքի ընկնող նվաճումը եղավ 1864 թվականին բանվորների միջազգային ընկերության՝ Առաջին Ինտերնացիոնալի հիմնադրումը: Մարքսը Ինտերնացիոնալի ոգին էր, նրա իսկական առաջնորդը, միջազգային պրոլետարիատի պայքարի հիմնական ուղղությունները որոշող բոլոր կարևորագույն փաստաթղթերի հեղինակը: Առաջին Ինտերնացիոնալը խոշոր ուղենիշ դարձավ պրոլետարիատի միջազգային համերաշխության զարգացման մեջ, կարևոր էտապ՝ մարքսիզմը բանվորական շարժման հետ միացնելու պրոցեսում:

Մարքսը և Էնգելսը դաստիարակեցին պրոլետարական այնպիսի հեղափոխականների մի փայլուն սերունդ, ինչպիսիք են՝ Ա. Բեբելը, Ի. Ֆ. Բեկկերը,

Ջ. Վայլենը, Վ. Վոլֆը, Ֆ. Զորգեն, Պ. Լաֆարգը, Վ. Լիբկնեխտը, Լ. Ֆրանկելը և ուրիշներ։

Առաջին Ինտերնացիոնալի շրջանակներում Մարքսը և Էնգելսը վճռական պայքար էին մղում ոչ պրոլետարական սոցիալիզմի զանազան ուղղությունների, ռեֆորմիզմի և «ձախ» աղանդավորության դեմ։ Հատուկ նշանակություն ունեցավ մանրբուրժուական «հեղափոխականության» գաղափարական ջախջախումը և նրա հետ կազմակերպական սահմանազատումը, մի հոսանք, որի արտահայտիչներն էին անարխիստները՝ Մ. Բակունինը ու նրա հետևորդները։ Մարքսը դատապարտեց անարխիստների թերահավատությունը բանվոր դասակարգի հեղափոխական հնարավորությունների նկատմամբ, այն, որ նրանք չէին հասկանում հաղթական հեղափոխության օբյեկտիվ պայմանները։ Նա ցույց տվեց, որ հեղափոխական պայքարի օբյեկտիվորեն անհրաժեշտ էտապների վրայով ցատկելու անարխիստների փորձերը, տարերային խռովության նրանց քարոզը, կուսակցության, որպես բանվորական շարժման ղեկավար ուժի, ժխտումը ըստ էության տանում են դեպի կապիտուլյացիա բուրժուազիայի առջև։ Մարքսը նշավակեց բանվորական շարժման ներսում «ձախ» աղանդավորության համար բնորոշ պառակտիչ գործողությունները որպես պրոլետարիատի գործի դավաճանություն։

Առաջին Ինտերնացիոնալի դրոշով միջազգային պրոլետարիատը առաջին անգամ հանդես եկավ որպես հեղափոխական հզոր ուժ, որը հաստատում է «Նոր հասարակարգ, որի միջազգային սկզբունքն է լինելու խաղաղությունը, քանի որ ամեն մի ժողովրդի տիրակալը լինելու է նույնը՝ աշխատանքը» (Երկեր, հ. 17, էջ 5)։

**Ինտերնացիոնալը բանվոր դասակարգին գաղափարապես նախապատրաստեց պրոլետարական պետության ստեղծման՝ մարդկության պատմության մեջ առաջին փորձին՝ 1871 թվականի Փարիզի կոմունային:** Մարքսը և Էնգելսը ջերմորեն ողջունեցին Կոմունայի ծնունդը, ձգտում էին իրենց խորհուրդներով օգնել նրա ղեկավարներին։ Ընդհանրացնելով Կոմունայի դասերը, վերլուծելով նրա հաջողություններն ու սխալները, Մարքսը ակնառու ցույց տվեց բանվոր դասակարգի առաջավոր տեսության և ինքնուրույն քաղաքական կուսակցության անհրաժեշտությունը, զարգացրեց ուսմունքը պրոլետարիատի դիկտատուրայի մասին, որպես հասարակության հեղափոխական վերափոխման անհրաժեշտ պայմանի։

Կոմունայից հետո մարքսիզմը աստիճանաբար գերակշռող հոսանք է դառնում բանվորական շարժման մեջ։ Սկսվում է համաշխարհային պատմության նոր դարաշրջան՝ մարքսիզմի՝ լայնությամբ տարածվելու, մասսայական սոցիալիստական բանվորական կուսակցությունների ստեղծման դարաշրջանը։

**5. XIX դարի վերջում, երբ կապիտալիստական երկրների մեծ մասում արդեն ստեղծվել էին բանվոր դասակարգի ինքնուրույն քաղաքական կուսակցություններ, վերստին առաջին պլանի վրա դրվեց պրոլետարիատի միջազգային միավորում կազմակերպելու խնդիրը:** Այդպիսի միավորման ձևը դարձավ Երկրորդ Ինտերնացիոնալը, որը հիմնվեց 1889 թվականին՝ Ֆ. Էնգելսի անմիջական մասնակցությամբ։

Կ. Մարքսի մահից հետո (1883 թ. մարտի 14) Ֆ. Էնգելսը շարունակում էր լինել միջազգային պրոլետարիատի առաջնորդը։ Նրան պատկանում են աչքի ընկնող ծառայություններ մարքսիզմի պրոպագանդման և հետագա զարգացման գործում։ Էնգելսը վճռական պայքար էր մղում մանրբուրժուական



սոցիալիստական վարդապետությունների, մարքսիզմը խեղաթյուրելու և գռեհկացնելու փորձերի դեմ, եռանդուն կերպով հանդես էր գալիս ինչպես օպորտունիստական համաձայնողական միտումների, այնպես էլ «հեղափոխական» ֆրազի սիրահարների դեմ։ Պաշտպանելով մարքսիզմի հեղափոխական էությունը, նա լուրջ վտանգ էր տեսնում նրա հիմնական դրույթների դոգմատիկ ըմբռնման մեջ, բազմազան պայմաններում այդ ուսմունքը պրակտիկ կերպով կիրառելու անկարողության մեջ։ Էնգելսը զարգացնում և ամրապնդում էր կոնտակտները տարբեր երկրների բանվորական շարժման գործիչների հետ, մշտապես օգնում էր նրանց խորհուրդներով, նրանց հաղորդում իր հսկայական փորձն ու գիտելիքները։

Նոր Ինտերնացիոնալը իր գոյության առաջին շրջանում հիմնականում կանգնած էր մարքսիզմի հողի վրա։ Նա նպաստում էր մարքսիզմի հետագա ամրապնդմանը, մարտնչող պրոլետարիատի լայն մասսաների մեջ նրա տարածմանը, աջակցում էր արհեստակցական, կոոպերատիվ, կանանց, երիտասարդական կազմակերպությունների և բանվոր դասակարգի մյուս մասսայական կազմակերպությունների զարգացմանն ու ամրապնդմանը, ինչպես նաև աշխատավորների օգտին բուրժուական պառլամենտարիզմի օգտագործմանը։

Սակայն Ֆ. Էնգելսի մահից հետո, իմպերիալիզմի դարաշրջանն սկսվելուց ի վեր, Երկրորդ Ինտերնացիոնալի գործունեության մեջ ուժեղանում են օպորտունիստական տենդենցները։ Օպորտունիզմը, գերակշռություն ձեռք բերելով Երկրորդ Ինտերնացիոնալի ղեկավարության մեջ, վերջիվերջո հասցրեց նրա գաղափարա-քաղաքական վերասերման և կրախին։

**6. Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը խորապես հավատում էին Ռուսաստանի հեղափոխական հնարավորություններին:** Մարքսը հանգամանորեն, սկզբնաղբյուրներով ուսումնասիրում էր Ռուսաստանում տիրող սոցիալ-տնտեսական դրությունը, դասակարգային ուժերի տեղաբաշխումը։ Նա բարձր էր գնահատում հեղափոխական դեմոկրատներ Ն. Չերնիշևսկու և Ն. Դոբրոլյուբովի աշխատությունները։ Մարքսը ծանոթ էր ռուսական շատ հեղափոխականների, նրանց հետ սերտ կապ էր պահպանում։ Էնգելսը լիակատար իրավունքով կարող էր հայտարարել, որ ինքը չի հանդիպել ուրիշ որևէ մեկին, որը այնպես լավ իմանար Ռուսաստանը, նրա ներքին և արտաքին դրությունը, ինչպես Մարքսը։

Մարքսը և Էնգելսը գտնում էին, որ ռուսական հեղափոխությունը մեծագույն նշանակություն կունենա Եվրոպայի համար, Արևմուտքում պրոլետարական հեղափոխությունների հաղթանակի համար։ Գնահատելով Ռուսաստանի հեղափոխական շարժման հեռանկարները, Մարքսը գրում էր, որ այդ շարժումը «վերջիվերջո պետք է անխուսափելիորեն, գուցե տևական ու կատաղի պայքարից հետո, հանգեցնի ռուսական Կոմունայի ստեղծման» (Երկեր, հ. 19, էջ 252)։ Պատմությունը ամբողջովին հաստատեց Մարքսի այդ գիտական կանխատեսությունը։

**7. Մարքսիզմի հետագա զարգացումը, պրոլետարիատի հեղափոխական շարժման մեջ նրա պատմական դերի մեծանալը, ինտերնացիոնալիզմի հիման վրա հեղափոխական ուժերի համախմբումը կապված է Մարքսի հավատարիմ հետևորդ, նրա գործի և ուսմունքի հանճարեղ շարունակող Վլադիմիր Իլյիչ Լենինի տեսական ու պրակտիկ գործունեության հետ:** Լենինիզմը պատմական նոր դարաշրջանում հանդիսացավ հեղափոխական մտքի և հեղափոխական գործողության կենդանի աղբյուրը։

Լենինիզմը մարքսիզմի նոր, բարձրագույն փուլն է, նրա ստեղծագործական զարգացումը պատմական նոր պայմաններում, իմպերիալիզմի և պրոլետարական հեղափոխությունների, մարդկության՝ կապիտալիզմից դեպի սոցիալիզմ ու կոմունիզմ անցնելու պայմաններում։ Լենինիզմի մեջ արտացոլված է պրոլետարական հեղափոխական պայքարի տեսության ու պրակտիկայի հաջորդականությունը։ Այն նորը, ինչը Լենինը մուծեց մարքսիզմի մեջ, հիմնվում է Մարքսի և Էնգելսի ուսմունքի էության ու մեթոդի վրա։ Լենինը անհաշտ էր բուրժուական գաղափարախոսների և ռևիզիոնիստների դեմ մղված պայքարում, որոնք փորձում էին մարքսիզմի հեղափոխական էությունը ամլացնել այն բարելավելու դրոշակի տակ, հնացած դրույթները հաղթահարելու անվան տակ։ Բայց Լենինը վճռականորեն հանդես էր գալիս նաև մարքսիստական տեսության նկատմամբ դոգմատիկ վերաբերմունքի դեմ։ Մարքսի ուսմունքի նկատմամբ ստեղծագործական մոտեցումը նրան թույլ տվեց համակողմանիորեն զարգացնել և հարստացնել հեղափոխական պայքարի տեսությունը, ստրատեգիան ու տակտիկան։

Լենինիզմը միասնական ինտերնացիոնալ ուսմունք է։ Նա ընդհանրացումն է համաշխարհային ազատագրական շարժման ամբողջ փորձի և գիտական այն գիտելիքների, որոնք կուտակվել են Կ. Մարքսից և Ֆ. Էնգելսից հետո։ Մարքսիզմի բոլոր բաղկացուցիչ մասերը՝ փիլիսոփայությունը, քաղաքատնտեսությունը, գիտական կոմունիզմը զարգացվել են Լենինի կողմից։ Նա հարստացրեց ու կոնկրետացրեց հեղափոխության մարքսիստական տեսությունը, հետևություն արեց սկզբում փոքրաթիվ կամ նույնիսկ մեկ, առանձին վերցրած, երկրում սոցիալիզմի հաղթանակի հնարավորության մասին, մշակեց բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստական հեղափոխության վերաճելու տեսությունը, զարգացրեց պրոլետարական հեղափոխությունը ազգային-ազատագրական պայքարի հետ միացնելու գաղափարը։ Մարքսիզմի գանձարանում աչքի ընկնող ավանդ հանդիսացավ Վ. Ի. Լենինի կողմից նոր տիպի պրոլետարական կուսակցության մասին ամբողջական և կուռ ուսմունքի մշակումը։ Նոր տիպի առաջին կուսակցությունը, նրա օրինակը դարձավ Լենինի ստեղծած բոլշևիկների կուսակցությունը։

Լենինը Մարքսի և Էնգելսի արժանավոր հաջորդը եղավ ոչ միայն որպես հանճարեղ տեսաբան, այլև որպես հեղափոխական պայքարի մեծ կազմակերպիչ։ Լինելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության առաջնորդը, սովետական պետության հիմնադիրը, նա առաջինը մշակեց սոցիալիստական շինարարության պրոբլեմները և ղեկավարեց դրանց գործնական լուծումը։

Լենինի, բոլշևիկյան կուսակցության տեսական և պրակտիկ գործունեությունը նպաստում էր միջազգային բանվոր դասակարգի հեղափոխական դաստիարակությանն ու համախմբմանը, ուրիշ երկրների կոմունիստական կուսակցությունների ձևավորմանը։

Բոլշևիզմը միջազգային նշանակություն ձեռք բերեց, նա, գրում էր Լենինը, «Ստեղծեց Երրորդ Ինտերնացիոնալի գաղափարական ու տակտիկական հիմքերը, մի Ինտերնացիոնալ, որը իսկապես պրոլետարական ու կոմունիստական է, որը հաշվի է առնում և՛ խաղաղ դարաշրջանի նվաճումները, և՛ հեղափոխությունների՝ սկսված դարաշրջանի փորձը» (Երկեր, հ. 37, էջ 304)։

Լենինի նախաձեռնությամբ 1919 թվականին ստեղծված Երրորդ կոմունիստական ինտերնացիոնալը համախմբեց ամբողջ աշխարհի բանվոր դասա-



կարգի առաջավոր, առավել հեղափոխական տարրերին, լրջորեն օգնեց մասսաների մեջ կոմունիզմի գաղափարների տարածմանը։

Հեղափոխական տեսության զարգացման մեջ լենինյան էտապը 20-րդ դարի մարքսիզմն է, արդի դարաշրջանի մարքսիզմը։ Լենինյան էտապը չի սահմանափակվում Լենինի կյանքի ժամանակաշրջանով, այդ էտապը անընդհատ շարունակվում է ՍՄԿԿ-ի և եղբայրական կուսակցությունների տեսական գործունեությամբ, մարմնավորվում է համաշխարհային կոմունիստական շարժման ծրագրային դրույթների մեջ։

Մեր ժամանակներում մարքս-լենինյան մտքի կարևորագույն նվաճումներն են արդի դարաշրջանի բնույթի, համաշխարհային հեղափոխական պրոցեսի գլխավոր շարժիչ ուժերի ու հեռանկարների սահմանումը, միջազգային կոմունիստական շարժման ստրատեգիայի ու տակտիկայի, բանվորական և ազգային-ազատագրական շարժման հրատապ պրոբլեմների, արդի պայմաններում տարբեր երկրների՝ սոցիալիզմին անցնելու ուղիների ու ձևերի մշակումը։

Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների գործնական վիթխարի փորձի ընդհանրացման հիման վրա բացահայտվեցին սոցիալիստական հասարակարգի հիմնական օրինաչափություններն ու շարժիչ ուժերը, զարգացվեցին ու կոնկրետացվեցին մարքս-լենինյան դրույթները սոցիալիստական հասարակության տնտեսական և կուլտուրական շինարարության մասին, դասակարգային կառուցվածքի փոփոխությունների և դասակարգային տարբերությունների հաղթահարման ուղիների մասին, սոցիալիստական պետականության և դեմոկրատիայի, սոցիալիզմը աստիճանաբար կոմունիզմի վերաճելու խնդիրների և պայմանների մասին։

Մարքսիստների կոլեկտիվ ջանքերով հեղափոխական տեսության հետագա մշակումը միջազգային կոմունիզմի ինտերնացիոնալ կարևոր խնդիրն է։

## II. ՍՍՀՄ-ՈՒՄ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ, ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԻՍՏԵՄԻ ԿԱԶՄՎԵԼԸ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՄԵԾ ՏՐԻՈՒՄՖՆ Է

8. Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որը բացեց մարդկության՝ կապիտալիզմից դեպի սոցիալիզմ անցնելու դարաշրջանը, հաղթանակեց մարքսիզմ-լենինիզմի դրոշով։ Սոցիալիզմը, որի մասին դարեր շարունակ երազել էին մարդկության լավագույն մտածողները, սոցիալիզմը, որը Մարքսը և Էնգելսը երազանքից վերածեցին գիտության, դարձել է սովետական երկրի միլիոնավոր աշխատավորների կյանքի կոնկրետ բովանդակությունը։ Հեղափոխության ընթացքում մարմնավորվեցին և զարգացվեցին մարքսիզմ-լենինիզմի կարևորագույն գաղափարները նրա իրականացման ուղիների և ձևերի մասին, պրոլետարական կուսակցության ստրատեգիայի ու տակտիկայի մասին, պրոլետարիատի դիկտատուրայի մասին։ Հոկտեմբերը ցույց տվեց գիտական կոմունիզմի հիմնադիրների այն հետևության մեծ ուժն ու կենսականությունը, որը վերաբերում է հեղափոխության մեջ պրոլետարիատի և նրա կուսակցության ղեկավար դերին, բանվոր դասակարգի և չքավոր գյուղացիության դաշինքին՝ պրոլետարիատի ղեկավարությամբ։

Վ. Ի. Լենինը վերականգնեց պետության մասին Մարքսի և Էնգելսի հայացքները, որոնք խեղաթյուրել էին օպորտունիստները։ Նա զարգացրեց ու

կոնկրետացրեց մարքսիստական ուսմունքը պետության մասին, հին պետական մեքենան ջարդելու և նոր պետական ապարատ ստեղծելու անհրաժեշտության մասին։ Պրոլետարիատը իր քաղաքական իշխանությունն օգտագործում է հօգուտ ժողովրդի հսկայական մեծամասնության՝ տապալված դասակարգերի կատաղի դիմադրությունը հաղթահարելու, հեղափոխության նվաճումները արտաքին թշնամիներից պաշտպանելու համար, սոցիալիստական շինարարությունը կազմակերպելու համար։ Վ. Ի. Լենինը բացահայտեց պրոլետարիատի դիկտատուրայի սոցիալական հիմքը՝ բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքը, ցույց տվեց, որ պրոլետարիատի դիկտատուրան դեմոկրատիայի բարձրագույն տիպն է, դեմոկրատիա միլիոնավոր աշխատավորների համար։

Հոկտեմբերյան հեղափոխությունը ապացուցեց մարքսիստական այնկանխատեսության ճշտությունը, որ անխուսափելի է մարդկության պատմական անցումը հին, կապիտալիստական աշխարհից նոր, սոցիալիստական աշխարհին։ Կապիտալիզմը դադարել է համապարփակ, տիրապետող սիստեմ լինելուց։ Աշխարհը պառակտվել է երկու հակադիր սիստեմների՝ կապիտալիստականի և սոցիալիստականի։

**9. Վ. Ի. Լենինը ստեղծագործաբար զարգացրեց սոցիալիստական հասարակարգի կառուցման մարքսիստական տեսությունը։** Նա բացահայտեց կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի օրինաչափություններն ու գլխավոր գծերը։

Համաշխարհային պատմական նշանակություն ունի Լենինի մշակած ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման պլանը, որը նախատեսում էր երկրի ինդուստրացում, գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցում, կուլտուրական հեղափոխության իրականացում։

Իշխանության գլուխ անցած բանվոր դասակարգի սոցիալ-տնտեսական առաջին կարևորագույն միջոցառումը էքսպրոպրիատորների ունեզրկումն է, արտադրության միջոցների սոցիալիստական հանրայնացումը։ Արտադրության միջոցների մասնավոր սեփականության վրա հիմնված արտադրական հարաբերությունները, որոնք գոյություն ունեին հազարամյակներ շարունակ, ուստի և հավերժական, անխախտելի էին թվում, փոխարինվում են սոցիալիստական հարաբերություններով։ Այդ վերափոխումների ընթացքում վերացվում են շահագործող դասակարգերը և մարդու կողմից մարդու շահագործումը, վերացվում են արտադրության անարխիան, ճգնաժամերը և ստեղծվում են նյութական նախադրյալներ տնտեսության պլանային վարման համար։

Նոր հասարակարգի հաղթանակի համար վճռական նշանակություն ունի նրա նյութատեխնիկական բազայի ստեղծումը։ ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման ընթացքում, առանց արտաքին տնտեսական որևէ օգնության, պատմական կարճ ժամկետում իրագործվեց երկրի ինդուստրացումը։

Մարդկության պատմության մեջ առաջին անգամ սոցիալիզմը լուծեց գյուղացիական հարցը։ Բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման՝ մարքսիզմ-լենինիզմի կողմից նշված ուղին, մանր արտադրողների կոոպերացման ուղին, օրգանապես գյուղացիների շահերը զուգորդում է ամբողջ հասարակության արմատական շահերի հետ։ Սովետական Միության փորձը ցույց տվեց, որ մանր գյուղացիական տնտեսության կոոպերացումը և պետական տնտեսությունների՝ սովխոզների շինարարությունը թույլ տվեցին ոչ միայն վերակառուցել գյուղատնտեսությունը սոցիալիզմի հիմքերի վրա, այլև



արմատական վերափոխումներ իրականացնել գյուղի կյանքի բոլոր բնագավառներում։

Սոցիալիզմի ժամանակաշրջանում տեղի է ունենում սոցիալիստական արտադրական հարաբերությունների հետագա կատարելագործում, աճում է համաժողովրդական սեփականության դերն ու նշանակությունը, զարգանում է կոլտնտեսային-կոոպերատիվ արտադրությունը, նախադրյալներ են ստեղծվում հետագայում միասնական կոմունիստական սեփականության գոյացման համար։

Սոցիալիստական հասարակարգի կառուցման անխզելի բաղկացուցիչ մասն է կուլտուրական հեղափոխությունը։ Կուլտուրական հեղափոխությունը իր մեջ ընդգրկում է՝ գրագիտության, իսկ ապա նաև գիտական գիտելիքների ընդհանուր տարածում աշխատավորության շրջանում, մարդկության կուտակած կուլտուրական ժառանգության քննադատական յուրացում և ավելի բարձր կուլտուրայի՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի, ստեղծում, մարդկանց հոգևոր կերպարի վերափոխում, մասսաների գիտակցության մեջ սոցիալիստական գաղափարախոսության հաստատում, սոցիալիզմի գործին նվիրված նոր մտավորականության ստեղծում։

Սովետական Միության և մյուս երկրների փորձը հաստատեց մարքսլենինյան այն դրույթի ճշտությունը, որ սոցիալիզմը հաղթանակում է տապալված շահագործող դասակարգերի, միջազգային իմպերիալիզմի դեմ մղվող դասակարգային սուր պայքարում։ Ֆաշիստական ագրեսիայի դեմ սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը սոցիալիզմի ամենախոշոր ռազմական ընդհարումը եղավ իմպերիալիզմի հարվածային ջոկատների հետ։ Սովետական Միության հաղթանակի մեջ ակնառու կերպով դրսևորվեցին սոցիալիստական հասարակարգի կենսունակությունն ու առավելությունները, սովետական մարդկանց անօրինակ հերոսությունը ռազմաճակատում և թիկունքում։

**10. Սովետական ժողովուրդը, կառուցելով սոցիալիզմ, թևակոխեց նոր ժամանակաշրջան՝ կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանը։** Կոմունիստական փուլը, նշել է Մարքսը, վրա է հասնում սոցիալիստական հասարակարգի տևական զարգացումից հետո, երբ նրա ընդերքում հասունանում են կոմունիզմի տնտեսական, սոցիալական և կուլտուրական նախադրյալները։

Զարգացնելով ու կոնկրետացնելով այդ կանխագծումները ժամանակակից պայմաններում, ՍՄԿԿ-ն XXII համագումարում ընդունված իր ծրագրում որոշեց կոմունիստական շինարարության գլխավոր խնդիրները՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծում, կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորում, նոր մարդու դաստիարակում։ Այդ խնդիրների հետագա համակողմանի հիմնավորումն ու զարգացումը տրված է կուսակցության XXIII համագումարի, կուսակցության Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան և հաջորդ պլենումների որոշումներում։ Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, առաջնորդվելով Մարքսի և Լենինի ցուցումներով, ձգտում է առավել արդյունավետ օգտագործել սոցիալիզմի տնտեսական օրենքները կոմունիզմի կառուցման գործում։

Ներկայումս կոմունիստական կուսակցության և սովետական ժողովրդի գլխավոր ջանքերն ուղղված են կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման նպատակին։ Գիտության ու տեխնիկայի զարգացման, արտադրության մեքենայացման և ավտոմատացման, նրա տնտեսական արդյունավետության բարձրացման հիման վրա կուսակցությունը նախատեսում է արտա-

դրողական ուժերի հետագա հզոր աճ, երկրի էկոնոմիկայի զարգացման արագ տեմպեր։

Կուսակցությունը հիմնավորեց գյուղատնտեսական արտադրությունը տեխնիկական տեսակետից ինդուստրիալ արտադրության մակարդակի բարձրացնելու և այդ հիմքի վրա քաղաքի ու գյուղի կյանքի պայմանների միջև, ինդուստրիալ ու գյուղատնտեսական աշխատանքի միջև եղած էական տարբերությունները հաղթահարելու անհրաժեշտությունն ու հնարավորությունը։

Ժողովրդական կրթության լայն զարգացման, աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության նվաճումների կիրառման հիման վրա սովետական երկրում տեղի է ունենում ֆիզիկական և մտավոր աշխատանքի միջև եղած էական տարբերությունների ջնջման պրոցեսը։

Կոմունիստական շինարարության ծրագրի կարևորագույն բաղկացուցիչ մասն է աշխատավորների կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման պլանը։ Լավագույն պայմաններ են ստեղծվում մարդկային անհատի՝ աշխարհում այդ ամենաբարձր արժեքի, համակողմանի զարգացման համար։ Ամեն ինչ մարդու համար, հանուն մարդու բարօրության՝ այսպիսին է կուսակցության լոզունգը։

Երկրում կիրառվող տնտեսական ռեֆորմը ընդլայնում է սոցիալիզմի օրենքների գիտականորեն հիմնավորված օգտագործման հնարավորությունները՝ կենտրոնացված կառավարման ու տեղական նախաձեռնության ճիշտ և արդյունավետ զուգորդման, ղեկավարման տնտեսական մեթոդների ուժեղացման ճանապարհով։ Դա նպաստում է սոցիալիզմի արտադրական հարաբերությունների զարգացմանն ու կատարելագործմանը, «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սոցիալիստական սկզբունքի առավել լիակատար արտահայտմանը։ Կուսակցությունը կենսագործում է մարքս-լենինյան գաղափարը հանրային և անձնական շահերի, աշխատանքի բարոյական ու նյութական խթանների ճիշտ զուգորդման հիման վրա աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու մասին։

Սոցիալ-տնտեսական խոր վերափոխումների հիման վրա սոցիալիզմը ստեղծում է հասարակության նոր տիպ՝ մի հասարակություն, որը բաղկացած է միայն սոցիալիստական հանրային սեփականությամբ, արմատական շահերի միասնությամբ միավորված աշխատավորներից։ Հաղթահարվում են սոցիալական անհավասարության մնացորդները, հաստատվում է ազգերի և ազգությունների, տղամարդկանց և կանանց փաստական հավասարություն։ Այս ամենը պայմանավորում է ժողովրդի սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը։ Բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և մտավորականությունը մեծապես մերձեցել են իրար հետ տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական բնագավառներում։ Դրա հետ մեկտեղ սոցիալիստական հասարակարգում պահպանվում է բանվոր դասակարգի առաջատար դերը, որպես սովետական հասարակության ամենաառաջավոր և կազմակերպված ուժի։

Կոմունիզմի կառուցման պրոցեսում արագանում է ՍՍՀՄ ժողովուրդների տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր կողմերի զարգացման մակարդակի հավասարեցումը, տեղի է ունենում սոցիալիստական ազգերի մերձեցում և փոխհարստացում, անընդհատ զարգանում են ընդհանուր գծերը նրանց կուլտուրայում, նրանց հոգևոր կերպարի մեջ։ Դրա հետ մեկտեղ ավելի ու ավելի



լիակատար կերպով են ծավալվում յուրաքանչյուր ազգի և ազգության կենսական ուժերն ու ընդունակությունները, զարգանում է նրանց էկոնոմիկան, ծաղկում է նրանց կուլտուրան։ Դաստիարակված լինելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներով, ՍՍՀՄ բոլոր ազգերն ու ազգությունները համակողմանի գործակցության և եղբայրական փոխօգնության օրինակ են ցույց տալիս նոր հասարակարգի կառուցման գործում, իրենց ընդհանուր հայրենիքի՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության պաշտպանության գործում։ Ավելի ու ավելի է ամրանում ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը։

Սոցիալիստական շինարարության ընթացքում կյանքում մարմնավորվում են Մարքսի և Լենինի գաղափարները սոցիալիստական պետականության ու դեմոկրատիայի մասին, սոցիալիստական հասարակության մեջ ժողովրդապետության զարգացման մասին։

Ի տարբերություն բուրժուական դեմոկրատիայի, որը ծառայում է արտոնյալ փոքրամասնության շահերին, սոցիալիզմը ապահովում է իսկական դեմոկրատիա աշխատավորների համար, ամբողջ ժողովրդի համար։ Սոցիալիստական հասարակարգը արտադրության միջոցների հանրային սեփականության հիման վրա ապահովում է քաղաքացիների դեմոկրատական իրավունքների իրականացման ռեալ երաշխիքներ, լայն ասպարեզ է բացում հասարակական կյանքի բոլոր բնագավառներում նրանց ստեղծագործական նախաձեռնության համար։ ՍՍՀՄ-ում գործնականորեն իրականացվել են աշխատավորների աշխատանքի, կրթության, հանգստի, ծերության ժամանակ նյութական ապահովության իրավունքները, խոսքի, մամուլի, ժողովների և հասարակական գործունեության ազատությունը։ Դրա հետ մեկտեղ Սովետական Միության աշխատավորները պատվով են կատարում իրենց պարտականությունները, իրենց պարտքը հայրենիքի հանդեպ։ Հասարակության, պետական գործերի կառավարմանը ներգրավվում են աշխատավորների ամենալայն մասսաները։ Սոցիալիզմի լիակատար, վերջնական հաղթանակի շնորհիվ պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը դառնում է ամբողջ ժողովրդի քաղաքական կազմակերպությունը՝ բանվոր դասակարգի ղեկավար դերի պայմաններում։ Համաժողովրդական պետությունը սոցիալիստական պետականության հետագա զարգացումն է դեպի կոմունիստական ինքնակառավարում։

Կոմունիստական շինարարության արդի էտապում աճում է կոմունիստական կուսակցության, որպես սովետական հասարակության ուղղություն տվող և ղեկավար ուժի, դերը։ Մարքս-լենինյան տեսությամբ զինված ՍՄԿԿ-ն սովետական ժողովրդին վստահորեն տանում է կոմունիզմի կառուցման ուղիով, հաջողությամբ կատարում ամբողջ սովետական ժողովրդի կազմակերպչի ու քաղաքական առաջնորդի իր դերը։

1967 թվականին սովետական ժողովուրդը, ամբողջ աշխարհի ժողովուրդները նշեցին Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության 50-ամյակը։ Դա առաջին կեսդարն է, երբ մարդկությունը նախապատմությունից ոտք դրեց իսկական պատմություն. դա կոմունիստական դարաշրջանի առաջին կեսդարն է։

## III. ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԸ ԵՎ ԱՐԴԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՊՐՈՑԵՍԸ

**11.** Մարքսիզմ-լենինիզմը խորապես բացահայտում է արդի համաշխարհային հեղափոխական պրոցեսի էությունն ու օրինաչափությունները։ *Այդ հեղափոխական պրոցեսի հիմնական ուժերն են.*

*— սոցիալիզմ և կոմունիզմ կառուցող ժողովուրդները.*

*— կապիտալիստական երկրների բանվոր դասակարգը, որը գլխավորում է ժողովրդական մասսաների պայքարը մոնոպոլիաների իշխանության դեմ.*

*— ճնշված ժողովուրդների և զարգացող երկրների ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումը։*

*Հեղափոխությունները, որոնք Մարքսը պատկերավոր կերպով անվանել է պատմության լոկոմոտիվներ, եղել են ու մնում են դասակարգային անտագոնիստական հասարակարգի զարգացման օբյեկտիվ օրենքը։ Անշուշտ, յուրաքանչյուր հեղափոխություն ունի իր առանձնահատկությունները, որոնք բխում են պատմական, ազգային պայմանների յուրահատկությունից, դասակարգային ուժերի տեղաբաշխման և հարաբերակցության յուրահատկությունից։ Սակայն ամեն մի ժողովրդի ուղին դեպի սոցիալիզմ կապիտալիստական կարգերի և առհասարակ շահագործական հարաբերությունների հեղափոխական խորտակումն է։*

*Հեղափոխությունը բոլոր աշխատավորների գործն է և կատարվում է ժողովրդի կողմից, ընդ որում, առաջատար դեր է խաղում բանվոր դասակարգը, որը սոցիալիստական հեղափոխության հիմնական շարժիչ ուժն է։ Բանվոր դասակարգի ղեկավար միջուկը կոմունիստական կուսակցությունն է, որը կատարում է մասսաների կազմակերպման, կամքի միասնությունն ու գործողությունների համախմբվածությունը ապահովելու մեծ խնդիրը։*

*Լենինը հեղափոխական պայքարի անառարկելի օրենքը հռչակեց բոլոր երկրների բանվոր դասակարգի միջազգային համերաշխությունը ազգային-ազատագրական շարժման հետ։ Արդի համաշխարհային հեղափոխական պրոցեսը զարգանում է «Պրոլետարներ բոլոր երկրների և ճնշված ժողովուրդներ, միացե՛ք» լոզունգով։*

*Շահագործողների դեմ պրոլետարիատի պայքարի հաղթանակի կարևորագույն պայմանը հեղափոխական իրավիճակի առկայությունն է, որը նախապատրաստվում է թե՛ քաղաքական ու սոցիալական հակասությունների սրման օբյեկտիվ պրոցեսով, թե՛ սուբյեկտիվ գործոնների հասունացմամբ։ Ինչպես ցույց է տալիս փորձը, երբ ավանգարդը փորձում է գործել առանց հաշվի առնելու հեղափոխության օբյեկտիվ և սուբյեկտիվ նախադրյալների առկայությունը, նա կարող է ծանր վնաս հասցնել ժողովուրդների ազատագրական շարժմանը։*

*Դասակարգային պայքարի ժամանակակից թափը և բովանդակությունը հաստատում են նաև սոցիալիզմի համար մղվող պայքարի և դեմոկրատիայի համար մղվող պայքարի սերտ կապի մասին Մարքսի ու Լենինի բազմաթիվ ցուցումների խոր ճշմարտությունը։ Ներկայումս դեմոկրատական և սոցիալիստական խնդիրները է՛լ ավելի սերտորեն են զուգորդվում։ Խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության, սոցիալիզմի համար մղվող պայքարը միևնույն պրոցեսի անխզելի օղակներն են։ Դեմոկրատական նպատակներին հասնելու մասսայական գործողությունները ընդլայնում են հեղափոխական-վերափոխիչ շարժման ոլորտը, հնարավորություն են տալիս միավորելու բնակչության ամենալայն խավերին, ռեակցիայի ու պատերազմի ուժերի դեմ հարձակման համար ստեղծելու քաղաքական հզոր ուժ։ Ստեղծվում են միասնական մարտական միջազգային հակաիմպերիալիստական ճակատի կազմավորման նախադրյալներ։*



**12.** ՍՍՀՄ-ում կոմունիզմի կառուցումը, սոցիալիստական համագործակցության երկրներում սոցիալիզմի ամրապնդումը համաշխարհային հեղափոխական պրոցեսի կարևորագույն մասն է։ *Կառուցելով կոմունիստական հասարակարգի հոյակապ շենքը, սովետական ժողովուրդը ոչ միայն լուծում է իր ազգային խնդիրները, այլև կատարում իր ինտերնացիոնալ պարտքը, բազմապատկելով հեղափոխական ազատագրական շարժման ուժերն ու ամրապնդելով նրա բազան։*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը բացեց համաշխարհային մասշտաբով կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու դարագլուխը։ Հոկտեմբերի գաղափարների և ՍՍՀՄ-ում սոցիալիզմի ձեռք բերած հաջողությունների ազդեցությամբ, երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին իմպերիալիզմի հարվածային ուժերի ջախջախման շնորհիվ աճեցին ու ամրապնդվեցին սոցիալիզմի ուժերը համայն աշխարհում, թուլացան համաշխարհային կապիտալիզմի դիրքերը։ Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում հաղթանակեցին սոցիալիստական հեղափոխությունները։ Այդ երկրների ժողովուրդները թևակոխեցին սոցիալիզմի ուղին։ Ստեղծվեց համաշխարհային սոցիալիստական սիստեմը, որը միջազգային պրոլետարիատի ծնունդն է, նրա գլխավոր նվաճումը, պարծանքն ու հույսը։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը իր գոյության քառորդ դարից էլ պակաս ժամանակաշրջանում մարդկային գործունեության բոլոր բնագավառներում ապացուցեց իր վիթխարի գերազանցությունը կապիտալիզմի՝ իր դարն ապրող սիստեմի հանդեպ։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման և ամրապնդման համեմատ մեծանում է մարքսիզմ-լենինիզմի ազդեցությունը համաշխարհային զարգացման վրա, պայմաններն ու միջազգային իրադրությունը ավելի ու ավելի վճռականորեն են փոխվում հասարակարգի սոցիալիստական վերակառուցման և կոմունիզմի համար պայքարող ուժերի օգտին։*

*Սոցիալիզմի ուղին թևակոխած երկրների մերձեցումը, համաշխարհային սոցիալիստական սիստեմի միասնության ամրապնդումը կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ինտերնացիոնալ պարտքն է։ Մարքսը բանվորներին պատգամեց իշխանության գլուխ անցնելուց հետո հասնել «արտադրության հանրային ձևերի ազգային և ինտերնացիոնալ ներդաշնակ կոորդինացման» (Երկեր, հ. 17, էջ 553)։*

*Սոցիալիստական երկրների եղբայրական համագործակցությունը նպաստում է նյութական ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործմանը և արտադրողական ուժերի զարգացմանը։ Տնտեսական զարգացման տեմպերով զգալիորեն առաջ անցնելով կապիտալիստական աշխարհից, սոցիալիստական սիստեմը անընդհատ մեծացնում է իր բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ, էապես թուլացրել է կապիտալիզմի ուժերը, խարխլել զարգացող երկրների կողոպտման իմպերիալիստական սիստեմը։*

*Պատմական պրակտիկան հաստատում է Լենինի այն դրույթը, որ սոցիալիստական հանրապետությունների շուրջը միավորվում են բոլոր երկրների առաջավոր բանվորների սոցիալիստական շարժումները և ազգային-ազատա-*

գրական շարժումները։ Սոցիալիստական երկրները սոցիալական առաջադիմության ուղիով ընթացող երիտասարդ պետությունների հուսալի պաշտպանն են։ Սոցիալիստական երկրները նրանց ցույց են տալիս տնտեսական, գիտատեխնիկական լայն օգնություն, ինչպես նաև նպաստում սեփական ազգային կադրերի պատրաստմանը։ Սոցիալիստական երկրների և երիտասարդ առաջադեմ պետությունների փոխհարաբերությունները զգալիորեն սահմանափակում են իմպերիալիզմի տնտեսական ու քաղաքական տիրապետության ոլորտը, իսկ սոցիալիզմի գաղափարները ավելի ու ավելի մեծ տարածում են գտնում Աֆրիկայում, Ասիայում, Լատինական Ամերիկայում։

Սոցիալական առաջադիմության լուրջ գործոն է սոցիալիստական երկրների իսկական խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը, որն ուղղված է իմպերիալիստների ռեակցիոն, ագրեսիվ գործողությունների դեմ, ամեն առաջավորի, դեմոկրատականի պաշտպանության, ժողովուրդների կենսական շահերի պաշտպանության նպատակին։

**13. Արդի դարաշրջանում անչափ աճել է կապիտալիստական երկրների բանվորական շարժումը։** *Մարտական պրակտիկ նշանակություն են ստացել Մարքսի այն խոսքերը, որ մարդկության վերածնունդը բանվոր դասակարգի ձեռքին է, որ այդ դասակարգը բուրժուազիայի դեմ հանդես է գալիս՝ ինչպես արևը խավարի դեմ։*

Արդի կապիտալիզմին հատուկ են բարդ ու հակասական պրոցեսներ, որոնց հետևանքով է՛լ ավելի է խորանում նրա ընդհանուր ճգնաժամը։ Մոնոպոլիստական բուրժուազիան ստիպված է դիմել էկոնոմիկայի պետական կարգավորման, մանևրել տնտեսական ու սոցիալական բնագավառներում։

Բանվոր դասակարգի պայքարի համար սկզբունքային նշանակություն ունի Լենինի բացահայտած այն օբյեկտիվ տենդենցը, որ մոնոպոլիստական կապիտալիզմը վերաճում է մոնոպոլիաների և բուրժուական տիրապետության ուժը մի միասնական մեխանիզմի մեջ միավորող պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի։ Պետական-մոնոպոլիստական կապիտալիզմը գործում է մոնոպոլիաների հարստացման, աշխատավորների կողոպտման, բանվորական շարժման և ազգային-ազատագրական պայքարի ճնշման, ագրեսիվ պատերազմների սանձազերծման օգտին, որի հետևանքով սրվում են կապիտալիզմի բոլոր հակասությունները։ Ներկայումս ԱՄՆ-ի, Անգլիայի և մի շարք այլ կապիտալիստական երկրների էկոնոմիկան լուրջ ցնցումներ է ապրում, որոնց արտահայտությունն է մասնավորապես վալյուտա-ֆինանսական սիստեմի սուր ճգնաժամը։

Մոնոպոլիստական բուրժուազիան ձգտում է առավելագույն չափի հասցնել հավելյալ արժեքի նորման՝ աշխատանքի ինտենսիվացման, վարձու բանվորների ֆիզիկական ուժերի և նյարդային համակարգության գերլարման հաշվին։ Իրենց հերթին բանվորները, ինչպես նշել է Մարքսը, շարունակ ճնշում են գործադրում հակառակ ուղղությամբ։ «Բանը հանգում է մարտնչող կողմերի ուժերի հարաբերակցության հարցին» (Երկեր, հ. 16, էջ 151)։

Արդի պայմաններում, երբ գոյություն ունի սոցիալիզմի համաշխարհային սիստեմ, երբ պրոլետարիատի հեղափոխական ելույթներից բուրժուազիայի սարսափը մեծացել է, իսկ դասակարգային պայքարի մասշտաբներն ու լարվածությունը աճել են, բանվոր դասակարգին հաջողվում է ձեռնարկատերերից որոշ զիջումներ կորզել։

Համաշխարհային սոցիալիզմի հաջողությունները, կապիտալիզմի ճգնա-



ժամի խորացումը, կապիտալի երկրներում դեմոկրատական շարժման զարգացումը, կոմունիստների ազդեցության ուժեղացումը դասակարգային պայքարի պայմանները զգալիորեն փոխել են հօգուտ բանվոր դասակարգի.

— Ներկայումս կապիտալիստական երկրների պրոլետարիատի պայքարը օրգանապես կապված է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի նվաճումների հետ.

— պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի պայմաններում, երբ տնտեսական հարաբերությունների բնագավառում ևս որպես պրոլետարիատի անմիջական հակառակորդ հանդես են գալիս ոչ միայն առանձին ձեռնարկատերերն ու նրանց միավորումները, այլև հենց բուրժուական պետությունը, աշխատավորների տնտեսական պայքարը ուղղվում է այդ պետության դեմ.

— բանվոր դասակարգը է՛լ ավելի մեծ հնարավորություններ է ստացել կապիտալիստական երկրներում իր նվաճած դեմոկրատական իրավունքները օգտագործելու մոնոպոլիաների տիրապետության դեմ մղվող պայքարի համար.

— մոնոպոլիաների իշխանության դեմ, իմպերիալիստական կառավարությունների ագրեսիվ ու ռեակցիոն կուրսի դեմ, դեմոկրատիայի ու սոցիալական առաջադիմության համար բանվորների և բոլոր աշխատավորների համադեմոկրատական պայքարը խարխլում է իմպերիալիստական բուրժուազիայի դիրքերը և հեշտացնում հակամոնոպոլիստական լայն ճակատի ստեղծումն ու սոցիալիստական հեղափոխության հաղթանակը.

— աճել են կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու օբյեկտիվ նախադրյալները, հարստացել է սոցիալիստական հեղափոխության միջոցների, իշխանության նվաճման ձևերի ու մեթոդների զինանոցը.

— կոմունիստական կուսակցությունների դրոշների ներքո կանգնում են բանվորների նորանոր ջոկատներ, ամրապնդվում է բանվոր դասակարգի իսկական ղեկավարների՝ կոմունիստների հեղինակությունը։

Այդ ամենը նշանավորում է կապիտալիստական երկրներում դասակարգային ճակատամարտերի նոր փուլի սկիզբը և մերկացնում սոցիալ-ռեֆորմիստական այն կոնցեպցիաների սնանկությունը, թե մարում է դասակարգային պայքարը, թե կապիտալիզմը էվոլյուցիոն կերպով վերաճում է սոցիալիզմի։

Միջազգային բանվոր դասակարգի հաջողությունների կարևորագույն գրավականը նրա շարքերի միասնությունն ու համախմբվածությունն է։ Բանվոր դասակարգի համախմբվածության պառակտումը ձեռնտու է միայն իմպերիալիստական ռեակցիային։ Բանվորական շարժման պառակտման պահպանմամբ շահագրգռված են կառավարող դասակարգերի քաղաքական ու գաղափարական կամակատարները, սոցիալ-դեմոկրատիայի և արհմիությունների աջ լիդերները։

Միջազգային բանվորական շարժման վերջնական հաղթանակի անհրաժեշտ պայմանը նրա բոլոր ջոկատների սերտ միասնությունն է, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հետևողական կիրառումը։ «Միայն բանվոր դասակարգի ինտերնացիոնալ դաշինքը կարող է ապահովել նրա վերջնական հաղթանակը»,— սովորեցնում է Մարքսը (Երկեր, հ. 16, էջ 336)։

**14. Միջազգային պրոլետարիատի հեղափոխական հաղթանակների, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների կենսագործման շնորհիվ հասել է գաղութային ճնշումից ժողովուրդների ազատագրության դարաշրջանը։** *Իմպերիալիզ-*

մի գաղութային սիստեմի ճգնաժամն սկսվեց մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո, սոցիալիստական հեղափոխության և ազգային-ազատագրական շարժման դաշինքի մասին Մարքսի, Էնգելսի, Լենինի իրականացված գաղափարի շնորհիվ։ ՍՍՀՄ-ում մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա ազգային հարցի հաջող և արդարացի լուծումը նոր խթան հանդիսացավ գաղութային և կախյալ երկրների ժողովուրդների ազատագրական պայքարի համար։ Հայրենական մեծ պատերազմում ՍՍՀՄ-ի հաղթանակը, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի կազմավորումը նպաստավոր փրադրություն ստեղծեցին այդ պայքարի համար։ Ազգային-ազատագրական հեղափոխությունների ճնշման տակ քայքայվեց իմպերիալիզմի գաղութային սիստեմը։ Համաշխարհային ասպարեզ դուրս եկավ միջազգային պրոլետարիատի մի նոր ջոկատ՝ ազատագրված պետությունների երիտասարդ բանվոր դասակարգը։ Ազգային-ազատագրական հեղափոխությունների սուր ծայրն ուղղված է իմպերիալիզմի ու նեոգաղութատիրության դեմ։

Ազգային-ազատագրական շարժման գլխավոր թշնամին եղել է ու մնում է իմպերիալիզմը, առաջին հերթին՝ ԱՄՆ-ի իմպերիալիզմը։ Իմպերիալիզմը ձգտում է երիտասարդ անկախ պետությունները անիրավահավասար վիճակում պահել կապիտալիստական տնտեսության սիստեմի մեջ, արգելակել և քայքայել ժողովուրդների հեղափոխական շարժումը։ ԱՄՆ-ը հանցավոր պատերազմ է մղում Վիետնամում։ Ամերիկյան ագրեսիայի դեմ Վիետնամի ժողովրդի պայքարը ազատության և անկախության համար մարտնչող ժողովրդի հերոսության, տոկունության և արիության հիանալի օրինակ է։ Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները համակողմանի օգնություն են ցույց տալիս Վիետնամի ժողովրդի արդար պայքարին։

Իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության արտահայտությունն են հանդիսանում նաև արաբական երկրների դեմ իսրայելական ագրեսիայի հրահրումն ու պաշտպանությունը, ազատագրական շարժումը ճնշելու նպատակով ամերիկյան մայրցամաքի, Հարավ-Արևելյան Ասիայի և Աֆրիկայի երկրների ներքին գործերին ԱՄՆ-ի զինված միջամտությունը։

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, հավատարիմ լինելով մարքսիզմ-լենինիզմին, միշտ հետևողականորեն պայքարում են ճնշված ժողովուրդներին անկախություն տալու, գաղութատիրությունը լիովին ոչնչացնելու համար։ «Չի կարող ազատ լինել այն ժողովուրդը, որը ճնշում է ուրիշ ժողովուրդների»՝ մարքսիստական այս լոզունգը դարձել է կոմունիստական շարժման ծրագրային պահանջ։

Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները, արդիականության բոլոր առաջադեմ ուժերը ձգտում են հասնել գաղութատիրության ու նեոգաղութատիրության լիակատար և վերջնական ոչնչացման, համակողմանի աջակցություն են ցույց տալիս իմպերիալիզմի դեմ, քաղաքական ու տնտեսական լիակատար անկախության համար պայքարող երիտասարդ ազգային պետություններին, հանդես են գալիս երիտասարդ ազգային պետությունների ներքին գործերին իմպերիալիստների միջամտության դեմ։

Զարգացող երկրների համար հնարավորություն է ստեղծվում ընթանալ սոցիալական առաջադիմության ուղիով, չանցնելով զարգացման կապիտալիստական փուլը։ Ազատագրված շատ երկրներում ծանրության կենտրոնը տեղափոխվում է սոցիալ-տնտեսական խոր վերափոխումների խնդիրները լուծելու վրա։ Ազգային-ազատագրական շարժման օրինաչափ արդյունքը Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի շատ երկրների ժողովուրդների հարաճուն ձգտումն է դեպի սոցիալիզմ։ Մեծանում են ազգային պետությունների հեղափոխական-դեմոկրատական երիտասարդ կուսակցությունների կապերը միջազգային կոմունիստական շարժման հետ, և սոցիալիզմի դիրքերում կանգնող այդ կուսակցությունների մի մասը հեղինակավոր ուժ է, որն իր ետևից է տանում աշխատավորների լայն խավերին։

15. Ժամանակակից կոմունիստական կուսակցությունները բանվոր դասակարգի մարտական ավանգարդն են, որը գլխավորում է աշխատավորների ազատագրական շարժումները։ Վերջին տասնամյակների ընթացքում հեղափոխական պրոցեսը իսկական համաշխարհային թափ է ստացել։ Իրականանում է Լենինի այն հանճարեղ կանխատեսումը, որ իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում մի միասնական հոսանքի մեջ կձուլվեն ամենաբազմազան ուժերն ու շարժումները։ Միջազգային կոմունիստական շարժումը պատմական մեծ միսիա է կատարում համախմբելով, միավորելով և միասնական նպատակի ուղղելով իմպերիալիզմի դեմ հանդես եկող բոլոր ջոկատներին։ Համաշխարհային կոմունիստական շարժումը համաշխարհային հեղափոխական շարժման քաղաքականապես կազմակերպված, ղեկավար միջուկն է, ամենաազդեցիկ քաղաքական ուժը, հասարակական առաջադիմության կարևորագույն գործոնը։ Կոմունիստական կուսակցությունները ապացուցեցին, որ իրենք ընդունակ են ոչ միայն պրոպագանդելու, այլև գործնականում իրականացնելու գիտական կոմունիզմի վսեմ իդեալները։

Մարքս-լենինյան ուսմունքը, որն ապացուցել է իր ճշմարտությունն ու կենսական ուժը, զարգանում, առնականանում և ամրապնդվում է գաղափարական բոլոր հակառակորդների դեմ մղվող վճռական պայքարում։ Բուրժուազիան չի կարող մարքսիզմ-լենինիզմին հակադրել որևէ ամբողջական կոնցեպցիա։

Ռեակցիայի գաղափարական պայքարի հիմնական զենքը հակակոմունիզմն է, զրպարտանքը սոցիալիստական կարգերի, կոմունիստական կուսակցությունների քաղաքականության ու նպատակների հասցեին։ Սակայն ոչինչ չի կարող կանգնեցնել մարքսիզմ-լենինիզմի գաղափարների տարածումը մասսաների մեջ, ոչինչ չի կարող թուլացնել հեղափոխական տեսության վերափոխող ուժը։ Իմպերիալիստական ռեակցիայի միացյալ ուժերը ի վիճակի չեն խոչընդոտելու միջազգային կոմունիստական շարժման աճին, նրա հաջողություններին։

Սոցիալիստական աշխարհում մարքս-լենինյան կուսակցությունները ղեկավար և ուղղություն ցույց տվող ուժ են։ Նրանք կուտակել են սոցիալիստական շինարարությունը ղեկավարելու, այդ շինարարության ընդհանուր օրինաչափությունները իրենց երկրների կոնկրետ պայմաններում գործնականորեն կիրառելու շատ հարուստ փորձ։

Զարգացած կապիտալիստական երկրներում բանվոր դասակարգի գլուխ կանգնած կոմունիստները ուղղություն են տալիս կապիտալիստական մոնոպոլիաների իշխանության ու կամայականության դեմ, աշխատավորների ուժեղացող շահագործման դեմ, պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի ամբողջ սիստեմի դեմ ուղղված ժողովրդական մասսաների շարժմանը։

Գաղութներում ու երիտասարդ ազգային պետություններում կոմունիստները պայքարում են ազգային լիակատար ազատագրության համար, հակաիմպերիալիստական, հակաֆեոդալական դեմոկրատական հեղափոխությունը

հետևողականորեն մինչև վերջ հասցնելու և այդ երկրները ոչ կապիտալիստական ուղիով զարգացնելու համար։

Զարգացման ոչ կապիտալիստական ուղին բռնած երկրներում կոմունիստները ակտիվորեն համագործակցում են աշխատավորների լայն խավերի շահերն արտահայտող դեմոկրատական կուսակցությունների և ազգային բուրժուազիայի առաջադեմ մասի հետ։

Օտարերկրյա կապիտալի ազդեցության տակ ընկած երկրներում բանվոր դասակարգը, կոմունիստների գլխավորությամբ, դեմոկրատական մյուս ուժերի հետ միասին պայքար է մղում իմպերիալիստական կախման և ազգերի շահերին դավաճանող կառավարող խմբավորումների դեմ։

Բանվոր դասակարգի, նրա կոմունիստական ավանգարդի ինտերնացիոնալ համերաշխությունը համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման անհրաժեշտ պայմանն է և կարևորագույն գործոնը։ Դա շարունակ շեշտել են Մարքսը, Էնգելսը և Լենինը։ Համաշխարհային կոմունիստական շարժումը սրբությամբ կատարում է այդ պատգամները։ Կոմունիստների միջազգային միասնության քայքայումը ծանրագույն հանցագործություն է համաշխարհային բանվոր դասակարգի հանդեպ։ Մաո-Ցզե-դունի խումբը, առաջնորդվելով «ձախ» ֆրազով քողարկված մեծապետական շովինիզմով, ոտնահարում է ինտերնացիոնալիզմի սկզբունքները, հանդես է գալիս մարքս-լենինյան կուսակցությունների դեմ, համաշխարհային կոմունիստական շարժման մեջ ծավալել է պառակտիչ գործունեություն։ Մարքսիստ-լենինյանները վճռականորեն հակահարված են տալիս Պեկինի ղեկավարների փորձերին՝ գիտական կոմունիզմը ննենգափոխելու «Մաո-Ցզե-դունի հակամարքսիստական գաղափարներով»։

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ուժը նրանց հավատարմությունն է մարքսիզմ-լենինիզմին և պրոլետարական ինտերնացիոնալիզմին։ Հեղափոխական տեսության անաղարտության պաշտպանությունը, հակամարքսիստական հայացքների դեմ պայքարը կոմունիստական կուսակցությունների կարևորագույն գաղափարական խնդիրն է։

Համայն աշխարհի կոմունիստներին միավորում են մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքը և համատեղ պայքարը նրա գաղափարների հաղթանակի համար։ Կոմունիստական և բանվորական կուսակցությունները ելնում են իրենց խորհրդակցություններում համատեղ մշակած այն եզրակացություններից ու գնահատականներից, որոնք վերաբերում են իմպերիալիզմի դեմ, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի համար մղվող պայքարի ընդհանուր խնդիրներին։

Վերջերս Բուդապեշտում կայացած 66 կոմունիստական ու բանվորական կուսակցությունների կոնսուլտատիվ հանդիպումը անհրաժեշտ համարեց 1968 թվականի նոյեմբեր-դեկտեմբեր ամիսներին հրավիրել կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային նոր խորհրդակցություն։ Խորհրդակցության նպատակն է ամրապնդել կոմունիստական շարժման միասնությունը, նպաստել սոցիալիզմի ու դեմոկրատիայի բոլոր ուժերի համախմբմանը՝ իմպերիալիզմի դեմ, ժողովուրդների ազգային ու սոցիալական ազատագրության և համայն աշխարհի խաղաղության համար մղվող պայքարում։

Հավատարմությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմին մարքս-լենինյան կոմունիստական շարժման օրենքն է։



Մարքսիզմ-լենինիզմը, լինելով համաշխարհային հասարակական մտքի բարձրագույն նվաճումը, կրում է քննադատական, հեղափոխական և խորապես ստեղծագործական բնույթ։ Այդ ուսմունքը ոչ թե դոգմա է, ոչ թե քարացած դրույթների հավաքածու, այլ գործողության ուղեցույց։ Հեղափոխական տեսության անընդհատ հարստացումը, հնացած դրույթներից հրաժարվելը և փոփոխվող իրականությանը համապատասխանող նոր դրույթների առաջադրումը մարքսիզմի կարևորագույն հատկանիշն է։

Մարքսի, Էնգելսի, Լենինի ամբողջ ուսմունքը տոգորված է զարգացման գաղափարով։ Այդ ուսմունքը իսկական գիտական տեսություն է և կենդանի ու զարգացող իրականության հետազոտման ու վերափոխման ճշմարիտ մեթոդ։

Արդեն ավելի քան հարյուր տարի է, ինչ պատմական զարգացումը ընթանում է մարքսիստական տեսության կանխագուշակած ուղիով։ Պատմության ամեն մի շրջադարձին մարքսիզմը նորանոր հաղթանակներ է տարել։

Կյանքի ճշմարտությունը մարքսիզմի կողմն է, նա այսուհետև էլ հաղթանակներ կտանի, մոտեցնելով մեր մոլորակում կոմունիզմի լիակատար հաղթանակի ժամը։

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ԽԱՉԱՏՐՅԱՆ Ռ. Հ.

ՀԿԿ Կենտկոմի քարտուղար

# ԴՊՐՈՑԸ ԵՎ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ

*Սովետական դպրոցը հսկայական դեր կատարեց մեր երկիրը դարավոր հետամնացությունից դուրս բերելու և այն աշխարհի ամենաառաջավոր գիտության ու տեխնիկայի երկիր դարձնելու գործում։ Անցած հիսուն տարում մեր դպրոցը հաստատության փայլուն քննություն բռնեց։ Դպրոցի պատմական նվաճումները կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության հոգատարության արդյունք են, կուլտուրական հեղափոխության լենինյան մեծ ծրագրի անշեղ իրականացման արգասիքը։*

*Վիթխարի են Սովետական Միության նվաճումները ժողովրդական կրթության բնագավառում։ Բավական է ասել, որ այժմ մեր երկրի տարբեր ուսումնական հաստատություններում սովորում են մոտավորապես 60 միլիոն մարդ։ 1968 թվականի բարձունքից և, մանավանդ, անցյալին անծանոթ, կյանք մտնող նոր սերնդին հաճախ դա սովորական բան է թվում։ Բայց համեմատությունը գնահատելու լավագույն մեթոդներից մեկն է։ Համատարած գրագիտությունը, որը մեր երկրի համար վաղուց անցած էտապ է, այսօր էլ դեռ սոցիալական երազ է աշխարհի բազում ժողովուրդների համար։*

*Սովետական դպրոցի պատմական նվաճումների վառ արտահայտություններից են Սովետական Հայաստանի ժողովրդական կրթության ակներև հաջողությունները։ 1913 թվականին Հայաստանի դպրոցներում սովորում էին ընդամենը 35.000 աշակերտ—յուրաքանչյուր ութ երեխայից յոթը մնում էին անգրագետ, իսկ դաշնակցական տխրահռչակ տիրապետության օրոք աշակերտների թիվը հասավ 18.000-ի։ Մինչդեռ այժմ Սովետական Հայաստանում (չհաշված նախադպրոցական հասակի երեխաներին), յուրաքանչյուր չորս բնակչից մեկը սովորում է։ Այսօր Հայաստանի հանրակրթական դպրոցներում ընդգրկված են 560 հազար աշակերտ, իսկ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում՝ մոտ 90.000 ուսանող։ Սովետական Հայաստանն այժմ ի վիճակի է կրթության գործում դասագրքերով, ուսուցիչների որակավորման դասընթացներով, բուհերում ուսանողների ընդունմամբ և այլ միջոցներով օգնելու նաև սփյուռքահայությանը։*

*Եվ այժմ, երբ մարդկության մեկ երրորդը դեռ խարխափում է բացարձակ անգրագիտության և հոգևոր խավարի ճիրաններում, ՍՄԿԿ-ն առաջ է քաշում՝ իր սոցիալական ու հումանիստական էությամբ շատ կարևոր՝ ընդհանուր տասնամյա միջնակարգ կրթության հարցը։ Մեր կուսակցության XXIII համագումարը որոշակի խնդիր դրեց կուսակցական կազմակերպությունների առջև՝ մինչև 1970 թվականը հիմնականում ավարտել անցումը ընդհանուր տասնամյա միջնակարգ կրթության։*

*Հայտնի է, որ սովետական դպրոցի կրթական սիստեմի հետագա կատարելագործումը բխում է ՍՄԿԿ նոր ծրագրից՝ կոմունիզմի կառուցման նյութատեխնիկական բազայի ստեղծման և կոմունիստական հասարակարգի անդամի՝ նոր մարդու հոգևոր ձևավորման անհրաժեշտությունից։*

*Հասարակության անդամների հանրակրթական և կուլտուրական մակարդակի բարձրացումը, նրանց պրոֆեսիոնալ գիտելիքների հարստացումը միշտ համարվել են կուսակցության գաղափարական աշխատանքի կարևորագույն մասը։ Բնակչության ընդհանուր կրթական մակարդակի բարձրացումը կոմունիզմի շինարարների արգասալի գործունեության անհրաժեշտ նախապայմանն է։ Ընդ որում դա թելադրվում է միաժամանակ արդի գիտատեխնիկական հեղափոխությամբ, որի պայմաններում հնարավոր չէ արտադրությունը վարել առանց բոլոր արտադրողների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման։*

*Դպրոցի ներկա ուսումնական պլաններն ու ծրագրերը, մի շարք առարկաների ու գիտությունների գծով, այլևս չեն համապատասխանում ո՛չ գիտությունների ներկա մակարդակին, ոչ էլ կյանքի պահանջներին։ Ֆիզիկայի ոլորտում տեղի ունեցած դարակազմիկ հեղափոխությունը, քիմիայի ու մաթեմատիկայի արագ ծաղկումը, կենսաբանության ու կիբեռնետիկայի նորագույն նվաճումները պահանջում են հիմնովին ու բազմակողմանի վերանայել դպրոցական ծրագրերը, ներդաշնակելով դրանք հասարակական պրոգրեսի հրատապ խնդիրների հետ։*

*Ահա թե ինչու ժողովրդական կրթության արդի սիստեմի կատարելագործումը միաժամանակ նշանակում է, որ մեր դպրոցը պետք է շարունակի զարգանալ որպես հանրակրթական, աշխատանքային, պոլիտեխնիկ դպրոց։ Սակայն, հարկ է նշել, որ աշխատանքային պոլիտեխնիկ կրթությունը չի կարելի փոխարինել պրոֆեսիոնալ կրթությամբ, այսինքն՝ նեղ արհեստի ուսուցմամբ։ Դա կնշանակի պոլիտեխնիկ կրթության լենինյան սկզբունքը փոխարինել մոնոտեխնիկ կրթության սկզբունքով։ Հիրավի, սովետական դպրոցը պետք է աշակերտներին զինի ո՛չ միայն կայուն գիտելիքներով, այլև ձևավորի նրանց մատերիալիստական աշխարհայացքը, պատվաստի կոմունիստական բարոյականության նորմերը, երիտասարդությանը նախապատրաստի կենսագործունեության համար։*

*Մեր աշխատանքի դիալեկտիկան այն է, որ սովետական ժողովրդի կուլտուրական մակարդակի բարձրացումը, մի կողմից՝ դյուրացնում է կուսակցական կազմակերպությունների գաղափարական գործունեությունը, ավելացնելով գրագետ և բազմակողմանի պատրաստություն ունեցող քաղաքացիների թիվը, բայց մյուս կողմից՝ բարդացնում է այդ աշխատանքը, քանի որ քաղաքացիների այդ աճող մակարդակը նոր պահանջներ է հարուցում ո՛չ միայն կուսակցական կոմիտեների, այլև դպրոցական ծավալուն ցանցի, բուհերի, գիտահետազոտական հաստատությունների, մամուլի, ռադիոյի, հեռուստատեսության, կինեմատոգրաֆիայի, ինչպես և մյուս գաղափարական հիմնարկ-*

ների ղեկավարների առաջ։ Այստեղից բխում է նշված օրգանների ու հիմնարկ-
ների ստվարաթիվ աշխատողների գաղափարական ու գիտական մակարդակի
բարձրացման բավականին հրատապ խնդիրը, մի խնդիր, որի լուծումը կու-
սակցական կոմիտեների ամենօրյա և սիստեմատիկ հոգատարության առար-
կան պետք է լինի։ Սրա հետ մեկտեղ, այժմ հարկավոր է առավել քան խստա-
պահանջ լինել վերոհիշյալ բնագավառներում ղեկավար կադրերի ընտրության
ու տեղադրման գործում, հիշելով, որ գաղափարական խոտանը մեծ վնաս է
հասցնում աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը։ Այս դեպ-
քում է, որ չպետք է մոռանալ Կ. Մարքսի այն թևավոր ֆրազը, թե դաստիա-
րակողները ևս կարիք ունեն հարատև դաստիարակության։

Հիրավի, անցած մեկ և կես տարվա ընթացքում հանրապետության կու-
սակցական ու սովետական օրգանները մեծ գործ են կատարել տասնամյա
կրթության անցնելու ուղղությամբ։ Ամենուր կուսակցական, սովետական և
արհմիութենական օրգաններն ու կազմակերպություններն սկսել են առավել
մեծ ուշադրություն նվիրել դպրոցի կարիքներին, ջանալով ավելի բարենպաստ
պայմաններ ստեղծել ուսուցիչների և աշակերտների համար, ավելի մոտիկից
զբաղվել դպրոցական գործերով։ Սա նոր հաջողությունների կարևոր գրավա-
կանն է։

Անշուշտ ոգևորիչ և բնորոշ է այն իրողությունը, երբ անցյալ տարի կեն-
տրոնացված կապիտալ ներդրումների հաշվին գերակատարվեց դպրոցաշինա-
րարության պլանը, որի շնորհիվ այս տարվա հունվարի մեկին շահագործման
հանձնվեցին 50 դպրոցական նոր շենք, նախատեսված 42-ի դիմաց։ Բազմա-
թիվ շրջաններում (Հոկտեմբերյան, Արտաշատ, Վեդի, Բասարգեչար և այլն)
կոլտնտեսությունները մի անգամ ևս ցուցադրեցին իրենց հայրենանվեր եռան-
դը, որի շնորհիվ 1967 թվականի հոբելյանական տարում Հայաստանում ըն-
դամենը շահագործման հանձնվեցին 120 նոր դպրոց (կից կառուցումներով
հանդերձ), 51,056 աշակերտական տեղով, գրեթե երկու անգամ ավելի, քան
1966 թվականին։

Հանրապետությունում զգալի գործ է կատարված նաև ուսումնա-դաստիա-
րակչական աշխատանքների և, ընդհանրապես, դպրոցի առջև դրված խնդիր-
ների իրագործման բնագավառում։ Բազմաթիվ դպրոցներ հրաշալի օրինակներ
են տալիս մեր աճող սերնդին կայուն ու խոր գիտելիքներով զինելու և նրանց
պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում։

Այսուհանդերձ, աշակերտության կրթության ու դաստիարակության բնա-
գավառում դեռևս կան շատ լուրջ թերություններ և չլուծված բարդ խնդիրներ։
Ամենից առաջ նկատի ունենք այն իրողությունը, որ որոշ աշակերտներ այս
կամ այն դասարանից թողնում են դպրոցը։ Այժմ բոլորին լրջորեն մտահո-
գում է դպրոցներում ուսման որակի բարձրացման, ինչպես նաև մաղումների
կանխման հարցը։

Իրոք, աշակերտների ուսման որակի հարցը կյանքի խոր թելադրանքով
դրվում է դպրոցի բախտը տնօրինող բոլոր կազմակերպությունների և օրգան-
ների առաջ։ Խելամտորեն հաշվի առնել որոշ դպրոցներում աշակերտների
առաջադիմության բնագավառում նկատվող անբավարար մակարդակի բոլոր
պատճառներն ու շարժառիթները, կազմակերպական, ուսումնա-մանկավար-
ժական և այլ օժանդակ միջոցների մշակմամբ ու կիրառմամբ ջանալ մոտա-
կա ժամանակներում կանխել երկտարեցության երևույթները հանրապետու-
թյան մի շարք դպրոցներում։ Սրանք որքան կարևոր, նույնքան և դժվարին



խնդիրներ են, որոնց լուծմանը պետք է մասնակցի սովետական ողջ հասարա-
կայնությունը։ Այժմ դպրոցը առավել կարիք ունի կուսակցական, կոմերիտա-
կան, պրոֆմիութենական կազմակերպությունների և պետական մարմինների
սիստեմատիկ աջակցության։

Բուհերի ընդունելությունները վկայում են, որ այժմ կենսականորեն ան-
հրաժեշտ է առանձնահատուկ ուշադրություն նվիրել մանավանդ գյուղական
դպրոցների ուսուցման որակի բարձրացմանը։ Այս հարցը պետք է մտահոգի
գյուղական կոմունիստներին, կոլտնտեսությունների ու սովխոզների ղեկա-
վարներին, գյուղական ու ավանային սովետներին և, վերջապես, գյուղական
ողջ հասարակայնությանը։ Միայն այս դեպքում ճիշտ կլուծվի մատաղ սերըն-
դին հարուստ գիտելիքներով զինելու այնքան շնորհակալ և կարևորագույն
համապետական խնդիրը։

Հարկ է նշել և այն, որ լուսավորության մինիստրությունը, նրա կենտրո-
նական ապարատը և տեղական մարմինները թուլացրել են պահանջկոտու-
թյունը, անբավարար են իրականացնում հսկողությունը ուսուցման ընթացքի
և աշակերտների գիտելիքների որակի նկատմամբ։ Տեսչական ու դիրեկտո-
րական ստուգումները հաճախ ձևական բնույթ են կրում, հանգում են առաջա-
դիմության միջին տվյալների «վերլուծության», առանց աշակերտների իրա-
կան գիտելիքների խոր ստուգման։ Այս կապակցությամբ հիշատակենք, որ
Ապարանի, Ալավերդու, Ղուկասյանի, Արտաշատի շրջանների կուսակցական
ու սովետական օրգաններին պատշաճ չափով չի մտահոգում ուսման որակի
բարձրացումը։

Լուսավորության մինիստրությունը և կուսակցական շրջկոմները կոչված
են վճռական միջոցների դիմելու նշված թերությունների վերացման համար։

Աշակերտներին կայուն գիտելիքներ տալու գործում մեծ են դպրոցական
դասագրքերի և ծրագրերի դերն ու նշանակությունը։ Մեզ մոտ դրական շատ
բան է արված այդ ուղղությամբ։ Այժմ շարունակվում է նոր ծրագրեր և դրանց
հիման վրա նոր դասագրքեր կազմելու գործը։ Սակայն այս բնագավառում
ևս կան լուրջ թերություններ։

Հարկ ենք համարում հատկապես շեշտել որոշ դպրոցներում հայոց լեզվի
դասավանդման գործում տեղ գտած լուրջ թերություններն ու լեզվի ուսուց-
ման անբավարար դրվածքը, որի հետևանքով ցածր է շրջանավարտների մի
մասի լեզվական կուլտուրան։ Այս երևույթը գերազանցապես խոսում է այն
մասին, որ դպրոցների համար լեզվի դասատուներ ընտրելիս, լուսավո-
րության մարմինները թույլ են տալիս անհանդուրժելի դյուրաքեղծություն
այն ուսուցիչներին, որոնք օրըստօրե չեն բարձրացնում իրենց լեզվական
կուլտուրան և միաժամանակ խստապահանջ չեն դասավանդման ընթաց-
քում։ Համալսարանը, մանկավարժական ինստիտուտներն այսուհետև պետք
է եռապատկեն իրենց ջանքերը՝ մեր դպրոցներն ապահովելու բարձրորակ
մանկավարժներով։

Անհրաժեշտ է վճռապես բարելավել հայոց լեզվի դասավանդումը դպրո-
ցում, մեր հարուստ լեզվի դարավոր գանձերը դարձնել երիտասարդ սերնդի
սեփականությունը, միշտ հիշել, որ կարելի է անգամ լավ մասնագետ լինել,
բայց չի կարելի լիարժեք կիրթ մարդ համարվել առանց լեզվին լավ տիրա-
պետելու, առանց լեզվական հարուստ կուլտուրայի։

Լուրջ թերություններ կան ռուսաց և օտար լեզուների, ինչպես և ֆիզիկա-
մաթեմատիկական առարկաների դասավանդման բնագավառում։

ՀԿԿ Կենտկոմի վերջերս կայացած պլենումն իր հանգամանալի որոշմամբ
նշեց այն միջոցառումները, որոնց իրականացմամբ մեծապես առաջ կընթանա
մեր դպրոցական գործը։

Ուսուցումը և կոմունիստական դաստիարակությունը մեր դպրոցում ան-
խզելիորեն կապված միասնություն են։ Հիսուն տարում սովետական դպրոցը
դաստիարակել է կոմունիզմի գործին նվիրված սերունդներ, որոնք պատվով
են կատարել իրենց պարտքը հայրենիքի հանդեպ։ Մեր երկիրն իրավամբ հը-
պարտանում է իր դպրոցով և նրա դաստիարակած սաներով։

Հանրապետության դպրոցներում բազմակողմանի աշխատանք է տարվում
աշակերտության կոմունիստական դաստիարակության նպատակով։ Հայտնի
է, որ պատանիների աշխարհայացքի ձևավորման հիմնական միջոցը, ամենից
առաջ, ուսումնական ողջ պրոցեսն է, առարկաների հաջող ավանդումը և,
առաջին հերթին՝ հասարակական և հումանիտար գիտությունների, աշխար-
հայացքային առարկաների դասավանդումը։ Մեր ուսուցիչները պատվով են
կատարում իրենց սրբազան պարտքը՝ աշակերտներին կոմունիստական գա-
ղափարայնության, սովետական հայրենասիրության և սոցիալիստական ին-
տերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու համար։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ «Միջնակարգ հանրա-
կրթական դպրոցի աշխատանքների հետագա բարելավման միջոցառումների
մասին» 1966 թվականի նոյեմբերին ընդունած որոշման մեջ հստակ սահման-
ված են աշակերտության կոմունիստական դաստիարակության խնդիրները,
դաստիարակություն, որի նպատակն է աշակերտներին զինել հեղափոխական-
մատերիալիստական աշխարհըմբռնմամբ, հասարակական զարգացման օրենք-
ների իմացությամբ, նրանց դաստիարակել կոմունիստական կուսակցության և
սովետական ժողովրդի հեղափոխական, աշխատանքային տրադիցիաների
ոգով։

Ուսուցիչները, ժողովրդական կրթության բոլոր գործիչները, կուսակցա-
կան և կոմերիտական կազմակերպություններն այդ հարցը պետք է դարձնեն
դպրոցի գաղափարական աշխատանքի առանցքը։ Մինչդեռ դաստիարակու-
թյան գործը որոշ տեղերում թողնված է միայն դասղեկների վրա, բոլոր ուսու-
ցիչները չեն, որ հավասարապես ներգրավվում են այդ գործում։ Դեռ զգալի են
աղմկարարությունն ու ցուցամոլությունն այդ ասպարեզում։

Դպրոցներում թույլ է գիտակցական կարգապահությունը։ Թերևս տեղին
է հիշեցնել մեծ մանկավարժ Կոմենսկու հայտնի միտքը, որ «դպրոցում կդա-
դարի ամեն մի գործունեություն, եթե չլինի կարգապահությունը», «դպրոցն
առանց կարգապահության նույնն է, ինչ՝ ջրաղացն առանց ջրի»։

Անհրաժեշտ է նշել, որ դաստիարակչական աշխատանքի բարդ կոմպլեքսը
դեռ բավարար չափով չի մշակվում ու լուսաբանվում մեր մանկավարժական
տեսության կողմից։ Մինչև այժմ դպրոցը, ուսուցիչը չունեն հայոց լեզվով
դաստիարակչական աշխատանքի լրիվ մշակված ծրագիր՝ ըստ աշակերտների
տարիքային առանձնահատկությունների։ Հանրապետության մանկավարժներն
ու հոգեբանները քիչ բան են անում այդ ուղղությամբ։ Նրանց գիտական հե-
տազոտությունների թեմատիկան նեղ է, ուսումնասիրությունները նվիրվում
են մեծ մասամբ մեթոդական մասնավոր հարցերի, նկարագրական բնույթ են
կրում և կամ հաճախ մշակում են որևէ այժմեականություն չունեցող անօգտա-
կար հարցեր։

Լուսավորության մինիստրության մանկավարժական գիտությունների գի-



տահետազոտական ինստիտուտը, բուհերի մանկավարժական և հոգեբանու-
թյան ամբիոններն անբավարար են ուսումնասիրում դպրոցի կյանքը և այս-
օրվա ուսուցչի հոգսերը, չեն անում անհրաժեշտ գիտական ընդհանրացում-
ներ պրակտիկ աշխատանքի համար։ Վճռական շրջադարձը դեպի դպրոցական
պրակտիկան կենսական անհրաժեշտություն է։

Դաստիարակության գործում տեղ գտած լուրջ թերությունները հաճախ
արդյունք են այն բանի, որ ուսուցիչները բավարարվում են միայն ուսուցանե-
լով, դասը քիչ են օգտագործում նաև պատանիների դաստիարակության, աշ-
խարհայացքի մշակման և հենց դասի գաղափարական էությունը խորապես
բացահայտելու համար։ Սա հատկապես կարևոր է աշխարհայացքային,
հումանիտար առարկաների դասավանդման ընթացքում։

Հումանիտար առարկաների դասավանդման գաղափարական մակարդակի
բարձրացումը կուսակցության քաղկոմների, շրջկոմների և սկզբնական կազ-
մակերպությունների գործունեության հիմնական հարցերից մեկն է։ Բայց
Ալավերդու, Ղափանի, Արթիկի շրջկոմները վերջին երկու տարում ամենևին
չեն զբաղվել այդ հարցով, չնայած դպրոցներում եղած լուրջ թերություններին։

Ղեկավարվելով «Հասարակական գիտությունների հետագա զարգացման և
կոմունիստական շինարարության ասպարեզում դրանց դերի բարձրացման
միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշմամբ, անհրաժեշտ է
ուժեղացնել բոլոր ուսուցիչների և, մասնավորապես, այդ առարկաների ուսու-
ցիչների հետ տարվող աշխատանքը, նրանց համար ոչակյալ դասախոսու-
թյուններ կազմակերպել հանգուցային պրոբլեմների շուրջ, բոլորին միշտ իրա-
զեկ դարձնել երկրի ներքին ու արտաքին կյանքին։

Հանրակրթական դպրոցների ուսուցիչներին ցույց տրվող օգնության, ինչ-
պես նաև աշակերտության կոմունիստական դաստիարակության, նրանց աշ-
խարհայացքի ձևավորման գործում քիչ բան չեն արել մեր մամուլը, ռադիոն,
հեռուստատեսությունը, գրողները, կոմպոզիտորները և մյուս արվեստագետ-
ները։ Սակայն կատարված աշխատանքը դեռևս լրիվ կերպով չի բավարարում
այսօրվա պահանջները։

Հանրապետական ու շրջանային թերթերը դպրոցին վերաբերող մի շարք
արմատական հարցերի անդրադառնում են դեպքից-դեպք, սիստեմատիկաբար
չեն լուսաբանում ուսումնա-դաստիարակչական աշխատանքների վիճակը և,
առանձնապես, դպրոցական սկզբնական կուսակցական կազմակերպություննե-
րի գործունեությունը։ Մինչդեռ այդ հարցերը պետք է գտնվեն թերթերի ու
ամսագրերի ուշադրության տեսադաշտում։ Նրանք ուսումնա-դաստիարակչա-
կան աշխատանքներին և մանկավարժության ժամանակակից հրատապ պրոբ-
լեմներին նվիրված իրենց հոդվածներով պետք է իրական օգնություն ցույց
տան ուսուցիչներին։ Այդ ուղղությամբ հատկապես մեծ անելիքներ ունեն «Սո-
վետական մանկավարժ» ամսագիրը և «Սովետական դպրոց» թերթը, որոնք,
սակայն, դեռևս պատշաճ խորությամբ չեն արծարծում մանկավարժության
առանձին հանգուցային պրոբլեմները։

Հանրապետության քաղաքների, գյուղերի ու ավանների կես միլիոնից ա-
վելի աշակերտներ սպասում են հետաքրքրական վեպերի, պատմվածքների,
չափածո երկերի, պատանեկան կյանքի տրոփը մարմնավորող պիեսների,
մանկա-պատանեկան բովանդակալից ու գրավիչ կինոնկարների, երգերի,
նկարների և այլն։ Մեր գրողները, կոմպոզիտորները, նկարիչները և մյուս ար-
վեստագետները պետք է հաշվի առնեն այդ և տան բարձրորակ այնպիսի գոր-

ծեր, որոնք մեծապես նպաստեն նոր սերնդի էսթետիկական դաստիարակու-
թյանը, նրա մեջ ջերմ սեր հարուցեն դեպի գիտությունն ու կուլտուրան, օգ-
նեն ամեն մի պատանու՝ բազմակողմանիորեն կրթված ու սովետական հայ-
րենիքին անհունորեն նվիրված քաղաքացի դառնալու:

Դա չափազանց լուրջ գործ է, որի վրա մեր կուսակցությունն առանձնա-
հատուկ ուշադրություն է դարձնում և իր տեղական կազմակերպություններից
պահանջում՝ ամեն կերպ օգնել դպրոցին, գաղափարական աշխատանքի այդ
կարևոր բնագավառի բոլոր գործիչներին:

Մատաղ սերնդի շրջանում տարվող գաղափարական աշխատանքում կու-
սակցական և կոմերիտական կազմակերպությունների կարևորագույն խըն-
դիրը՝ աշակերտներին սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, Սովետական
Միության ժողովուրդների լենինյան բարեկամության և եղբայրության ոգով
դաստիարակելն է: Աշակերտության ինտերնացիոնալ դաստիարակության
գործում մեծագույն նշանակություն ունի ռուսաց լեզվի և գրականության
դասավանդումը դպրոցում:

Բոլոր նրանք, ովքեր պատիվ ունեն իրենց կյանքը նվիրելու կոմունիզմի
քաղաքացիների կրթության ու դաստիարակության անսահման շնորհակալ
գործին, պետք է ջանք չխնայեն, որպեսզի պատանիները վարժ տիրապետեն
ո՛չ միայն մայրենի, այլև ռուսաց լեզվին՝ իբրև մեր դարաշրջանի սոցիալիս-
տական ազգերի ու ժողովուրդների հաղորդակցության գործոնի:

Անհրաժեշտ է մատաղ սերնդին լուսաբանել այն պատմական իրողությու-
նը, որ միայն սոցիալիզմի օրոք հնարավոր եղավ ազատագրված բոլոր ազ-
գերին սիստեմատիկաբար հաղորդակից դարձնել միմյանց հոգևոր գանձերին,
յուրացնել այն, ինչ առաջավոր է եղբայրական մյուս ժողովուրդների կուլտու-
րայի գանձարանում:

Այս առումով կուլտուրական ճակատի բոլոր աշխատողների պարտքն է՝
սովետական ներկա և վաղվա քաղաքացիներին տոգորել լենինյան ինտերնա-
ցիոնալիզմի վեհ գաղափարներով, պայքար մղել ազգային սահմանափակու-
թյան առանձին դրսևորումների դեմ:

Այժմ, երբ տեղի է ունենում սոցիալիստական ազգերի առավել մերձեց-
ման և նրանց ազգային կուլտուրայի ծաղկման երկկողմանի բարդ պրոցե-
սը, նոր սերնդի դաստիարակները կոչված են խոշոր դեր խաղալու ապագա
քաղաքացիների գաղափարական ձևավորման գործում:

Այս ոգով պետք է տոգորված լինի դպրոցի, տեխնիկումի և յուրաքան-
չյուր բուհի ուսուցչի ու դասատուի ուսուցման պրոցեսը: Հարցի այս կողմի
վրա խոր ուշադրություն պետք է դարձնեն կուսակցության շրջկոմները և լու-
սավորության մինիստրության տեղական օրգանները:

Գաղափարական դաստիարակության հետ կապված այս բոլոր խնդիրները
պետք է լուծվեն ո՛չ միայն ուսման, այլև արտադասարանային աշխատանքի
ընթացքում: Այդ գործում հատկապես մեծ է դպրոցի կոմերիտական և պիո-
ներական կազմակերպությունների դերը, որոնք կուսակցական կազմակեր-
պությունների, դպրոցների դիրեկտորների և մանկավարժական կոլեկտիվների
սիստեմատիկ օգնության կարիքն ունեն:

Դպրոցի գործունեության մեջ իր ուրույն ու կարևոր տեղն ունի աշա-
կերտների էսթետիկական դաստիարակությունը: Այս բնագավառը, հատկա-
պես գյուղական դպրոցներում, դեռևս անբավարար վիճակում է: Դպրոցների



մեծ մասում չկան գեղագետ դասատուներ: Հետևաբար, նկարչության և, հատ-
կապես, երաժշտության դասավանդումը դպրոցներում վճռական բարելավման
կարիք ունի:

Դաստիարակությունը՝ մարդու գիտակցության, զգացմունքների և վար-
քագծի վրա նպատակադրված կերպով ազդելու բարդ պրոցես է: Ո՛չ միայն
դպրոցը, այլև մեր ողջ իրականությունը—ընտանիքը, հասարակությունը, մա-
մուլը, ռադիոն, կինոն, հեռուստատեսությունը, թատրոնը, գրականությունը,
տեսանելի կամ անտեսանելի, մասնակցում են այդ պրոցեսին, աշակերտի
քաղաքական ու բարոյական զարգացման գործոն են, գիտական, բարոյական
լիցք են տալիս մատաղ սերնդին:

Մեր նվաճումներն այս բնագավառում անկասկածելի են և հանրահայտ:
Հայրենական մեծ պատերազմի օրերին փայլուն քննություն բռնեց սովետա-
կան կրթության առաջավոր սիստեմն՝ իր բարոյա-քաղաքական գաղափար-
ներով: Սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար իրենց կյանքը
չխնայեցին միլիոնավոր քաղաքացիներ, որոնք կրթված ու դաստիարակված
էին սովետական դպրոցում: Դաստիարակել մատաղ սերունդը սովետական
հայրենասիրության, կոմունիստական բարոյականության ոգով՝ մեր ուսու-
ցիչների անմիջական և պատվաբեր պարտականությունն է:

Արծարծվող հարցի առնչությամբ կուսակցական կազմակերպությունների
առջև դրված կարևոր խնդիրներից մեկը՝ աշակերտության աշխատանքային
դաստիարակությունն է: ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը
իրենց 1966 թվականի նոյեմբեր ամսվա որոշմամբ պարտավորեցրել են կու-
սակցական, սովետական, կոմերիտական և արհմիութենական բոլոր կազմա-
կերպություններին, արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտնտեսու-
թյունների ու սովխոզների ղեկավարներին՝ դպրոցին բազմակողմանի օգնու-
թյուն ցույց տալ աշակերտների աշխատանքային դաստիարակության գոր-
ծում: Մինչդեռ այդ կարևոր խնդրի լուծման ասպարեզում դեռ լուրջ թերու-
թյուններ կան:

Ոմանց թվում է, որ դպրոցում արտադրական ուսուցման վերացումը բա-
ցառում է աշխատանքային դաստիարակության հարցը: Դա մոլորություն է:
Ստիպված ենք նորից հիշեցնել, որ մեր դպրոցը, ութամյա թե տասնամյա,
եղել և մնում է աշխատանքային, պոլիտեխնիկ դպրոց—մեր բանվոր դասա-
կարգի և կոլտնտեսային գյուղացիների շարքերի հիմնական համալրողը:

Հետևաբար, կուսակցական կազմակերպությունների, կոմերիտմիության,
ուսուցիչների կարևորագույն խնդիրն է՝ աշակերտների մոտ սեր պատվաստել
ֆիզիկական աշխատանքի նկատմամբ, նրանց մեջ հարգանք և ակնածանք նե-
րարկել նյութական բարիքներ ստեղծող մարդու հանդեպ, դրվատել աշխա-
տանքի ռոմանտիկան, նրա ստեղծագործական, ինտելեկտուալ բնույթը ու երի-
տասարդներին ներգրավել արտադրության ոլորտը: Եթե մինչև այժմ դժվարու-
թյուններ կային ութամյակն ավարտողներին արտադրություն ուղարկելու
գործում, ապա այժմ ավելի մեծ ջանքեր են հարկավոր տասնամյա կրթություն
ունեցող մարդկանց աշխատանքի տեղավորելու համար: Կուսակցական կազ-
մակերպությունները պետք է հաշվի առնեն այս հանգամանքը և լրջորեն զբ-
բաղվեն աշակերտության աշխատանքային դաստիարակության հարցով:

Բարդ է և հետաքրքրական երիտասարդության հետ տարվող դաստիա-
րակչական աշխատանքը: Բնավ չի կարելի անտեսել, որ մեր աշակերտությու-
նը, երիտասարդությունը չափազանց հետաքրքրասեր է, քաղաքականապես

ակտիվ։ Նա բուռն հետաքրքրություն է տածում քաղաքական և սոցիալական պրոցեսների նկատմամբ, արձագանքում մեր կյանքի հասարակական երևույթներին և համառորեն փորձում ըմբռնել մեր առաջընթացի օրինաչափությունները։

Չպետք է մոռանալ, որ մեր երիտասարդության աշխարհայացքը ձևավորվում է միջազգային ոլորտում մղվող գաղափարական սուր պայքարի ընթացքում, իմպերիալիզմի գաղափարական մշտական դիվերսիաների պայմաններում։ Թշնամին այդ նպատակով օգտագործում է ռադիոն, տուրիզմը, մամուլը և այլ միջոցներ։ Այս պայմաններում երիտասարդության հետ տարվող աշխատանքում հսկայական նշանակություն են ստանում մեր պրոպագանդելու վարպետությունը, դաստիարակչական աշխատանքի մարտունակությունն ու հարձակողական բնույթը, ճկունությունը, բազմազանությունը, կրքոտ համոզվածությունը և հրապարակախոսական հմայքը։

Սովետական ուսուցիչը սերունդների գիտակցության մեջ տպավորվել է որպես գիտելիքներ սերմանող և հոգևոր դաստիարակ։ Ուսուցչի ամբողջ գործունեությունը կապված է մեր կուսակցության քաղաքական ու կազմակերպական աշխատանքի, մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարների պրոպագանդման հետ։ Ժողովրդի կուլտուրական վերելքն ապահովելու գործում ուսուցիչը եղել և մնում է կուսակցության հավատարիմ օգնականը։ Սերունդները միշտ շնորհակալությամբ են հիշում իրենց լավ ուսուցիչներին։

Հայաստանի հազարավոր ուսուցիչներ կուսակցության ակտիվ պրոպագանդիստներ են, որոնք մասսաներին ներարկում են կոմունիզմի գաղափարները, օգնում մեր կուսակցությանն ու պետությանը՝ լուծելու երկրի առջև կանգնած վիթխարի խնդիրները։

Լուսավորության մինիստրությունը, կուսակցական և սովետական օրգանները քիչ ջանք չեն գործադրում ուսուցիչներ պատրաստելու համար, սակայն անհրաժեշտ է ավելի ուժեղացնել այդ աշխատանքը և կոնկրետ միջոցառումների դիմել նրանց որակավորումը բարձրացնելու և ճիշտ տեղաբաշխելու ուղղությամբ։

Ժողովրդական կրթության տեղական օրգաններն անբավարար աշխատանք են տանում ուսուցիչների շրջանում, քիչ են օգնում նրանց՝ դասի արդյունավետության բարձրացման, առաջավոր մեթոդների և տեխնիկական միջոցների կիրառման գործում։ Մի շարք դպրոցների ղեկավարներ ամիսներով չեն լսում ուսուցիչների դասերը։ Ապարանի, Ղափանի և այլ շրջանների դպրոցների որոշ դիրեկտորներ հազվադեպ են լինում դասարաններում։

Ժողովրդական կրթության օրգաններն ուսուցիչներին ու դպրոցի դիրեկտորներին ինչպես հարկն է չեն զինում ուսուցման ժամանակակից մեթոդներով, անբավարար են զբաղվում ուսուցիչների դրական փորձի պրոպագանդայով։ Քիչ չեն դեպքեր, երբ դպրոց են գործուղվում անհրաժեշտ գիտելիքներ չունեցող ուսուցիչներ՝ նույնիսկ այնպիսիք, որոնք դասավանդման ցածր որակի պատճառով նախկինում աշխատանքից ազատված են եղել։

Նոր ուսումնական պլաններին և ծրագրերին անցնելու կապակցությամբ կուսակցական կազմակերպությունների և ժողովրդական կրթության օրգանների առանձնահատուկ ուշադրությունն ենք հրավիրում նաև ուսուցիչների վերապատրաստման գործի վրա։

Մեր արմատական հարցերից մեկը նոր ուսուցիչների պատրաստումն է։



Այդ բնագավառում վերջին տարիներս, անշուշտ, որոշակի գործ է արվել։ Սակայն, չնայած դրան, հանրապետության շրջաններում ֆիզիկայի, մաթեմատիկայի, ռուսաց և օտար լեզուների ուսուցիչների զգալի պակաս կա։

Պետպլանը, ինչպես և համապատասխան այլ կազմակերպություններ անբավարար են մշակել ուսուցչական կադրերի պատրաստման գիտականորեն հիմնավորված պահանջները։ Իսկ եղած մոտավոր պլանավորման մեջ կյանքը կատարում է բավականին տհաճ շտկումներ։ Խոսքն այն մասին է, որ մի շարք մասնագիտությունների գծով բուհերն ավարտող ուսանողների թիվը, մաղումների պատճառով, շատ հեռու է պլանով նախատեսված մեր սպասումներից։ Դա ամենից առաջ արդյունք է որոշ բուհերում ուսումնա-դաստիարակչական աշխատանքի ցածր մակարդակի։ Ցավոք սրտի, որոշ ինստիտուտների ֆիզիկա-մաթեմատիկական ֆակուլտետներում շատ քիչ բան է արվում այս աննորմալ վիճակի վերացման համար։

Դպրոցի կատարելագործման այս էտապում ուսուցիչների պատրաստումը կարևորագույն նշանակություն է ստանում։ Անհրաժեշտ է բավարար թվով, բարձրորակ ուսուցիչներ պատրաստել և, որ ամենակարևորն է, կուսակցության քաղկոմները, շրջկոմները, ժողովրդական կրթության օրգանները պետք է ուժեղացնեն նրանց հետ տարվող աշխատանքը, խստապահանջ լինեն ուսուցչի պրոֆեսիոնալ որակի հարցում։

1966 թվականի հոկտեմբերին ՀԿԿ Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը քննարկեցին հանրապետությունում գյուղական ուսուցիչների արտոնությունների և առավելությունների մասին կուսակցության ու կառավարության որոշման կատարման ընթացքը և ընդունեցին համապատասխան որոշում։ Հարկ է, որ քաղաքային ու շրջանային կոմիտեները, կուսակցական և սովետական բոլոր կազմակերպությունները հետևեն այդ որոշումների անշեղ կատարմանը և պատասխանատվության կանչեն նրանց, ովքեր անտարբեր են ուսուցչի հոգսերի նկատմամբ։

Ինչպես հայտնի է, հանրապետության դպրոցներում աշխատում են գրեթե 29 հազար ուսուցիչ, որոնցից 9700-ը, կամ մեկ երրորդը կոմունիստական կուսակցության անդամներ են։ Հանրապետության 1300 դպրոցում մենք ունենք 712 ինքնուրույն դպրոցական կուսակցական կազմակերպություն։ Դա մեծ ուժ է, որը կուսակցության քաղկոմ-շրջկոմները պետք է նպատակասլաց օգտագործեն։

Դպրոցական կուսակցական կազմակերպությունների շատ քարտուղարներ, հատկապես նոր ընտրվածները, չունեն անհրաժեշտ փորձ։ Քաղաքային և շրջանային կոմիտեները պետք է լուրջ աշխատանք տանեն դպրոցական կուսակցական կազմակերպության քարտուղարների հետ, նրանց սովորեցնեն կուսակցական աշխատանքի արվեստը, ընդհանրացնեն լավագույն փորձը, բարձրացնեն նրանց մարտունակությունը և դերը՝ աշակերտների ուսման ու դաստիարակության գործում։

Ժողովրդական կրթության կուսակցական ղեկավարությունը բարդ գործ է։ Այն ընդգրկում է աշխատանքը դպրոցի և ժողովրդական կրթության ղեկավարների հետ, հոգատարությունը մանկավարժների գաղափարական աճի ու կատարելագործման համար և բազմաթիվ այլ հարցեր։ Անթույլատրելի է, որ Էջմիածնի, Բասարգեչարի, Կալինինոյի, Ապարանի, Կամոյի և այլ շրջկոմներ վերջին 2—3 տարում ոչ մի անգամ չեն քննարկել դպրոցական կուսակցական կազմակերպությունների աշխատանքի բարելավման հարցեր, չեն ուսումնա-

սիրել նրանց գործունեության առանձնահատկությունները, դպրոցական կուսակցական կազմակերպությունների քարտուղարների հետ չեն անցկացրել զրույցներ կամ խորհրդակցություններ։ Մինչդեռ շրջկոմի քարտուղարը, կուսակցական և սովետական աշխատողները բնավ չպետք է աչքաթող անեն դպրոցը, ոչինչ չպետք է խնայեն դպրոցի, ուսուցչի, աշակերտի համար։

Որքան սերտ լինի դպրոցի կապը կյանքի, հասարակայնության գործունեության հետ, այնքան ավելի հաջող կկենսագործվեն դպրոցի աշխատանքների հետագա բարելավման մասին կուսակցության Կենտրոնական կոմիտեի և կառավարության՝ նշած միջոցառումները։ Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ ապահովել սովետական, արհմիութենական, արտադրական բոլոր կազմակերպությունների մաքսիմալ օգնությունը դպրոցին։

Կուսակցության քաղկոմները, շրջանային կոմիտեները, սկզբնական կազմակերպությունները պետք է ձեռնարկեն բոլոր միջոցները՝ ամրապնդելու հիմնարկների, ձեռնարկությունների, սովխոզների, կոլտնտեսությունների կապը դպրոցների հետ։ Կիրովականի հիմնարկ-ձեռնարկությունների մեծ մասում ստեղծվել են դպրոցին ու ընտանիքին աջակցող հանձնաժողովներ, խորհուրդներ, որոնք զբաղվում են իրենց կոլեկտիվի անդամների երեխաների կրթության, աշխատանքի, վարքագծի հարցերով, օգնում ծնողներին և նրանցից պահանջում բարեխղճորեն կատարել իրենց պարտքը երեխաների դաստիարակության գործում։

Ուսանելի աշխատանքի փորձ են կուտակել Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի, երկաթուղային հանգույցի, ջերմաէլեկտրակենտրոնի, քիմիական կոմբինատի և այլ ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները, որտեղ ստեղծվել և հաջողությամբ գործում են երեխաների կոմունիստական դաստիարակությամբ զբաղվող հանձնաժողովներ։ Հանձնաժողովի անդամները սերտ կապ են պահպանում դպրոցների, ծնողների հետ, լինում են ուսման մեջ ետ մնացող աշակերտների տներում, զրուցում երեխաների ծնողների հետ, օգնում նրանց։

Հիմնարկ-ձեռնարկությունների շեֆությունը դպրոցի նկատմամբ գնալով նոր ձևեր ու նոր բովանդակություն է ստանում, ուժեղանում է դպրոցի և հասարակայնության կապը, դպրոցական գործը համաժողովրդական բնույթ է ստանում։ Սա նոր հաջողությունների կարևոր գրավականն է։ Կուսակցական կազմակերպությունների խնդիրն է՝ գլխավորել այդ շարժումը։

Ժողովրդական կրթությունը, դպրոցը, երեխաներն արժանի են ամենայն ուշադրության բոլորի կողմից։ Ամեն մեկն իր լուման պետք է ներդնի այդ գործում։ Թերևս այն եզակի բնագավառն է դա, ուր ոչ ոք չի կարող ասել, թե արել է ավելին, քան պետք է։ Երեխաները մեր ապագան են։ Դպրոցականների դաստիարակության բարոյական հիմքը կարող են լինել միայն սերը և հավատը նրանց նկատմամբ։ Նրանք, ովքեր այժմ նստած են աշակերտական նստարանին՝ տետրերի ու գրքերի առաջ գլխահակ, վաղը կյանք կմտնեն, իրենց ուսերի վրա վերցնելով նրա պատվավոր բեռը, իրենց ձեռքերով կշարունակեն մեր գործը, իրենց մտքով կհարստացնեն մեր վեհ գաղափարները։

Մենք պետք է ամեն ինչ անենք, ջանանք, որ այդ ուսերը ամուր լինեն, ձեռքերը՝ հաստատուն, միտքը՝ պայծառ։

ԽԱՉԱՏՐՅԱՆ Լ. Ս.

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահի տեղակալ, պետպլանի նախագահ։

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՀԱՐՑԵՐԸ

ՍՄԿԿ XXI համագումարի դիրեկտիվների իրականացման շնորհիվ սովետական ժողովուրդը յոթնամյակի տարիներին մեծ հաջողությունների հասավ տնտեսական ու կուլտուրական շինարարության, գիտության զարգացման բնագավառներում։ 1959—1965 թթ. երկրում հիմնական արտադրական ֆոնդերն ավելացան 1,9 անգամ, այդ թվում արդյունաբերության մեջ 2 անգամ, իսկ արդյունաբերական արտադրանքի ծավալն աճեց 1,84 անգամ։ Շարք մտան 5,5 հազար արդյունաբերական խոշոր ձեռնարկություններ. աշխատանքի էլեկտրազինվածությունն արդյունաբերության մեջ աճեց 1,6 անգամ, սպառման և կուտակման համար օգտագործվող ազգային եկամուտը մեծացավ 53 տոկոսով, որի հիման վրա իրականացվեցին ժողովրդի կյանքի բարելավման մի շարք խոշոր միջոցառումներ։

Մեր հանրապետության ժողովրդական տնտեսությունը յոթնամյակի տարիներին զարգանում էր առաջանցիկ տեմպերով։ 1965 թվականի արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1958-ի համեմատությամբ, ավելացավ 2,15 անգամ, ընդ որում, միջին տարեկան տեմպը կազմեց 11,6 տոկոս։

Յոթնամյա պլանի իրագործումը Հայկական ՍՍՀ տնտեսության և կուլտուրայի հետագա վերելքի կարևոր փուլը դարձավ։ Հասարակական ամբողջական արդյունքն ավելացավ 76,3 տոկոսով. ազգային եկամտի աճի միջին տարեկան տեմպը կազմեց 8,9 տոկոս։ Արդյունաբերական արտադրանքի միջին տարեկան աճը կազմեց 116,2 մլն ռուբլի (1952—1958 թվականներին 63,2 մլն ռուբլու դիմաց), իսկ աճի մեկ տոկոսի բացարձակ մեծությունը 8,5 մլն ռուբլի, նախորդ յոթ տարվա 4,1 մլն-ի փոխարեն։ Հիմնական արտադրաֆոնդերը նյութական արտադրության ճյուղերում ավելացան 2,2, այդ թվում արդյունաբերության մեջ՝ 2,4 անգամ։

Այս ամենը հաստատուն հիմք հանդիսացան ընթացիկ հնգամյակում ժողովրդական տնտեսության զարգացման համար սահմանելու այնպիսի բնագիծ, որի նվաճումը մեծ քայլ կհանդիսանա կոմունիզմի նյութատեխնիկական

բաղայի ստեղծման ճանապարհին։ ՍՄԿԿ XXIII համագումարի՝ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1966—1970 թթ. հնգամյակի վերաբերյալ դիրեկտիվներում սահմանված են մեր երկրի էկոնոմիկայի ու կուլտուրայի վերելքի հիմնական ուղղությունները։

Հնգամյակի ընթացքում ՍՍՀՄ-ում արդյունաբերական արտադրությունն կավելանա 1,5, այդ թվում Հայկական ՍՍՀ-ում՝ 1,8 անգամ։ Ընդ որում, պետք է նկատի ունենալ, որ եթե 1961—1965 թվականների տարեկան միջին աճը կազմել է 9,9 տոկոս, իսկ մեկ տոկոսի բացարձակ մեծությունը 9,7 մլն ռուբլի, ապա ընթացիկ հնգամյակում արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին աճը կկազմի 12,8 տոկոս, իսկ յուրաքանչյուր տոկոսը՝ 16,2 մլն ռուբլի։

Անցած տարիներին ստեղծված հզոր սոցիալ-տնտեսական պոտենցիալը հնարավորություն է ընձեռում ավելի շատ միջոցներ հատկացնել ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը, որի համար անհրաժեշտ է ապահովել ազգային եկամտի աճը։ Ազգային եկամուտը, ըստ հաշվարկումների, հնգամյակում կավելանա 54 տոկոսով, ընդ որում տարեկան միջին բացարձակ աճը 64 տոկոսով ավելի կլինի, քան նախորդ հինգ տարում։

Ընթացիկ հնգամյակի առաջին երկու տարվա արդյունքները վկայում են ժողովրդական տնտեսության զարգացման վերաբերյալ կուսակցության ու կառավարության առաջադրանքների հաջող կատարումը։ 1966 թվականին, նոր հնգամյակի առաջին տարում, ՀՍՍՀ արդյունաբերական արտադրության պլանը գերակատարվեց 2,5 տոկոսով, իսկ աճը, 1965 թվականի համեմատությամբ, կազմեց 13,1 տոկոս։ 1967 թվականի պլանը գերակատարվեց 3,6 տոկոսով։ Անցած երկու տարվա արդյունաբերական արտադրանքի աճը կազմեց այնքան, որը գրեթե հավասար է արդյունաբերության 1953 թվականի ամբողջ արտադրանքին։ Արդյունաբերական արտադրանքի աճը, հնգամյա պլանի հաշվարկումներով, առաջին երկու տարում պետք է կազմեր 23,3 տոկոս, մինչդեռ այն հասավ 28,3-ի. տարեկան միջին աճը 11,1-ից հասավ 13,3 տոկոսի։

Միայն երկու տարում կենտրոնացված աղբյուրներից իրացվեց 774 մլն ռուբլի կապիտալ ներդրում, որը մոտ 140 մլն-ով կամ 22 տոկոսով ավելի է, քան յոթնամյակի վերջին երկու տարում (1964—1965 թթ)։ Հիմնական արտադրաֆոնդերի գործարկումը կազմեց համապատասխանաբար 687 և 535 մլն ռուբլի կամ 28 տոկոսով ավելի։

Նոր կարողություններ գործարկվեցին կառուցվող և վերակառուցվող ձեռնարկություններում։ Հարկ է նշել, ջերմաէլեկտրակայաններում 325 հազար կիլովատ կարողությամբ տուրբոգեներատորների, էլեկտրաենթակայաններում՝ 905 հազ. կվտ տրանսֆորմատորային կարողությունների և 35 ու ավելի կիլովատ լարվածությամբ 373 կմ հաղորդման գծերի գործարկումը, ինչպես և Երևանի քիմիական կոմբինատի պիրոլիզի արտադրամասի կարողությունների յուրացումը, որ հնարավորություն կընձեռի ավելի կրճատելու բնական գազից ացետիլեն ստանալու ծախսերը և կդադարեցվի այդ նպատակով արտադրվող կալցիումի կարբիդի էներգատար արտադրությունը։ Ավարտվեց Կիրովականի քիմկոմբինատում բնական գազից ամիակի ստացման արտադրամասի շինարարությունը, գործարկվեցին Ախթալայի հանքահարստացման ֆաբրիկան, Երևանի քիմիական ռեակտիվների, ավտոմոբիլի գործարանները, Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարանի տնային սառնարանների արտադրամա-



սը, Լենինականի մանվածքային ֆաբրիկայի սանրամանվածքի կարողությունները։ Հանրապետության մեքենաշինական, քիմիական, գունավոր մետալուրգիայի, թեթև, սննդի և մսեղենի-կաթնեղենի արդյունաբերության ձեռնարկություններում շահագործման հանձնվեցին մի շարք նոր արտադրամասեր։ Այդ կարողություններն այժմ յուրացվում են, և ավելանում է արտադրանքի թողարկումը։ Խոշոր նվաճում է նաև էլեկտրոնային օղակային արագացուցչի գործարկումը։

Հնգամյակի անցած երկու տարում որոշակի հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսության բնագավառում։ Հացահատիկի արտադրությունն ավելացել է 44 հազար տոննայով, բանջարեղենինը՝ 33, մսինը՝ 3,4, կաթինը՝ 35 հազար տոննայով, ձվինը՝ 14 մլն հատով։

Գյուղատնտեսական մթերքների պետական մթերումները կազմել են.

| | 1965 թ. | 1967 թ. |
|---|---|---|
| Հացահատիկ (հազ. տոննա) . . . . | 21,9 | 37,3 |
| Բանջարեղեն (հազ. տոննա) . . . . | 108,1 | 144,9 |
| Կարտոֆիլ (հազ. տոննա) . . . . | 13,9 | 19,4 |
| Անասուն և թռչուն (հազ. տոննա) . . | 37,9 | 44,1 |
| Կաթ (հազ. տոննա) . . . . . | 155.0 | 166,8 |
| Ձու (մլն. հատ) . . . . . . . | 55,5 | 63,4 |
| Բուրդ (հազ. տոննա) . . . . . | 3,6 | 4,0 |
| Ծխախոտ (հազ. տոննա) . . . . . | 14,0 | 14,5 |
| Շաքարի ճակնդեղ (հազ. տոննա) . . | 120.6 | 128,0 |
| Խաղողի (հազ. տոննա) . . . . . | 9,5 | 17,7 |

Ջրովի հողատարածությունն ընդարձակվել են 12560, իսկ ջրարբիացված արոտավայրերը՝ 49170 հեկտարով. գործարկվել են 20 պոմպակայան, ինչպես՝ Նոյեմբերյանի, Գետափ-Աղավնաձորի, Հոկտեմբերյանի № 2 և Վահագնիի կայանները։ Անասնաշենքեր են կառուցվել 14,5 հազար խոշոր, 55,6 հազար մանր եղջերավոր անասունների ու 1,6 հազար խոզերի համար։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 43 հազարով, այդ թվում կովերինը՝ 17,4 հազարով։

Գյուղատնտեսությունը հարստացել է նոր տեխնիկայով. երկու տարում ստացվել է 2950 տրակտոր, 665 կոմբայն, 1875 բեռնատար ավտոմեքենա և այլն։ Դա կոլտնտեսություններին ու սովխոզներին հնարավորություն է տվել զգալի չափով բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը և իջեցնելու գյուղատնտեսական մի քանի մթերքների ինքնարժեքը։

Հնգամյակի անցած երկու տարիներին կենտրոնացված միջոցների հաշվին կառուցվել է 807 հազար քմ բնակելի տարածություն, դպրոցական շենքեր՝ 60034 աշակերտական (1964—1965 թվականների 35392-ի դիմաց), մանկական նախադպրոցական հաստատություններ՝ 7995 տեղով, հիվանդանոցներ 1343 մահճակալով, կինոթատրոններ՝ 5350 տեղով և այլն։

Սակայն, պետք է նշել, որ շինարարական կազմակերպությունները լրիվ չօգտագործեցին հատկացված միջոցները և չապահովեցին բնակելի տարածության, նախադպրոցական հաստատությունների ու հիվանդանոցների պլանով նախատեսված կառուցումը։ Լուրջ թերություններ եղան նաև արտադրական շինարարության բնագավառում, որի հետևանքով մի շարք կարողություններ չգործածվեցին։

Ապրանքաշրջանառությունը երկու տարում աճեց 23,8 տոկոսով. 1965 թվականի համեմատությամբ, 1967 թ. բնակչությանն ավելի վաճառվեց՝

| | |
|---|---|
| Միս և մսամթերք . . . . . | 12 հազ. տոննա |
| Կաթ և կաթնամթերք . . . . | 195 » |
| Մակարոն . . . . . . . . | 2,1 » |
| Ձուկ . . . . . . . . | 3,5 » |
| Ձու . . . . . . . . | 11 մլն. հատ |
| Պահածոներ . . . . . . . | 7 մլն. պայմանական տուփ |
| Կոշիկ . . . . . . . . | 8,9 մլն. ռուբլու |
| Սառնարաններ . . . . . . | 39,9 հազ. հատ |
| Հեռուստացույցներ . . . . . | 16,3 » » |
| Կարի արտադրանք . . . . . | 6,4 մլն. ռուբլու |

Երիտասարդության կրթության նկատմամբ կուսակցության ցուցաբերած հոգատարության շնորհիվ զգալի չափով աճեց սովորողների թիվը: Բարձրագույն ուսումնական հաստատությունները 1967 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, ավելի ընդունեցին 1829, միջնակարգ մասնագիտական հաստատությունները՝ 3266 մարդ: Այդ ժամանակամիջոցում հանրակրթական դպրոցներում սովորողների թիվը 498 հազարից հասավ մոտ 560 հազարի:

***

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետն անցյալ տարվա հոկտեմբերին հաստատեց ժողովրդական տնտեսության զարգացման 1968 թվականի պլանը և հնգամյակի հիմնական ուղղությունները ու առաջադրանքները, որոնք համապատասխանում են ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում միութենական հանրապետությունների համար սահմանված կարևորագույն ցուցանիշներին և ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1967 թ.) պլենումի՝ ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման վերաբերյալ որոշումներին:

Տեխնիկական նվաճումների, պլանավորման և տնտեսական խթանման նոր մեթոդների ներդրումն ու կիրառումը կապահովեն հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը, որը երկրի տնտեսական զարգացման առաջնակարգ խնդիրն է:

Հնգամյա պլանի կարևորագույն խնդիրներից մեկն էլ համամասնությունների փոփոխումն է արտադրամիջոցների («Ա» խումբ) արտադրության և սպառման միջոցների արտադրության («Բ» խումբ) աճի տեմպերի միջև: Անցած երկու տարում արտադրության միջոցների արտադրության տարեկան միջին աճը կազմել է 13,4, իսկ սպառման առարկաներինը՝ 13 տոկոս: Այսպիսով, ստեղծվեց «Ա» և «Բ» խմբերի մերձեցում: 1968 թվականի պլանով «Ա» խմբի աճը նախատեսված է 9,8, իսկ «Բ»-ինը՝ 13,3 տոկոս: Այս արմատական տեղաշարժն ավելի շոշափելի է դառնում նախորդ հնգամյակի ցուցանիշների հետ համեմատելիս, երբ արտադրամիջոցների տարեկան միջին աճը կազմում էր 11,2, իսկ սպառման միջոցներինը՝ ընդամենը 6 տոկոս:

Ընթացիկ հնգամյակում «Ա» խմբի տարեկան միջին աճը նախատեսված է 12,6, իսկ «Բ»-ինը՝ 13,5 տոկոս: Այսպիսով, համամասնությունների մերձեցմամբ սպառման ապրանքների արտադրության տվյալ ժամանակաշրջանի առաջանցիկ աճի միջոցով ժողովրդի բարեկեցությունը կբարձրանա պլանով ընդունված տեմպերով ու համամասնությամբ:

Պետք է նշել, որ վերջին տարիներին ծանր արդյունաբերության ձեռնար-



կությունները խիստ կրճատել էին, իսկ ոմանք՝ նույնիսկ լրիվ դադարեցրել սպառման առարկաների թողարկումը: Այժմ ընդհակառակը, ծանր արդյունաբերության ճյուղերին առաջադրանքներ են տրվում թողարկելու լայն ասորտիմենտի սպառման այնպիսի ապրանքներ, որոնց արտադրության համար պահանջվում է բարձր տեխնիկական հագեցվածություն և արտադրության կուլտուրա (դրանցից են՝ հեռուստացույցները, ռադիոընդունիչները, մագնիտոֆոնները, սառնարանները, լվացքի մեքենաները, կենցաղային բարդ էլեկտրասարքերը, աման լվացող մեքենաները և տնային գործածության այլ ապրանքներ), որոնք հնարավոր չէ մասսայաբար ու շահավետ արտադրել տեխնիկապես չկատարելագործված ձեռնարկություններում: Նոր հնգամյակում նախատեսված է արտադրել այդպիսի ապրանքներ. դրանց ամենախոշոր արտադրողը կլինի Հայէլեկտրագործարանը, որն անցյալ տարի թողարկեց 35 հազար տնային սառնարան, այս տարի կթողարկի 80, իսկ 1970 թվականին՝ 200 հազար: Սառնարանների արտադրամասի կարողությունը, առանց մեծ ծախսումների, կարող է հասցվել տարեկան մինչև 300 հազար հատի: Սպառման ապրանքներ կթողարկեն նաև մյուս մեքենաշինական գործարանները, քիմիական արդյունաբերության, գունավոր մետալուրգիայի, շինանյութերի արտադրության ձեռնարկությունները:

Սակայն նյութական արտադրության բոլոր բնագավառների անհրաժեշտ աճը և երկրի պաշտպանունակության էլ ավելի ամրապնդումն ապահովելու նպատակով առաջիկայում պետք է զգալի չափով բարձրացնել արտադրամիջոցների արտադրության աճի տեմպերը: Արտադրամիջոցներ արտադրող ճյուղերում բարձր տեմպեր ապահովելու համար անհրաժեշտ է զգալի չափով բարձրացնել արտադրության արդյունավետությունը՝ տեխնիկական վերազինման արագացմամբ, նոր, առաջադիմական տեխնոլոգիայի արմատավորմամբ, աշխատանքի արտադրողականության ըստ ամենայնի բարձրացմամբ և արտադրանքի որակի բարելավմամբ: Այս ամենն իրենց արտացոլումն են գտել ժողովրդական տնտեսության զարգացման 1968—1970 թվականների պլաններում:

Ֆոնդահատույցի բարձրացման գործում կարևոր դեր է խաղում տեխնիկական առաջադիմության ներդրումն արտադրության մեջ: Հնգամյակի առաջին երկու տարում հանրապետության ձեռնարկություններում ներդրվել է նոր տեխնիկայի արմատավորման ավելի քան 500 միջոցառում, այդ թվում՝ 132-ը աշխատատար պրոցեսների մեքենայացման, 74-ը՝ ավտոմատացման, 211-ը՝ նոր տեխնոլոգիայի արմատավորման և այլն: Հնգամյակի հաջորդ տարիներին կներդրվի շուրջ 600 միջոցառում:

Այս հնգամյակի կարևորագույն առանձնահատկությունը պլանավորման և տնտեսական խթանման նոր մեթոդներին անցնելն է: Երկու տարում Հայաստանում աշխատանքի նոր մեթոդներին են անցել 97 ձեռնարկության կամ հանրապետության ձեռնարկությունների ընդհանուր թվի 15,5 տոկոսը, որոնք տալիս են հանրապետության արտադրանքի 36,6 տոկոսը: 1967 թվականին այդ ձեռնարկություններն արտադրանքի իրացման պլանը կատարեցին 103,1 տոկոսով:

1968 թվականին հիմնականում կավարտվի տնտեսական ռեֆորմի իրականացումը: Դրան պետք է նախորդի ձեռնարկությունների տնտեսական գործունեության բոլոր հարցերի տնտեսագիտական խոր վերլուծությունը, առանց որի դժվար է խուսափել այնպիսի սխալներից, որոնք կարող են անմիջականո-

րեն անդրադառնալ ձեռնարկությունների գործունեության վրա, խոչընդոտել
կոլեկտիվի նյութական խրախուսմանը:
Ի տարբերություն նախորդ տարիներին, երբ ձեռնարկության աշխատան-
քի ամենագլխավոր ցուցանիշը համախառն արտադրանքն էր, 1968 թվակա-
նից սկսած, տարեկան պլաններում առաջադրանքն արդեն տրվում է ըստ
իրացվող արտադրանքի: Սա նշանակում է, որ թողարկված և պահեստ տրված,
բայց սպառողներին չհանձնած ու նրանց կողմից չվճարված արտադրանքը
չի կարող մտցվել պլանի կատարման մեջ: Այդ հանգամանքը պահանջում է
ճկուն տնտեսական-կազմակերպական աշխատանք:
1968 թվականին տնտեսավարման նոր սիստեմին կփոխադրվեն բոլոր
արդյունաբերական ձեռնարկությունները, տրանսպորտը և ժողովրդական տըն-
տեսության մյուս ճյուղերը: Կսկսվի պլանավորման և տնտեսական խթանման
նոր մեթոդների արմատավորումը շինարարության և գյուղատնտեսական ար-
տադրության մեջ:

***

Ընթացիկ հնգամյակում աննախընթաց թափով կզարգանան արդյունա-
բերության բոլոր ճյուղերը՝ քիմիական արդյունաբերությունը, գունավոր մե-
տալուրգիան, մեքենաշինությունը, շինանյութերի, ինչպես նաև թեթև ու սննդի
արդյունաբերությունը: 1968 թվականի պլանով նախատեսվում է արդյունա-
բերական արտադրանքի թողարկումը, 1967 թվականի փաստացի կատարո-
ղականի համեմատությամբ, ավելացնել մոտ 11 տոկոսով: Մեր ձեռնարկու-
թյունները կտան արտադրանքի այնպիսի նոր տեսակներ, ինչպիսիք են՝ արագ
գործող «Նաիրի—2» էլեկտրոնային հաշվիչ մեքենաները, մինչև 100 և ավելի
կիլովատ կարողության նոր սերիայի գեներատորները, շարժական տրանս-
ֆորմատորները, նոր տեսակի պոմպերը, բարձր ճշգրտության բազմապիսի
նոր հաստոցները (հորիզոնական հղկման, էլեկտրակայծային և այլն), կար-
բամիդ, բարձր տեսակի էլեկտրալամպերը, այդ թվում նաև «ֆիատ» ավտոմե-
քենայի համար բարձրորակ տրիկոտաժ գործվածքեղենը, կահույքը և այլն:
Ժողովրդական տնտեսության ինչպես ընթացիկ, այնպես էլ հեռանկարա-
յին զարգացումն ապահովելու համար անհրաժեշտ է ստեղծել համապատաս-
խան էներգետիկ կարողություններ: Այս տարի էլեկտրաէներգիայի պահանջը
կավելանա 9 տոկոսով: Ընթացիկ տարում կշարունակվի Տաթևզէսի (157 հազ.
կվտ կարողությամբ) և Հրազդանի պետական շրջանային էլեկտրակայանի
(600 հազ. կվտ կարողությամբ) շինարարությունը, Հրազդանի ջերմաէլեկտրա-
կայանի կարողությունը 200 հազար կիլովատով ավելացնելու աշխատանքնե-
րը: Կառուցվում է Շամբի հիդրոկայանը (171 հազ. կվտ կարողությամբ) և
շարունակվում է Արփա գետի ջրերի մի մասը Սևանա լիճ ուղղելու ջրատեխ-
նիկական կառուցվածքների շինարարությունը՝ լճի մակարդակը մշտապես
բնականին մոտ պայմաններում պահպանելու համար: Կկառուցվեն 240 կմ
էլեկտրահաղորդման գծեր և 195 հազ. կվա հզորությամբ տրանսֆորմատո-
րային ենթակայաններ՝ 35 և ավելի լարվածությամբ: Կառուցվում է Ջանգե-
զուրի էլեկտրասնման երկրորդ գիծը (Երևանի Ջեկ—Շինուհայր):
1968 թ. զգալի չափով կզարգանա ժողտնտեսության առաջատար ճյու-
ղերից մեկը՝ քիմիական արդյունաբերությունը: Դրա արտադրանքի ծավալը,
1967 թ. համեմատությամբ, կաճի 12,8 տոկոսով, այդ թվում՝ կաուչուկի ար-



տադրությունը՝ 8,4, ավտոդողերինը՝ 12,4, սինթետիկ ձյութերինը՝ 13, մելամի-
նի թողարկումը՝ 50, կենցաղային քիմիայի ապրանքներինը՝ 16,6, հանքային
պարարտանյութերինը՝ 85,9, սինթետիկ ամիակինը՝ 95,7 տոկոսով: Ընդ որում,
ամիակը կարտադրվի բնական գազից՝ կոնվերսիայի մեթոդով, որը մի քանի
անգամ պակաս էներգատար է, քան գոյություն ունեցող մեթոդը: Կավելանա
հերբիցիդների արտադրությունը, որոնք հանքային պարարտանյութերի հետ
միասին գյուղատնտեսական արտադրության հետագա ինտենսիվացման բազա
կհանդիսանան: Խոշոր ներդրումներ կկատարվեն քացախաթթվի և այլ օրգա-
նական թթուների գործարանը կառուցելու համար:
Գունավոր մետալուրգիայի բնագավառում, վերջին տարիներին, նկատ-
վում էր աճի տեմպերի նվազում: Դա պայմանավորված էր կարևորագույն
ձեռնարկությունների վերակառուցմամբ, որը կշարունակվի նաև այս տարի:
Ուստի, արտադրանքի աճը նախատեսվում է ընդամենը 1,7 տոկոս, սև պղնձի
թողարկումը կավելանա 20, ալյումինի գլանվածքինը՝ 11,2 տոկոսով, ծծմբա-
թթվինը՝ 2,4 անգամ: Գունավոր մետալուրգիայի աշխատողների կարևորա-
գույն խնդիրն է՝ ավարտել Ալավերդու, Ղափանի և մյուս ձեռնարկությունների
վերակառուցումը, արագ յուրացնել նոր կարողություններն այն հաշվով, որ-
պեսզի հաջորդ տարիներին ապահովվի պղնձի, մոլիբդենային կոնցենտրատի,
ձևավոր ֆոլգայի և այլ արտադրանքի նշանակալից աճ:
Բարձր տեմպերով կզարգանա (ինչպես նախորդ տարիներին) մեքենա-
շինությունը: Արտադրանքի ծավալն ընթացիկ տարում կաճի մոտ 19 տոկո-
սով: Տեղի կունենան նաև կառուցվածքային լուրջ տեղաշարժեր: Առավել կզար-
գանան ռադիոտեխնիկական (33 տոկոսով), էլեկտրոնային առաջադեմ ճյուղե-
րը (70 տոկոսով), ավտոմոբիլային արդյունաբերությունը (38 տոկոսով).
Յուրացվում են ճանապարհային, շինարարական և կոմունալ մեքենաշի-
նության ձեռնարկությունների կարողությունները: Հաստոցաշինության ար-
տադրանքը կաճի 18,5 տոկոսով: Այդ ճյուղը զարգանում է ճշգրիտ և գերճշգր-
րիտ հաստոցների արտադրության ուղղությամբ: Էլեկտրատեխնիկական ար-
դյունաբերության արտադրանքը կավելանա 14,4 տոկոսով, այդ թվում՝ ուժա-
յին տրանսֆորմատորներինը՝ 29,2 և մինչև 100 կվտ էլեկտրաշարժիչներինը՝
12,7 տոկոսով: Ավելի շատ կստանանք լուսատեխնիկական նոր իրեր, ճշգրիտ
սարքեր, կարգավորման և ավտոմատացման միջոցներ: Կընդլայնվեն միջճյու-
ղային և ներճյուղային մասնագիտացման ու կոոպերացման շրջանակները,
նախապատրաստուկների արտադրությունը և այլն:
Ժողովրդի կենսամակարդակի բարձրացման գործում կարևորագույն տեղ
է գրավում սպառման ապրանքների արտադրության ավելացումը: Թեթև ար-
դյունաբերությունն իր արտադրանքը հնգամյակում կավելացնի 1,7 անգամ.
այսինքն՝ այդ ճյուղի տարեկան միջին աճի տեմպերը կկազմեն 11,2, ընդ
որում, այս տարի, ավելի քան 10 տոկոս: Այս տեմպերը բավականաչափ լար-
ված են, եթե նկատի ունենանք, որ նախորդ հինգ տարիներում տարեկան մի-
ջին աճը կազմել է ընդամենը 4,1 տոկոս:
Տրիկոտաժեղենի, կարի արտադրանքի, գործվածքեղենի, կոշկեղենի, գոր-
գերի, գալանտերեային և այլ ապրանքների թողարկման զգալի աճը պետք է
ուղեկցվի որակի բարձրացմամբ ու ասորտիմենտի բազմազանությամբ: Ան-
հրաժեշտ է յուրացնել չճմրթվող գործվածքների թողարկումը, սինթետիկ թե-
լերի, կաշվին փոխարինող և այլ նոր նյութերի լայն կիրառումը: Բրդի գործ-

վածքի թողարկումը կավելանա 12,3 տոկոսով, մետաքսինը՝ 10, կարի արտադրանքը՝ 17, գորգերինը՝ 24 տոկոսով։

Հնգամյակում նախատեսված է սննդի արդյունաբերության արտադրանքն ավելացնել 1,6 անգամ, որը երկու անգամ կգերազանցի նախորդ հինգ տարվա տարեկան միջին աճի տեմպերը։ Պետք է նշել, որ սննդի արդյունաբերության զարգացումը նշանակալի չափով նպաստում է գյուղատնտեսական հումքի քանակն ու որակը։ Վերջին տարիներին, կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով, արդյունաբերությունը պլանով նախատեսվածից պակաս ստացավ խաղող, պտուղներ, իսկ բանջարեղեն ստացվեց ոչ անհրաժեշտ ասորտիմենտով և խախտվեց պահածոների արդյունաբերության արտադրանքի թողարկման ասորտիմենտը։ Այս տարի սննդարդյունաբերության արտադրանքը կավելանա 8 տոկոսով։ Նշանակալի չափով կաճի կոնդիտերային ապրանքների, գինենյութերի, պահածոների, հանքային ջրերի, ինչպես նաև մսի, երշիկի, կաթնամթերքների արտադրությունը։

Կահույքի, դաշնամուրների, ճենապակե-հախճապակե ամանեղենի թողարկումն ավելացնելու հաշվին նախատեսվում է ընթացիկ տարում կուլտուր-կենցաղային ապրանքների արտադրությունն ավելացնել 48 տոկոսով։

Տեղական արդյունաբերության արտադրանքի թողարկումը կավելանա մոտ 40 տոկոսով։ Այդ բացատրվում է նրանով, որ 1965 թվականին վերստեղծվեց արդյունաբերության այս բնագավառը, որի արագ զարգացման համար կազմակերպվում և կառուցվում են նոր ձեռնարկություններ, ընդլայնվում գործողները։

Ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում գլխավոր խնդիրներից մեկը պարենային արտադրանքի ավելացումն է։ Գյուղատնտեսության հետագա զարգացման խնդիրները սահմանվել են ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) և մայիսյան (1967 թ.) պլենումների որոշումներում։ Այդ որոշումների հիման վրա Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետը ընդունել են գյուղատնտեսական արտադրության աճի, ջրաշինարարական աշխատանքների վերաբերյալ համապատասխան որոշումներ։

Նախատեսված է զգալի չափով ավելացնել խաղողի, պտուղների, բանջարեղենի և խորդենու արտադրությունը։ ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) պլենումի և ՀԿԿ Կենտկոմի ու հանրապետության Մինիստրների սովետի որոշումներին համապատասխան սահմանվել են նաև մթերումների չափերը։ Որոշվել է մոտակա տարիներին ավելացնել կարտոֆիլի արտադրությունը և մթերումներն այն հաշվով, որպեսզի լրիվ ապահովվի բնակչության պահանջմունքը և ներմուծումը Միության հեռավոր շրջաններից դադարեցվի։

Ընթացիկ տարվա պլանով, կարտոֆիլի մթերումները կավելանան 40, խաղողինը՝ 67, պտուղներինը՝ 25 տոկոսով։ Նախատեսված է զգալի չափով ավելացնել մթերվող թարմ մրգերի ու բանջարեղենի վաճառքը։ 1968 թվականին հանրապետության գյուղատնտեսությունը կստանա 1500 տրակտոր, ավելի քան 800 ավտոմեքենա, 280 հացահատիկային կոմբայն, 190 հազար տոննա պարարտանյութ, հողափոր և այլ մեքենաներ։ Սակայն պետք է նշել, որ տեխնիկայի պահպանման և օգտագործման, պարարտանյութերի ու թունաքիմիկատների կիրառումը կոլտնտեսություններում և սովխոզներում անհրաժեշտ բարձրության վրա չէ։

Մեծ միջոցառումներ են նախատեսված գյուղատնտեսական շինարարու-



թյան և մելիորացիայի ուղղությամբ, որոնք արդեն կենսագործվում են։ Տարվա ընթացքում ջրովի հողատարածությունները կավելանան 9,1, իսկ ջրարբի արոտավայրերը՝ 25 հազար հեկտարով։ Ջրատնտեսական աշխատանքներում կատարվելիք կապիտալ ներդրումները 12 տոկոսով կգերազանցեն անցյալ տարվա ներդրումներին։ Իրագործվում է ջրատնտեսական այնպիսի կարևոր օբյեկտների շինարարությունը, ինչպիսիք են՝ Արզնի-Շամիրամի, Քասախի, Որոտանի ոռոգիչ սիստեմները, Ախուրյանի աջափնյա ջրանցքը, Կառնուտի ջրամբարը և Թալինի ոռոգիչ սիստեմի երկրորդ հերթը։ Շարք կմտնեն Մխչյանի պոմպակայանը, կզարգանա գյուղի էլեկտրիֆիկացումը, որի համար կկառուցվեն 150 կիլոմետր էլեկտրահաղորդման գծեր։ Գյուղատնտեսության մեջ միայն պետական կենտրոնացված կապիտալ ներդրումները կկազմեն ավելի քան 72,9 մլն ռուբլի կամ 10 տոկոսով ավելի, քան նախորդ տարում։

Բեռնաշրջանառությունն ավտոմոբիլային տրանսպորտում կավելանա 13, իսկ ուղևորների փոխադրումը՝ 11 տոկոսով։ Կզարգանան տրանսպորտը և կապը։ Արդեն էլեկտրիֆիկացվել է Երևան-Լենինական երկաթգծի հատվածը, որի շնորհիվ էլեկտրաքարշային կապ հաստատվեց ողջ Միության հետ։ Կառուցվում են Աղստաֆա-Իջևան, Սևան-Շորժա, ինչպես նաև Պեմզաշեն-Մարալիկ երկաթուղագծերը։ Հեռախոսային կայանների կարողությունները քաղաքներում կմեծանան 2 անգամ, իսկ գյուղական վայրերում՝ 73 տոկոսով։ Անց են կացվում Երևան-Զանգեզուր և Երևան-Լենինական ռադիոռելեային գծերը, որոնք բնակչությանը հնարավորություն կտան դիտելու ո՛չ միայն Երևանի, այլև ՍՍՀՄ բազմաթիվ քաղաքների ստուդիաների, ինչպես նաև միջազգային հեռուստատեսության ծրագրերով տրվող հաղորդումները։

Կուսակցության և կառավարության կողմից նախատեսված նյութական արտադրության և ժողովրդի բարեկեցության վերելքի ամբողջ վիթխարի ծրագրի, կուլտուրայի, գիտության հետագա ծաղկման և բոլոր սոցիալ-տնտեսական միջոցառումների իրականացման համար հույժ կարևոր և վճռական դեր ունի կապիտալ շինարարությունը։ Ցավոք, այս բնագավառում կան լուրջ թերություններ, որոնց հետևանքով կապիտալ ներդրումներն ամեն տարի իրացվում են մոտավորապես 94—95 տոկոսով։ Կենտրոնացված կապիտալ ներդրումների ծավալն այս տարի հավասար է 441,2 միլիոն ռուբլու (10,5 տոկոսով ավելի, անցյալ տարվա համեմատ)։

Կընդլայնվեն նաև բազմաթիվ գործող ձեռնարկություններ և շարք կմտնեն նորերը, այդ թվում վիտամինների և թղթի-ստվարաթղթի գործարանները, ինչպես նաև տարայի-պիտակների կոմբինատը Երևանում, Լենինականի սառնարանը, ստվարաթղթի արկղների ֆաբրիկան Մասիսում և այլն։

Կապիտալ ներդրումներ են կատարվում նաև ոչ պետական կենտրոնացված աղբյուրներից, որոնց տեսակարար կշիռը աստիճանաբար կաճի պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելու համեմատ, քանի որ ձեռնարկությունները հնարավորություն կունենան իրենց ֆոնդերի հաշվին ավելի շատ միջոցներ ներդնել արտադրության ընդլայնման, բնակելի շենքերի և կուլտուր-կենցաղային օբյեկտների կառուցման համար. լայնորեն կօգտագործվի բանկային վարկը։ Կապիտալ շինարարության աճող պլանները կատարելու համար անհրաժեշտ է ստեղծել համապատասխան շինարարական ինդուստրիա և ամրապնդել նախագծային կազմակերպությունները. վերջիններս երբեմն չեն կարողանում շինարարությունը ժամանակին ապահովել նա-

*խագծային փաստաթղթերով, որը պատճառ է դառնում կապիտալ ներդրումների իրացման պլանների թերակատարման։*

*1968 թվականի պլաններում լուրջ միջոցառումներ են նախատեսված ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ. բնակչության մեկ շնչին ընկնող ռեալ եկամուտները կաճեն 8 տոկոսով։ Դրանք, աշխատավարձից բացի, դրամական այն միջոցներն են, որ պետությունը հատկացնում է աշխատավորության առողջապահական և կուլտուրական կարիքներն անվճար հոգալու համար, ինչպես նաև բնամթերքը։ Սակայն վերջին տարիներս սպառման ապրանքների արտադրության աճը որոշ չափով ետ էր մնում բնակչության դրամական եկամուտների աճից, և հարկ էր լինում տարվա ընթացքում լրացուցիչ հնարավորություններ որոնել ապրանքային ֆոնդերը մեծացնելու համար։ Պակաս են բանջարեղենի, մրգի, խաղողի և այլ մթերքների պահպանման պահեստարանները, որը թույլ չի տալիս որոշ սեզոնային մթերքների վաճառք կատարել ամբողջ տարվա ընթացքում։ Դեռևս անբավարար է գործում հասարակական սննդի ցանցը։ Ընթացիկ հնգամյակում լուրջ միջոցառումներ են նախատեսված պտուղ-բանջարեղենի պահեստարանների, սառնարանային տարողությունների ավելացման, հասարակական սննդի ցանցի ընդլայնման ուղղությամբ։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի և Մինիստրների սովետի որոշմամբ սննդի ցանցն ընդլայնվելու է 92000 նստատեղով, գործարկվելու է պտուղ-բանջարեղենի պահեստների 68 և սառնարանային 17,6 հազար տոննա նոր տարողություններ։*

*Լուրջ ուշադրություն է նվիրվում բնակչության կենցաղային սպասարկման զարգացմանը, որի ծավալն ընթացիկ տարում կաճի 23,4 տոկոսով։*

*Նշանակալից չափով կավելանա բնակարանային շինարարությունը։ Այսպես, անցյալ տարվա 650 հազար քառակուսի մետրի փոխարեն, այս տարի կառուցվելիք բնակարանների տարածությունը կհասնի 781 հազար քառակուսի մետրի։ Մեծ թվով բնակարաններ կկառուցվեն ձեռնարկությունների ֆոնդերի հաշվին (անցյալ տարվա 29 հազարի փոխարեն կկառուցվի 107 հազար քառակուսի մետր)։ Մեծ մասշտաբներով ծավալվում է նաև կոոպերատիվ բնակարանային շինարարությունը։ Մեծացել են դպրոցների և մանկական հիմնարկների կառուցման հատկացումները։ Մանկական հիմնարկներում կընդգրկվեն 13,6 տոկոսով ավելի նախադպրոցական հասակի երեխաներ։ Հանրակրթական դպրոցներում կսովորեն 590 հազար երեխա (անցյալ տարվանից 6 տոկոսով ավելի)։ Կընդլայնվեն նաև գործող պրոֆտեխնիկական ուսումնարանները, կբացվեն նորերը։*

*Կզարգանա մամուլն ու տպագրական գործը։ Գրքերի թողարկումը կավելանա 15,5, թերթերինը՝ 20, ամսագրերինը՝ 18,8 տոկոսով։ Այս կապակցությամբ պոլիգրաֆիական բազայի ընդլայնումն ու կատարելագործումը հրատապ խնդիր է։*

*Ընդլայնվում է նաև ակումբների, կինոթատրոնների, գրադարանների, ինչպես նաև հիվանդանոցների ու պոլիկլինիկաների ցանցը։*

*Ընթացիկ հնգամյակի, այդ թվում 1968 թվականի խնդիրների հաջող լուծումն ամուր հիմք կհանդիսանա հետագա հաջողությունների համար։*

ՄԱՀՏԵՍՅԱՆ Ց. Ծ.

# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔԻ ԱՃԸ ԵՎ ԱԶԳԱՅԻՆ ԵԿԱՄՈՒՏԸ

*Հասարակական ամբողջական արդյունքն ու ազգային եկամուտը ժողովրդական տնտեսության հանրագումարային ցուցանիշներից են, որոնք բնութագրում են հասարակական վերարտադրության զարգացման տեմպերը և աշխատավորության նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացումը։ Հասարակական ամբողջական արդյունքը՝ որոշակի ժամանակամիջոցում, սովորաբար մեկ տարվա ընթացքում, արտադրված նյութական բարիքների ամբողջ մասսան է՝ դրամական կամ բնեղեն արտահայտությամբ։ Որպեսզի հասարակությունը պահպանի իր գոյությունը, միշտ պետք է արտադրի, իսկ արտադրության անընդհատությունն ապահովելու համար անհրաժեշտ է հասարակական արդյունքի մի մասն օգտագործել արտադրության պրոցեսում ծախսված արտադրամիջոցների վերականգնման համար։ Իսկ հասարակական արդյունքի մյուս մասը, որը մնում է արտադրության պրոցեսում սպառված արտադրամիջոցների արժեքի փոխհատուցումից հետո, իրենից ներկայացնում է ազգային եկամուտը։ Այսպիսով, ազգային եկամուտը, դա հասարակական արդյունքի այն մասն է, որի մեջ մարմնացած է արտադրության պրոցեսում ստեղծված նոր արժեքը։*

*Սոցիալիզմի պայմաններում ազգային եկամտի արտադրությունն ու բաշխումը կատարվում է հասարակության շահերին համապատասխան։ Մեր երկրում այն ամբողջապես համապատասխանում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, ընդլայնված վերարտադրության բարձր տեմպերի ապահովման և աշխատավորության նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման խնդիրներին։*

*ՍՍՀՄ աշխատավորներն իրենց նյութական ու կուլտուրական պահանջմունքների բավարարման համար ստանում են ազգային եկամտի 3/4 մասը, իսկ մնացածը հատկացվում է սոցիալիստական կուտակումներին՝ ընդլայնված վերարտադրության ռեզերվներին և հասարակական այլ կարիքներին։*

*Մինչև վերջերս հասարակական արդյունքն ու ազգային եկամուտը հաշվարկվում և պլանավորվում էր միայն Միության մասշտաբով, իսկ այժմ նաև միութենական հանրապետությունների և առանձին տնտեսական շրջանների կողմից։ Դա հնարավորություն է ընձեռում որոշելու յուրաքանչյուրի ազգային եկամտի աճի տեմպերը և նրա տեսակարար կշիռը ամբողջ երկրի ազգային եկամտի արտադրության մեջ, տնտեսական զարգացման տեսակետից համեմատություն կատարելու և որոշելու յուրաքանչյուրի արտադրության ճյուղային կառուցվածքը։*

*Միութենական հանրապետությունների և տնտեսական շրջանների հասա-*

րական արդյունքն ու ազգային եկամուտը ներկայումս որոշվում է արտադրական մեթոդով։ Այդ մեթոդով հաշվարկված ազգային եկամուտը նյութական արտադրության ճյուղերի զուտ արտադրանքի գումարն է, իսկ զուտ արտադրանքը՝ համախառն արտադրանքի և նյութական ծախսերի տարբերությունն է։

Ստորև բերված աղյուսակից երևում է, որ Հայկական ՍՍՀ հասարակական արդյունքը և ազգային եկամուտն աճում են բացառիկ արագ տեմպերով (համադրելի գներով, ներառյալ շրջանառության հարկը)։

| Տարիներ | Հասարակական արդյունք | | Ազգային եկամուտ | |
|---|---|---|---|---|
| | տոկոսներով, նախորդ տարվա համեմատությամբ | տոկոսներով 1958 թ. համեմատությամբ | տոկոսներով, նախորդ տարվա համեմատությամբ | տոկոսներով 1958 թ. համեմատությամբ |
| 1959 | 111,6 | 111,6 | 109.4 | 109,4 |
| 1961 | 107,5 | 141,7 | 108,9 | 133,1 |
| 1963 | 104,0 | 157,7 | 103,2 | 149,5 |
| 1965 | 112,6 | 188,0 | 112,4 | 181,5 |

Յոթնամյակում հանրապետության հասարակական ամբողջական արդյունքի տարեկան միջին աճը կազմեց 9,5, իսկ ազգային եկամտինը՝ 8,8 տոկոս։

ՀՍՍՀ ազգային եկամտի աճի տեմպերը նկատելիորեն գերազանցում են ՍՍՀՄ ազգային եկամտի աճի տեմպերին։ Այսպես, ՍՍՀՄ ազգային եկամուտը 1958—1965 թթ. աճեց 58, իսկ ՀՍՍՀ-ինը՝ 80,6 տոկոսով։ Նշված ժամանակամիջոցում ՍՍՀՄ ազգային եկամտի աճի տարեկան միջին տեմպերը կազմեցին 6,8, իսկ ՀՍՍՀ-ինը՝ 8,8 տոկոս։

Հայաստանի ազգային եկամտի աճի տեմպերը նկատելիորեն գերազանցում են նրա բնակչության աճի տեմպերին, որը նյութական բարեկեցության բարձրացման վառ արտահայտություններից մեկն է։ Այսպես, եթե 1958—1965 թթ. հանրապետության բնակչության աճը կազմեց 24,8 տոկոս, ապա ազգային եկամուտն աճեց 80,6 տոկոսով։ Ուսումնասիրվող ժամանակաշրջանում բնակչության մեկ շնչի հաշվով հանրապետության հասարակական արդյունքն աճել է 50,6, իսկ ազգային եկամուտը՝ 45,4 տոկոսով։ Ընդ որում, մեկ շնչին ընկնող հասարակական արդյունքի միջին տարեկան աճը կազմել է 6,1, իսկ ազգային եկամտինը՝ 5,5 տոկոս։

Հատկանշական է, որ հասարակական արդյունքն ու ազգային եկամուտն արագ տեմպերով են աճում հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, ընդ որում ավելի արագ արդյունաբերության, շինարարության մեջ և տրանսպորտում։

Ուսումնասիրվող ժամանակաշրջանում ազգային եկամտի աճի տարեկան միջին տեմպերն արդյունաբերության մեջ կազմել են՝ 10,3, շինարարությունում՝ 10,8, գյուղատնտեսությունում՝ 2,1, տրանսպորտում՝ 13,9, առևտրի և մթերումների մեջ՝ 7,9, նյութատեխնիկական մատակարարման ճյուղում՝ 23,4 և նյութական արտադրության այլ ճյուղերում՝ 8,8 տոկոս։

Հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի ծավալը պայմանավորվում է նյութական արտադրության ոլորտում գործադրվող կենդանի աշխատանքի և նրա արտադրողականության մակարդակով։ Աշխատան-



քի ավելացումը նյութական արտադրության ճյուղերում կատարվում է բանվոր ծառայողների թվի և նրանց աշխատաժամանակի ավելացման հաշվին։ Ակնհայտ է, որ որքան շատ մարդ զբաղվի նյութական արտադրության ոլորտում (մնացած բոլոր պայմանների հավասարության դեպքում), այնքան մեծ կլինի արտադրվող սպառարժեքների մասսան, հետևապես՝ հասարակական ամբողջական արդյունքն ու ազգային եկամուտը։

1958—1965 թվականներին Հայկական ՍՍՀ-ում աշխատողների թվի ավելացման հաշվին հասարակական արդյունքն աճել է 14,2, իսկ աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին՝ 85,8 տոկոսով։ Նույն հաշվով ազգային եկամտի աճը համապատասխանաբար կազմում է 15,5, 84,5 տոկոս։ Այսպիսով, հանրապետության հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի աճի 4/5-ից ավելին տեղի է ունեցել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։

Հայկական ՍՍՀ արդյունաբերության զուտ արտադրանքը 1965 թ., 1958 թ. համեմատությամբ, աճել է 99,1, իսկ արդյունաբերության մեջ զբաղվող աշխատողների թիվը՝ 50,1 տոկոսով։ Ուսումնասիրվող ժամանակաշրջանում հանրապետության արդյունաբերության զուտ արտադրանքը հիմնականում աճել է գործադրվող կենդանի աշխատանքի ավելացմամբ։ Այսպես, եթե զուտ արտադրանքի աճը ընդունենք 100, ապա պարզ կդառնա, որ դրա 60,7 տոկոսը ստացվել է գործադրվող կենդանի աշխատանքի ավելացմամբ, իսկ մնացած 39,3-ը՝ արտադրողականության բարձրացմամբ։

Եթե հանրապետության արդյունաբերության մեջ ստեղծվող հասարակական արդյունքի և ազգային եկամտի աճի մեծ մասը (մոտ 2/3-ը) տեղի է ունեցել գործադրվող կենդանի աշխատանքի ավելացման հաշվին, ապա գյուղատնտեսության մեջ ստեղծվող հասարակական արդյունքի և ազգային եկամտի ամբողջ աճը արդյունք է աշխատանքի արտադրողականության բարձրացման։

Հարկ է նշել, որ տեխնիկական առաջընթացի և աշխատանքի արտադրողականության սիստեմատիկ բարձրացման շնորհիվ հասարակական արդյունքի և ազգային եկամտի աճի գործում հարաբերականորեն կպակասի գործադրվող կենդանի աշխատանքը և կբարձրանա աշխատանքի արտադրողականության դերը։

Մեր հանրապետությունում հասարակական արդյունքի և ազգային եկամտի աճը զուգակցվում է ճյուղային կառուցվածքի փոփոխմամբ, ընդ որում, գնալով բարձրանում է արդյունաբերության տեսակարար կշիռը։ Այդ են ցույց տալիս 50-րդ էջում զետեղված աղյուսակի տվյալները։

Աղյուսակից երևում է, որ հանրապետության հասարակական արդյունքի և ազգային եկամտի ծավալում աճել է արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի տեսակարար կշիռը, իսկ մյուս ճյուղերինը (գյուղատնտեսության, առևտրի և այլ ճյուղերինը)՝ կրճատվել։

Եթե նկատի ունենանք, որ արդյունաբերությունը շինարարության և տրանսպորտի հետ միասին տալիս է հանրապետության ազգային եկամտի մոտ 3/4-ը (1965 թ. 70,5 տոկոս), ապա միանգամայն ակնհայտ կդառնա, թե ինչպիսի զարգացած ինդուստրիալ երկիր է Սովետական Հայաստանը։

Այնուհետև, արդյունաբերության տեսակարար կշիռն ազգային եկամտի արտադրության մեջ ավելի ցածր է, քան հասարակական արդյունքում, իսկ գյուղատնտեսությանը՝ հակառակը։ Սա բացատրվում է նրանով, որ արդյունաբերությունը նյութական արտադրության այն ճյուղերից է, որտեղ զուտ ար-

ՀՍՍՀ հասարակական արդյունքի և ազգային եկամտի ճյուղային կառուցվածքը փաստացի գներով, ներառյալ շրջանառության հարկը
*(տոկոսներով, ընդհանուրի նկատմամբ)*

| | Հասարակական արդյունք | | Ազգային եկամուտ | |
|---|---|---|---|---|
| | 1958 | 1965 | 1958 | 1965 |
| Ընդամենը՝ | 100 | 100 | 100 | 100 |
| այդ թվում՝ | | | | |
| Արդյունաբերություն | 61,5 | 66,7 | 51,0 | 56,4 |
| Շինարարություն | 10,8 | 12,2 | 10,0 | 11,8 |
| Գյուղատնտեսություն | 20,1 | 14,0 | 27,1 | 20,0 |
| Տրանսպորտ և կապ | 1,5 | 1,8 | 1,5 | 2,3 |
| Առևտուր, մթերումներ | | | | |
| Նյութատեխնիկական մատակարարում և այլ ճյուղեր | 6,1 | 5,3 | 10,4 | 9,5 |

*տադրանքի տեսակարար կշիռը համախառն արտադրանքի մեջ համեմատաբար ավելի ցածր է, քան նյութա-արտադրական ծախսերինը, իսկ գյուղատնտեսությունը, ընդհակառակը: Միաժամանակ պետք է նշել, որ գնագոյացման ներկայումս գործող սիստեմի պայմաններում նյութական արտադրության մի շարք ճյուղերում (ծանր արդյունաբերություն, գյուղատնտեսություն, շինարարություն, տրանսպորտ) արտադրված արտադրանքի արժեքի մի մասն իրացվում է ո՛չ թե այդ ճյուղերի արտադրանքի, այլ ժողովրդական սպառման ապրանքների գների մեջ, գլխավորապես շրջանառության հարկի ձևով: Այս հանգամանքը, անշուշտ, փոքրացնում է վերը թվարկած ճյուղերի տեսակարար կշիռը հասարակական արդյունքի և ազգային եկամտի արտադրության մեջ և դրան հակառակ, մեծացնում արդյունաբերության տեսակարար կշիռը:*

*Մեկ աշխատողին ընկնող համախառն և զուտ արտադրանքի արտադրության տեսակետից, հանրապետության նյութական արտադրության բոլոր ճյուղերի մեջ արդյունաբերությունը գրավում է առաջին տեղը: Այսպես, 1965 թվականին արդյունաբերության մեջ մեկ աշխատողի հաշվով արտադրված համախառն արտադրանքը 2,1 անգամ ավելի է, քան շինարարությունում և 9,3 անգամ ավելի, քան գյուղատնտեսության մեջ: Իսկ եթե վերցնենք նոր ստեղծված արժեքի գումարի առումով, ապա արդյունաբերության մեջ յուրաքանչյուր աշխատողին ընկնում է 1,9 անգամ ավելի արտադրանք, քան շինարարությունում և 6,2 անգամ ավելի, քան գյուղատնտեսության մեջ:*

*Հանրապետության արդյունաբերության համախառն և զուտ արտադրանքը 1965 թ., 1958 թ. համեմատությամբ աճել է գրեթե 2 անգամ: Արդյունաբերության արագ զարգացման շնորհիվ փոխվեց նյութական արտադրության ճյուղերի փոխհարաբերությունը: Ներկայումս հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ գլխավոր և վճռական տեղը պատկանում է արդյունաբերությանը: Հասարակական ամբողջական արդյունքի 2/3-ը և ազգային եկամտի կեսից ավելին ստեղծվում է արդյունաբերության մեջ: 1965 թ. նյութական արտադրության ոլորտում զբաղված աշխատողների ընդհանուր թվի 30,4 տոկոսն աշխատում էր արդյունաբերության մեջ:*

*Յոթնամյակի տարիներին Հայաստանի գյուղատնտեսության համախառն արտադրանքն աճեց 23, իսկ զուտ արտադրանքը՝ 15,6 տոկոսով:*



*Անհրաժեշտ է նշել, որ գյուղատնտեսության համախառն և զուտ արտադրանքի աճի տեմպերը դեռևս բավական ետ են մնում արդյունաբերության համախառն և զուտ արտադրանքի աճի տեմպերից: Եթե արդյունաբերության համախառն արտադրանքի տարեկան միջին աճը 1958—1965 թթ. կազմեց 10,1, ապա գյուղատնտեսությանը ընդամենը՝ 3 տոկոս: Այս է պատճառը, որ հանրապետության հասարակական արդյունքի և ազգային եկամտի արտադրության մեջ արդյունաբերության տեսակարար կշիռը տարեցտարի աճում է, իսկ գյուղատնտեսությանը՝ իջնում:*

*Ուսումնասիրվող ժամանակաշրջանում հանրապետության գյուղատնտեսության համախառն և զուտ արտադրանքի արտադրության մեջ պետական տնտեսությունների ու ձեռնարկությունների տեսակարար կշիռը համապատասխանաբար ավելացել է 15,1 և 13,8 տոկոսով. դրան հակառակ՝ զգալիորեն կրճատվել է կոլտնտեսություններինը: Դա հետևանք է այն բանի, որ այդ տարիներին տնտեսապես թույլ զարգացած կոլտնտեսությունների բազայի և նոր յուրացվող հողատարածությունների վրա կազմակերպվեցին 129 սովխոզ, որոնց ցանքատարածությունները 1966 թ., 1958-ի համեմատությամբ, ավելացան մոտ 3,7, իսկ խաղողի և պտղատու այգիներինը՝ ավելի քան 3,4 անգամ: Խոշոր չափերով աճեց նաև սովխոզների անասունների գլխաքանակը: Բայց, չնայած դրան, ներկայումս հանրապետության գյուղատնտեսության էկոնոմիկայի մեջ գլխավոր և վճռական տեղը պատկանում է կոլտնտեսություններին: Բավական է նշել, որ դրանք տալիս են հանրապետության գյուղատնտեսության համախառն և զուտ արտադրանքի մոտավորապես կեսը:*

*Բնակչության անձնական օժանդակ տնտեսությունների տեսակարար կշիռը հանրապետության գյուղատնտեսության համախառն և զուտ արտադրանքի արտադրության մեջ դեռևս բարձր է. 1965 թ. այն համապատասխանաբար կազմեց 35,0 և 38,5 տոկոս: Կոլտնտեսականների և բանվոր ծառայողների տնտեսությունների տեսակարար կշիռը հատկապես բարձր է անասնապահական մթերքների, կարտոֆիլի, իսկ Արարատյան հարթավայրում նաև բանջարեղենի, խաղողի և մրգերի արտադրության բնագավառում: Այդ մասամբ պայմանավորվում է գյուղատնտեսական մթերքների գների և գնագոյացման գոյություն ունեցող սիստեմով:*

*Հայաստանի բուսաբուծության արտադրանքի հիմնական արտադրողները սովխոզներն ու կոլտնտեսություններն են, որոնց բաժինը բուսաբուծության համախառն արտադրանքի մեջ 1965 թ. կազմեց 70,6 տոկոս: Անասնաբուծության արտադրանքի մեջ դեռևս բավական բարձր է բնակչության օժանդակ տնտեսությունների տեսակարար կշիռը (43,3 տոկոս). սա արդյունք է այն բանի, որ հանրապետության կոլտնտեսությունների և սովխոզների հանրային անասնաբուծության զարգացման ներկա մակարդակը դեռևս չի բավարարում բնակչության պահանջմունքները (անասնապահական մթերքների գծով): Ինչպես հայտնի է, գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, հետևապես համախառն և զուտ արտադրանքի աճի ամենակարևոր պայմաններից մեկը հողատարածությունների ռացիոնալ օգտագործումն է, անասունների գլխաքանակի ավելացումը և դրանց մթերատվության բարձրացումը: Պետք է նշել, որ հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզներն այս ասպարեզում դարձյալ ռեալ հնարավորություններ ունեն:*

*Հայաստանի ժողտնտեսության մեջ կատարված վիթխարի կապիտալ ներդրումների շնորհիվ շինարարության համախառն և զուտ արտադրանքը*

յոթնամյակի տարիներին աճեց բացառիկ բարձր տեմպերով։ Այսպես, 1965 թ.,
1958 թ. համեմատությամբ, հանրապետության շինարարության համախառն և
զուտ արտադրանքն աճեց ավելի քան երկու անգամ։ Այդ նույն ժամանակա-
շրջանում շինարարության համախառն արտադրանքի աճի տարեկան միջին
տեմպերը կազմեցին 11,6, իսկ զուտ արտադրանքինը՝ 10,8 տոկոս։ Համա-
խառն և զուտ արտադրանքի աճի տեմպերի տեսակետից ՀՍՍՀ նյութական ար-
տադրության ճյուղերի մեջ շինարարությունը գրավում է երրորդ տեղը նյու-
թատեխնիկական մատակարարումից և տրանսպորտից հետո։ Շինարարու-
թյան համախառն և զուտ արտադրանքի այսպիսի արագ աճի շնորհիվ նրա
տեսակարար կշիռը հասարակական ամբողջական արդյունքի մեջ 1958—65 թթ.
աճեց 1,4, իսկ ազգային եկամտի արտադրությունում՝ 1,8 տոկոսով։ Շինա-
րարության բաժինը հասարակական ամբողջական արդյունքի և ազգային
եկամտի արտադրության մեջ ՀՍՍՀ-ում ավելի բարձր է, քան ՍՍՀՄ-ում։ Այս-
պես, եթե 1965 թ. նրա տեսակարար կշիռը ՍՍՀՄ հասարակական ամբողջա-
կան արդյունքի մեջ կազմեց 9,5, իսկ ազգային եկամտի մեջ 8,4 տոկոս, ապա
ՀՍՍՀ-ում համապատասխանաբար՝ 12,2 և 11,8 տոկոս։

Պետք է նշել, որ շինարարության բաժինը հասարակական արդյունքի և
ազգային եկամտի արտադրության մեջ ավելի բարձր կլիներ, եթե նրա արտա-
դրանքի մի մասը շրջանառության հարկի ձևով չիրացվեր ժողովրդական տըն-
տեսության մի շարք ճյուղերի արտադրանքի գների մեջ։

Հանրապետության շինարարության համախառն և զուտ արտադրանքի 4/5
մասից ավելին տալիս են պետական և կոոպերատիվ ձեռնարկություններն ու
կազմակերպությունները։ Սակայն, դեռևս նկատելիորեն բարձր է բնակչության
օժանդակ տնտեսությունների տեսակարար կշիռը շինարարության համախառն
և զուտ արտադրանքի մեջ (1965 թվականին այն համապատասխանաբար կազ-
մեց՝ 11,1 և 10,0 տոկոս)։ Դա ամբողջապես արդյունք է անհատական բնակա-
րանային շինարարության ծավալմանը։ Միայն 1958—1965 թվականներին
Հայաստանի քաղաքներում և քաղաքատիպ վայրերում կառուցվել են 1608
հազար քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ անհատական բնակելի
տներ, իսկ գյուղական վայրերում՝ 59,5 հազար բնակելի տուն։ Շինարարու-
թյան համախառն և զուտ արտադրանքի աճը հիմնականում տեղի է ունեցել
աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին։ Աշխատանքի
արտադրողականությունը հանրապետության շինարարության մեջ 1966 թ.,
1958 թ. համեմատությամբ, աճեց 54,4 տոկոսով։

Շինարարությունը դասվում է արտադրության նյութատար ճյուղերի շար-
քին։ Նրա արտադրանքի մեջ գերակշռում են նյութական ծախսերը։ Այսպես,
1965 թվականին ՀՍՍՀ շինարարության համախառն արտադրանքի մեջ նյու-
թական ծախսերի տեսակարար կշիռը կազմեց 54,3 տոկոս։ Շինարարության
զարգացման տեխնիկական առաջընթացի և աշխատանքի արտադրողականու-
թյան բարձրացման շնորհիվ նյութական ծախսերի տեսակարար կշիռը բարձ-
րանում է, իսկ կենդանի աշխատանքինը՝ իջնում։ Եթե 1958 թվականին ՀՍՍՀ
շինարարության համախառն արտադրանքի մեջ նյութական ծախսերի տեսա-
կար կշիռը կազմել է 50,6, իսկ զուտ արտադրանքինը՝ 49,4 տոկոս, ապա
1965 թ. համապատասխանաբար՝ 54,3 և 45,7 տոկոս։ Նյութական ծախսերի
կրճատումը շինմոնտաժային աշխատանքների ինքնարժեքի իջեցման և շինա-
րարության զուտ արտադրանքի ավելացման կարևոր պայմաններից մեկն է։
Հանրապետության շինարարական կազմակերպությունները մեծ հնարավորու-



թյուններ ունեն կրճատելու շինմոնտաժային աշխատանքների վրա կատարվող
նյութական ծախսումները։

Հայաստանի նյութական արտադրության կարևորագույն ճյուղերից մեկ՝
էլ տրանսպորտն է, որի անխափան աշխատանքով է պայմանավորվում մյուս
ճյուղերի նորմալ գործունեությունը։ Սովետական իշխանության տարիներին,
հատկապես պատերազմից հետո ընկած ժամանակաշրջանում, զարգացման
բարձր աստիճանի հասան Հայկական ՍՍՀ տրանսպորտի բոլոր տեսակները։
Միայն յոթնամյակի տարիներին հանրապետության տրանսպորտի և կապի
համախառն արտադրանքն աճեց մոտ 2,2, իսկ զուտ արտադրանքը՝ 2,5 ան-
գամ։ Համախառն արտադրանքի աճի միջին տարեկան տեմպերն այդ նույն
ժամանակամիջոցում կազմեցին 11,7, իսկ զուտ արտադրանքինը՝ 13,9 տոկոս։
Զուտ արտադրանքի աճի տեմպերի տեսակետից հանրապետության նյութա-
կան արտադրության ճյուղերի մեջ տրանսպորտը գրավում է երկրորդ տեղը՝
նյութատեխնիկական մատակարարումից հետո։

Տարեցտարի աճում է տրանսպորտի և կապի տեսակարար կշիռը Հայաս-
տանի հասարակական ամբողջական արդյունքի և ազգային եկամտի արտա-
դրության մեջ։ Այսպես, եթե 1958 թվականին ազգային եկամտի մեջ այն կազ-
մել է 1,5, ապա 1965-ին՝ 2,3 տոկոս։

Ժողովրդական տնտեսության կարևորագույն ճյուղերից է նաև առևտու-
րը։ Առևտրի հիմնական ֆունկցիան շրջանառությունն է, սակայն դրա հետ
միասին այն կատարում է նաև որոշ արտադրական օպերացիաներ և դրանով
իսկ մասնակցում հասարակական արդյունքի և ազգային եկամտի արտադրու-
թյանը։ Առևտրի բաժինը սոցիալիստական պետության հասարակական ար-
դյունքի և ազգային եկամտի արտադրության մեջ չափազանց փոքր է։

Առևտրի համախառն և զուտ արտադրանքի աճի կարևոր պայմաններից է
ապրանքաշրջանառության ծավալի մեծացումը։ Իսկ որքան մեծ լինի ապրան-
քաշրջանառության ծավալը, այնքան շատ կլինի իրացված վերադիրների մե-
ծությունը, այսինքն՝ առևտրի համախառն, հետևապես և զուտ արտադրանքը։
Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ընդլայնումն ու բնակ-
չության գնողունակության սիստեմատիկ բարձրացումն անհրաժեշտ պայման-
ներ ստեղծեցին սովետական առևտրի ապրանքաշրջանառության ծավալի աճի
համար։ Բավական է նշել, որ 1966 թ. 1958 թ. համեմատությամբ, պետական
և կոոպերատիվ առևտրի, այդ թվում և հասարակական սննդի մանրածախ
ապրանքաշրջանառությունը ՍՍՀՄ-ում աճեց 1,7, ՀՍՍՀ-ում՝ 2 անգամ։

Ինչպես ՍՍՀՄ-ում, նույնպես և ՀՍՍՀ-ում հասարակական արդյունքի և
ազգային եկամտի ճնշող մասը ստեղծվում է ժողովրդական տնտեսության
հանրային սեկտորում։ Այսպես, Հայաստանի հասարակական արդյունքի 93,3
և ազգային եկամտի 91,2 տոկոսը ստեղծվել են պետական և կոոպերատիվ
ձեռնարկություններում ու կոլտնտեսություններում։ Դրա կողքին հանրապե-
տության հասարակական արդյունքի և ազգային եկամտի արտադրության մեջ
տարեցտարի կրճատվում է բնակչության տնտեսությունների տեսակարար
կշիռը։ Եթե 1958 թ. նրանց տեսակարար կշիռը հասարակական արդյունքի
մեջ կազմել է 9,6, իսկ ազգային եկամտում՝ 12,8 տոկոս, ապա 1965-ին այն
համապատասխանաբար կազմեց 6,7 և 9,8 տոկոս։ Այս երևույթը միանգա-
մայն օրինաչափ է. պետական ձեռնարկությունների և կոլտնտեսությունների
զարգացմամբ բնակչության օժանդակ տնտեսությունների նշանակությունը
որպես եկամուտների աղբյուր, նվազում է։

ՎԱՐԴԱՆՅԱՆ Բ. Թ.

ՀԼԿԵՄ Երևանի քաղաքային կոմիտեի առաջին քարտուղար

# ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ

Մեր հանրապետության մայրաքաղաքի կոմերիտական կազմակերպությունն իր շարքերում միավորում է ավելի քան 80000 կամք, միտք, եռանդ ու բնավորություն։ Դա տարբեր հասակի, կրթության, նախասիրությունների, քաղաքական գրագիտության տեր մարդկանց միավորում է։ Նկատի ունենալով այդ, կոմերիտական կազմակերպությունները նրանց շրջանում շերտավորված աշխատանք են տանում և ձգտում ամեն մի երիտասարդի դարձնելու նոր հասարակության ակտիվ կառուցող։

ՍՄԿԿ XXIII և ՀամԼԿԵՄ XV համագումարների որոշումներում որոշակիորեն ասված է, որ կոմերիտմիության աշխատանքում գլխավորը երիտասարդության դաստիարակությունն է, և դա կազմում է կոմերիտական կազմակերպությունների գործունեության անկյունաքարը։ Այո, գլխավորը մարդու, առավել ևս երիտասարդ մարդու հետ տարվող աշխատանքն է, որն ունի իր առանձնահատկություններն ու դժվարությունները։

Նախ, ներկայիս սերունդը չի անցել հեղափոխական պայքարի, հայրենական մեծ պատերազմի բովով։ Նա այժմ գտնվում է հսկայական ներազդեցությունների ոլորտում. գրականությունը, մամուլը, ռադիոն հեռուստատեսությունը, տուրիզմը, կինոն ամեն օր, ամեն ժամ իրենց որոշակի կնիքն են թողնում երիտասարդության վրա։ Իսկ այդ ամենը պահանջում են ամենուրեք կատարելագործել երիտասարդության շրջանում տարվող աշխատանքի ձևերը։ Միանգամայն իրավացի է մեծ մանկավարժ Մակարենկոն, որն ասում էր. երիտասարդությունը միշտ գեղեցիկ է, եթե ճիշտ է դաստիարակվում, լավ է աշխատում և ճիշտ է զվարճանում։

Մայրաքաղաքի կոմերիտական կազմակերպությունները զգալի գործ են կատարել երիտասարդության դաստիարակության ասպարեզում։ Բայց, չնայած դրան, նրանք այդ պատվավոր գործում երբեմն լուրջ դժվարությունների են հանդիպում՝ գերատեսչական առանձին քաշքշուկների պատճառով։ Այսպես, Հայաստանի պետական պատկերասրահը ցուցադրման ենթակա 16000 էքսպոնատ ունի, բայց ցուցադրվում է միայն 1600-ը, այսինքն 10 տոկոսը։ Իսկ որքան կշահի գործը, եթե կուլտուրայի մինիստրությունն այդ էքսպոնատների գեթ մի մասը ցուցադրեր շրջիկ ցուցահանդեսների միջոցով։



Նույնը կարելի է ասել կինոնկարների մասին։ Գեղարվեստական, փաս-
տագրական և վավերագրական մի շարք արժեքավոր կինոնկարներ կինոպրա-
կատի ֆիլմադարանում սպասում են ժամկետն անցնելուն, որպեսզի խունա-
նան, մինչդեռ կարելի է դրանք պատշաճ ձևով տալ կոմերիտական կազմակեր-
պություններին՝ օգտագործելու համար։ Կամ ռադիոյի և հեռուստատեսության
պետական կոմիտեի հարուստ ձայնադարանում պահվող ձայնագրությունները
շատ հեշտությամբ կարող են կրկնօրինակվել և տրվել երիտասարդությանը՝
օգտագործելու համար։

Ժամանակն է, որպեսզի լուծել այդ հարցերը, հետաքրքրական ու բովան-
դակալից դարձնել երիտասարդության ազատ ժամանակի օգտագործումը։
Պետք է հաշվի առնել, որ երիտասարդ մարդը շատ դեպքում խորթ ազդեցու-
թյունների տակ ընկնում է ոչ թե աշխատելիս կամ սովորելիս, այլ ազատ
ժամանակ, ոչ թե արտադրամասում և լսարանում, այլ դրսում։

Ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման ուղղությամբ մայրաքաղաքի
կոմերիտական կազմակերպությունները դեռևս վատ են օգնում երիտասարդու-
թյանը։ Խնդիրն այն է, որպեսզի ճշտորեն օգտագործվի երիտասարդության
ազատ ժամանակը, և ջանալ, որ դա մասսայական բնույթ կրի։

Կոմերիտական ժողովներում ու կոնֆերանսներում հաճախ խոսվում է
այն մասին, որ երեկոներ, քննարկումներ, հանդիպումներ չեն կազմակերպ-
վում։ Բայց տեղին է հարցնել, թե ո՞վ պետք է այդ ամենը կազմակերպի, եթե
ոչ իրենք՝ կոմերիտականներն ու երիտասարդները։ Ակադեմիկոս Ստրումիլինի
հաշվումներով այսօրվա մեկ րոպեն երկու հազար անգամ թանկ է, քան 10-րդ
դարի մեկ րոպեն։ Բայց և այնպես այդքան թանկ ժամանակը մենք վատ ենք
օգտագործում։ Մեր մոտավոր հաշվումներով շաբաթ-կիրակի օրերին մայրա-
քաղաքի կինոթատրոններում, համերգասրահներում, թատրոններում և այդ
կարգի այլ վայրերում կարող է հաճախել երիտասարդության կեսից պակասը,
իսկ մյուս մասն այդպես էլ չի կարողանում կողմնորոշվել՝ թե որտեղ և ինչ-
պես անցկացնի իր հանգիստը։

Հանգստի կազմակերպման համար եղած միջոցներն արհմիությունները,
կոմերիտմիությունը, սովետները, սպորտային ու ստեղծագործական միու-
թյունները հաճախ ծախսում են մեկուսի, որը, բնականաբար, անհրաժեշտ
արդյունք չի տալիս։ Իսկ ինչո՞ւ յուրաքանչյուր շաբաթ և կիրակի օրերին մայ-
րաքաղաքի ազատ դահլիճներում, պալատներում, սրճարաններում, սպորտա-
յին արենաներում, զբոսայգիներում ու այլ բեմահարթակներում չանցկացնել
երիտասարդության հանգստի կոմպլեքսային միջոցառումներ, որոնց մասին
էլ անհրաժեշտ է ծրագրերի, հայտարարությունների ու աֆիշների միջոցով
իրազեկ դարձնել երիտասարդությանը։

Մայրաքաղաքի բազմաթիվ կոմերիտական կազմակերպություններում
ազատ ժամանակի խելացի օգտագործման շատ ձևեր են կիրառում։ Խոսքն
այն մասին չէ, թե որքան երիտասարդներ են մասնակցում ինքնագործ խմբերի,
ակումբների, երիտասարդական ստեղծագործական այլ միավորումների աշ-
խատանքին, այլ այն մասին, թե դրանք ինչ հաջորդականությամբ են գործում
և ինչ են տալիս մարդուն։

Ամենից առաջ կուզենայինք ընդգծել քաղաքի կուլտուրայի տների և գոր-
ծարանային ակումբների գործունեության բարելավման անհրաժեշտությունը։
Չէ որ դրանք հաճախ կամ փակ են, կամ «վերանորոգվում» են կամ զբաղված
են ինքնագործ խմբերի փորձերով։ Իսկ ե՞րբ և որտե՞ղ պետք է հանգստանա

երիտասարդը։ Այդ մասին մտածող չկա։ Ուստի վաղուց հասունացած հարց է, որ հստակորեն պլանավորվի կուլտուրայի տան և ակումբի մեծ դահլիճների յուրաքանչյուր օրը։ Թերևս ճիշտ կլինի, եթե մայրաքաղաքի արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները ավանդույթ դարձնեն, որ ամեն մի կազմակերպություն ունենա իր տրադիցիոն ֆեստիվալը, տոնը, ստեղծագործական հաշվետվությունների շաբաթների կազմակերպումը։ Որպես առաջին փորձ, այս տարվա սեպտեմբեր-հոկտեմբեր ամիսներին, ի պատիվ Երևանի 2750 և ՀամԼԿԵՄ 50-ամյակի, կանցկացվի երիտասարդական համաքաղաքային փառատոն, որին պետք է մասնակցեն քաղաքի բոլոր 769 սկզբնական կոմերիտական կազմակերպությունները, կուլտուրայի տները և ակումբները։

Երիտասարդության ազատ ժամանցի գործում մեծ է կինոյի դերը։ Բավական է նշել, որ մայրաքաղաքի կինոթատրոնները շաբաթական հաճախած 80000 հանդիսատեսի ճնշող մեծամասնությունը երիտասարդությունն է։

ՀԼԿԵՄ քաղկոմը, շրջկոմները և կինոֆիկացիայի քաղաքային վարչությունը պետք է ձգտեն այն բանին, որպեսզի յուրաքանչյուր կինոթատրոն ունենա իր գեղարվեստական խորհուրդը, որն աշխատի ոչ միայն ֆինանսական, այլ գաղափարական ու դաստիարակչական նկատառումներով։ Մայրաքաղաքի կինոթատրոններում ցուցադրված «Ֆանտոմաս» կինոնկարը սխալ ընկալեցին գրեթե բոլոր երեխաներն ու պատանիները։ Դրա գլխավոր պատճառն այն է, որ այդ ֆիլմի մասին ոչ մի անգամ մամուլում, ռադիոյով կամ էլ սեանսից առաջ զրույցի ձևով մեկնաբանումներ չտրվեցին, չպարզաբանվեց, թե ինչպես պետք է հասկանալ այդ կինոնկարը։ Իսկ «Պիոներ» կինոթատրոնը, որը կոչվում է մանկական, 1967 թ. ընթացքում ընդամենը 62 կինոնկար է ցուցադրել մանուկների համար, իսկ 72-ը՝ 16-ից բարձր տարիք ունեցող հանդիսատեսների համար՝ պլանները կատարելու նկատառումով։

Երիտասարդության դաստիարակության գործում հսկայական դեր է պատկանում գրականությանը և արվեստին։ Այսօր Երևանում ապրում և ստեղծագործում է երիտասարդ նկարիչների, գրողների, կոմպոզիտորների, թատերագետների, ճարտարապետների շնորհքով օժտված մեծ սերունդ, որի հետ հետևողական ու արդյունավետ գործակցելու դեպքում կարելի է լավ արդյունքի հասնել։ Գրեթե վերջերս ՀԼԿԵՄ Երքաղկոմին կից ստեղծվել ու գործում է «Մեր ժամանակակիցը» քաղաքային ընկերությունը, որի նպատակն է երիտասարդությանը ծանոթացնել գրականության և արվեստի լավագույն երկերին, ժամանակակից պրոբլեմներին, օգնել երիտասարդ ստեղծագործողներին պատշաճ տեղ գրավելու կյանքում։ Սակայն, դժբախտաբար, մայրաքաղաքի երիտասարդ ստեղծագործողների աճի ու զարգացման հարցերով՝ դեռևս անբավարար են զբաղվում իրենք՝ ստեղծագործական միությունները։ Ի դեպ, նրանցից շատերի երիտասարդական սեկցիաները գրեթե անգործության են մատնվել։

Չի կարելի անտարբեր անցնել այն բանի կողքով, թե ինչ է կարդում, տեսնում ու լսում երիտասարդությունը։

Երիտասարդության դաստիարակության գործում հսկայական դեր է պատկանում մամուլին, ամենից առաջ երիտասարդական թերթերին ու ամսագրերին։ Գոհունակությամբ պետք է նշել, որ վերջին ժամանակներս ավելի հետաքրքրական հարցեր է բարձրացնում «Ավանգարդ» թերթը։ Սակայն, մեր կարծիքով, հանրապետության երիտասարդական մամուլի էջերում դեռևս մեծ տեղ են գրավում աննշան դեպքերը, մելոդրամատիկ հոդվածները, առանձնասենյակային միջավայրում մտահղացված հարցերը կամ էլ սեփական աշխա-



տակիցների ճանապարհորդական երկարաշունչ և երբեմն էլ հետաքրքրազուրկ նկարագրությունները։ Դրան հակառակ, ավելի քիչ են լուսաբանվում կոլեկտիվի, միջավայրի և անհատի փոխազդեցության հարցերը։ Արժե նշել, որ «Ավանգարդ» թերթն ու «Գարուն» ամսագիրը, լինելով ՀԼԿԵՄ Կենտկոմի օրգանը, պետք է առաջին հերթին լուրջ ուշադրություն նվիրեն կոմերիտական կազմակերպությունների գործունեության լուսաբանմանը և նրանց օգնեն ավելի հրապուրիչ ու բովանդակալից դարձնելու կոմերիտական կյանքը։

Վերջին երկու տարում մայրաքաղաքի բուհերի և տեխնիկումների կոմերիտական կազմակերպությունները որոշակի հաջողությունների են հասել սովորող երիտասարդության մասնագիտական որակավորման բարձրացման, նրանց աշխատանքային և գեղարվեստական դաստիարակության բարելավման ուղղությամբ։ Որոշակի աշխատանք է տարվում ուսանողական ինքնավարության զարգացման ասպարեզում։ Երևանի Խ. Աբովյանի անվան մանկավարժական ինստիտուտի ԼԿԵՄ կոմիտեի ակտիվ գործունեության շնորհիվ ուսանողական թոշակը նշանակվում է կուրսային կոմերիտական ժողովում՝ դասախոսագիտատորի ղեկավարությամբ։ Հանրակացարանի բաշխումը կատարվում է ֆակուլտետային ԼԿԵՄ բյուրոյի նիստում՝ դեկանատի ներկայացուցչի մասնակցությամբ։

Շրջանավարտներին աշխատանքի նշանակումը նույնպես նախնական կերպով կատարվում է կուրսերում՝ լուսավորության մինիստրությունից նախօրոք ստացված տեղաբաշխումների հիման վրա, որն այնուհետև ձևակերպում է նշանակող հանձնաժողովը։

Շրջանավարտին ասպիրանտուրան ընդունելիս հաշվի է առնվում նաև ինստիտուտի ՈՒԳԸ-ի երաշխավորությունը։ Կուրսային և ֆակուլտետային կոմերիտական ժողովներում բարձրացվում են ուսման պրոցեսին վերաբերող լուրջ հարցեր, որոնք հաշվի են առնվում ռեկտորատի, գիտական խորհրդի և ուսումնական մասի կողմից։

Վերջին ժամանակներս բուհերում ու տեխնիկումներում կիրառվում են դաստիարակչական աշխատանքի մի շարք նոր ձևեր։ Դրանցից է, օրինակ, «Ուսանողական գարուն» ավանդական փառատոնի անցկացումը։

Մայրաքաղաքի գրեթե բոլոր բուհերի և տեխնիկումների ԼԿԵՄ կազմակերպությունները որոշակի աշխատանք են տանում ուսանողների աշխատանքային դաստիարակության գործը պատշաճ հիմքերի վրա դնելու համար։ Արդեն երկրորդ տարին է, ինչ խամ ու խոպան հողերի շինարարական աշխատանքներին մասնակցող Հայաստանի ուսանողական ջոկատը վերադառնում է գոհացուցիչ արդյունքներով և բարձր պահում հանրապետության կոմերիտմիության պատիվը։ Ֆիզկուլտուրային ինստիտուտի և շինարարական տեխնիկումի ուսանողները կազմակերպված մասնակցեցին Ծաղկաձորի սպորտային թաղամասի կոմպլեքսի շինարարական աշխատանքներին։

Գնալով ավելի են ամրապնդվում ուսանողական բարեկամական կապերը։ Չնայած այդ ամենին, բարձրագույն և միջին-մասնագիտական ուսումնական հաստատությունների կոմերիտական կազմակերպությունների գործունեության մեջ դեռևս աղաղակող թերություններ կան։ Գաղտնիք չէ, որ ուսումնական պրոցեսին զուգընթաց տեղի է ունենում յուրաքանչյուր սովորողի հասարակական դեմքի ձևավորումը։ Մինչդեռ փաստերը ցույց են տալիս, որ ուսանողների ճնշող մեծամասնությունը ուսումնառության տարիներին չի ընդգրկվում հասարակական մասնագիտություններ ձեռք բերելու գործում։ Նկատի ունենալով

այդ, ՀամԼԿԵՄ ԿԿ-ի վերջերս ավարտված պլենումը ուղղակի խնդիր դրեց, որ ամեն մի շրջանավարտ ոչ միայն պետք է լավ իմանա իր մասնագիտությունը, այլև կարողանա աշխատանքի ընթացքում հանդես բերել հասարակական գործչի, ակումբավարի, ռեժիսյորի, սպորտի հրահանգչի ունակությունները։

Մեղանում վաղուց ի վեր հասունացած էր ուսանողական գիտական ընկերությունների (ՈՒԳԸ) գործունեության կոորդինացման հարցը։ Նույնիսկ 1964 թ. մինիստրությանը կից ստեղծվեց ՈՒԳԸ-ի հանրապետական խորհուրդ, բայց, դժբախտաբար, այնուհետև ամեն ինչ մոռացության մատնվեց... Մինչդեռ ՈՒԳԸ-ն սպասում են մասնագիտական լուրջ օգնության ու աջակցության։

Բուհերի կոմերիտական կազմակերպությունների աշխատանքում բացակայում է կյանքի երևույթների խոր վերլուծությունը, ամեն ինչ արվում է անսիստեմ, տարերայնորեն։ Տարվելով դեպքից դեպք հրավիրվող ընդհանուր միջոցառումներով, նրանք մոռացության են մատնում ուսանողության գաղափարական դաստիարակության հանապազօրյա հարցերը։

Բուհերում լուրջ վիճակ է ստեղծվել ուսանողության ակադեմիական առաջադիմության հարցում։ Անհասկանալի է, թե ինչու բարձր կոնկուրսով ընդունված ուսանողների առաջադիմությունն առանձին ֆակուլտետներում ու կուրսերում կազմում է ընդամենը 20—30 տոկոս։ Կոմերիտական կազմակերպությունները այս երևույթը բացատրում են զանազան օբյեկտիվ պատճառներով, ամեն կերպ ձգտելով խուսափել պատասխանատվությունից։ Ակամայից հարց է ծագում, ո՞վ պետք է ամենից առաջ զբաղվի բուհերում հաճախումների ապահովման, սեմինար պարապմունքների կազմակերպված անցկացման, ուսումնական կարգապահության բարձրացման հարցերով, եթե ոչ կոմերիտական կազմակերպությունները։ Ցավալի է, որ կուրսային և ֆակուլտետային կոմերիտկազմակերպությունները վերոհիշյալ հարցերով զբաղվում են միայն քննությունների արդյունքների մասին ինֆորմացիա լսելու և այդ առթիվ ընդհանուր, ոչինչ չասող որոշումներ ընդունելու ձևով։

Պոլիտեխնիկական ինստիտուտի քիմիական ֆակուլտետի 445 և 41 խմբերում անցյալ քննաշրջանում ուսանողների առաջադիմությունը կազմել է 20 տոկոս, պարապմունքներից բացակայումները՝ 603 ժամ։ Ուսանողներից յուրաքանչյուրն ուներ 3—5 պարտք։ Այս հարցը, երկու անգամ կուրսային կոմերիտկազմակերպություններում քննարկելուց և փաստորեն ոչ մի որոշում չընդունելուց հետո, տեղափոխվել է ֆակուլտետային կոմերիտկազմակերպության բյուրո։ Իսկ վերջինս էլ ընդունել է այսպիսի մի որոշում՝ «եթե այս դրությունը կրկնվի հաջորդ քննաշրջանում, ապա կձեռնարկվեն խիստ միջոցներ»։ Առանձին մեկնաբանությունների կարիք չզգացող այս փաստը, դժբախտաբար, շատ կողմերով բնորոշ է նաև մեր մյուս բուհերի կուրսային և ֆակուլտետային կոմերիտկազմակերպությունների աշխատանքի ոճին։

Միայն անցյալ տարի մեր բոլոր բուհերում «գերազանց» գնահատականները կազմել են 5—6 տոկոս, իսկ «միջակները»՝ 80 տոկոս, այդ թվում համալսարանի, պոլիտեխնիկական, բժշկական ինստիտուտների առանձին ֆակուլտետներում ու կուրսերում համապատասխանաբար 25, 30, 40 տոկոս։ Սխալ է, երբ ուսման առաջադիմությունը համարվում է ուսանողի անձնական գործը և նա իրեն պատասխանատու է զգում լավագույն դեպքում «3» գնահատական ստանալու համար։ Բուհերի կոմերիտական կազմակերպությունները պետք է վերջ տան այս երևույթին և իրենց վճռական խոսքն ասեն ուսում-



նական պրոցեսի բարելավման, դասախոսական աշխատանքի մակարդակի բարձրացման և այլ հարցերի մասին։

Վերջին տարիներս ուսանողական ժողովներում, խորհրդակցություններում, հավաքներում շատ է խոսվել ու խոսվում ուսանողների դաստիարակության գործին դասախոսական կազմի ակտիվ մասնակցության անհրաժեշտության մասին։ Բայց մինչև հիմա էլ այդ գործով բարեխղճորեն զբաղվում է դասախոսների միայն մի մասը։

Ուսանողների դաստիարակության գործի կարևոր մասն է նրանց կենցաղը։ Այն կապված է ուսանողի բեղմնավոր աշխատանքի և կուլտուրական հանգստի կազմակերպման, նրանց ճաշակի ձևավորման և սոցիալիստական համակեցության կանոններին ընտելանալու հարցերի հետ։ Դրա համար էլ կուսակցությունը և կառավարությունը ուսանող երիտասարդության կենցաղային պայմանների բարելավման համար անում են ամեն հնարավորը։

Չնայած այս ամենին, դեռևս լուրջ թերություններ կան մայրաքաղաքի ուսանող երիտասարդության կենցաղի կազմակերպման գործում։ Ուսանողական հանրակացարաններում շարունակվում են տեղ գտնել հակահասարակական դեպքեր։ Վատ են աշխատում հանրակացարանային խորհուրդները, բավարար չափով չի կազմակերպված հասարակական սնունդը։

Ուսանող երիտասարդության գաղափարական դաստիարակության ասպարեզում կոնկրետ շատ բան ունեն կատարելու միջին մասնագիտական ուսումնական հաստատությունների կոմերիտական կազմակերպությունները։ Մինչդեռ հիդրոմելիորատիվ, ավտոճանապարհային, հաշվիչ մեքենաների տեխնիկումների կոմերիտական կազմակերպությունների գործունեությունն ըստ էության չի բավարարում սովորող երիտասարդության հարաճուն հետաքրքրությունների ու պահանջները։ Նրանք բավարար չափով չեն զբաղվում ուսանող
երիտասարդության ուսումնա-դաստիարակչական հարցերով։ Տեխնիկումնե-
րում դանդաղ է զարգանում գեղարվեստական ինքնագործունեությունը և այլն։

Մենք ընդհանուր գծերով նկարագրեցինք մայրաքաղաքի ուսանող երի-
տասարդության շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի վիճակը
և այդ կապակցությամբ կանգ առանք բարձրագույն և միջնակարգ մասնագի-
տական ուսումնական հաստատությունների կոմերիտկազմակերպություննե-
րի հերթական մի քանի կոնկրետ խնդիրների վրա։

Բանն այն է, որպեսզի ուսումնական հաստատությունների կոմերիտական
կազմակերպությունները լուրջ հետևություններ անելով բացահայտված թե-
րություններից ու սխալներից, առաջիկայում ավելի մոտիկից զբաղվեն ուսա-
նող երիտասարդության գաղափարական դաստիարակության, նրանց կուլտուր-
կենցաղային պայմանների բարելավման հարցերով, ավելի խոր թափանցեն
ուսումնա-դաստիարակչական պրոցեսների մեջ։

Հոդվածում, միաժամանակ, առաջ քաշեցինք նաև հարցեր, որոնց լուծումը մեծապես կախված է քաղաքի կուսակցական, սովետական և արհմիութենական ղեկավար օրգանների կոնկրետ միջամտությունից և օգնությունից։ Թվում է, որ նրանք կաջակցեն մեր արծարծած հարցերի օպերատիվ լուծմանը, քանզի դրանք վերաբերում են երիտասարդության դաստիարակությանը, ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի համար որակյալ մասնագետներ պատրաստելուն։

ԹՈՒՄԱՆՅԱՆ Վ. Ս.

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՀԱԿԱՍՈՒԹՅՈՒՆԸ*

*Տեսական ու պրակտիկ մեծ նշանակություն ունի սոցիալիստական հասարակության հակասությունների բացահայտման և լուծման օրինաչափությունների ուսումնասիրումը։ Դրանով պետք է բացատրել փիլիսոփայական գրականության մեջ այդ պրոբլեմի նկատմամբ ցուցաբերվող հետաքրքրությունը։*

*1965 թվականի փիլիսոփայական սիմպոզիումի մասնակից որոշ գիտնականներ, սոցիալիստական հասարակության զարգացման օրինաչափությունների մասին ունեցած իրենց ելույթներում, ուշադրություն հրավիրեցին սոցիալիզմի պայմաններում հակադրությունների միասնության ու պայքարի օրենքի գործողության ուսումնասիրման վրա։ Սակայն տարաձայնություններ առաջացան հատկապես սոցիալիստական հասարակության հիմնական հակասության շուրջ։ Այս հարցը, որ հիսունական թվականներին ծավալված դիսկուսիայի հիմնական հարցերից մեկն էր, շարունակվում է քննարկվել գիտական գրականության մեջ։ Որոշ հեղինակներ (Յա. Ա. Կրոնրոդ, Դ. Ի. Չեսնոկով, Գ. Ե. Գլեզերման, Ի. Ի. Կոննիկ և ուրիշներ) ընդհանրապես ժխտում են սոցիալիստական հասարակության մեջ որևէ հիմնական հակասության գոյությունը, իսկ ոմանք նույնիսկ միանգամայն աննպատակահարմար են համարում նման հարցադրումը, այն դիտում որպես սոցիալիզմի վրա կապիտալիզմին բնորոշ օրինաչափությունները տարածելու փորձ։*

*Որոշ փիլիսոփաներ ընդունում են սոցիալիզմի հիմնական հակասության գոյությունը, բայց նրանք տարբեր հակասություններ են հիմնական համարում և տարբեր կերպ մեկնաբանում։ Օրինակ, Վ. Պ. Չերտկովը հիմնական է համարում արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև եղած հակասությունը, այն պատճառաբանությամբ, որ հասարակական զարգացման աղբյուրը պետք է փնտրել նյութական բարիքների արտադրության մեջ։ Հ. Գ. Գաբրիելյանը և ուրիշներ, հիմնական են համարում արտադրության և սպառման միջև եղած հակասությունը, Վ. Ի. Գոբբաշը հիմնական է համարում արտադրամիջոցների նկատմամբ հասարակության բոլոր անդամների հավասարությունը և արտադրության պրոցեսին նրանց անհավասար մասնակցության միջև գոյություն ունեցող հակասությունը։ Կա նաև այն տեսակետը, որ սոցիալիստական հասարակության հիմնական հակասությունը հասարակության նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների և արտադրության միջև եղած հակասությունն է։*

*Բնության ու հասարակական կյանքի ամեն մի երևույթ ունի իր ներքին հակասությունները։ Դրանցից հիմնականն այն է, որը ծագելով երևույթի հետ միասին և պահպանվելով նրա զարգացման բոլոր փուլերում, համակում է ողջ երևույթը, արտահայտում նրա զարգացման հիմնական ուղղությունն ու տենդենցը։*

*Յուրաքանչյուր հասարակական-տնտեսական ֆորմացիա ունի իր հիմնական հակասությունը, որով բնորոշվում է տվյալ ֆորմացիայի բնույթը։ Կապիտալիստական հասարակության հիմնական հակասությունն աշխատանքի հասարակական բնույթի և յուրացման մասնավոր ձևի միջև եղած հակասությունն է։ Կապիտալիզմի ժամանակ «...արտադրությունը,—ասում է Էնգելսը,— հասարակական ակտ է դառնում, իսկ փոխանակությունը և դրա հետ նաև արդյունքների յուրացումը մնում են անհատական ակտեր,* հասարակական աշխատանքի արդյունքը յուրացնում է առանձին կապիտալիստը։ *Այդ էլ հենց կազմում է հիմնական հակասությունը, որից բխում են այն բոլոր հակասությունները, որոնց մեջ շարժվում է արդի հասարակությունը և որոնք մի առանձին պարզությամբ երևան են գալիս խոշոր արդյունաբերության մեջ» («Անտի-Դյուրինգ» 1952, էջ 350)։*

*Կապիտալիստական հասարակության հիմնական հակասությունը դրսևորվում է նրանում, որ ապրանքային արտադրության զարգացումը,—ասում է Մարքսը,— չի վերացնում ապրանքների փոխանակության պրոցեսի հակասական և իրար բացառող հարաբերությունները, այլ ձև է ստեղծում նրանց շարժման համար (տե՛ս «Կապիտալ», հ. 1, 1954, էջ 113)։*

*Աշխատանքի և կապիտալի միջև այդ հակասությունը միշտ միևնույնը չի մնում։ Նրա զարգացումն անհրաժեշտ փոփոխություններ է մտցնում նաև աշխատանքի կազմակերպման կապիտալիստական սիստեմի մեջ։ Այսպես կոչված «խաղաղ» կոնկուրենցիայի ժամանակաշրջանի կապիտալիզմը փոխարինվում է մոնոպոլիստական կապիտալիզմով։ Մոնոպոլիան, լինելով կոնկուրենցիայի ծնունդը, չի ժխտում այն։ «Մոնոպոլիան,—գրում է Մարքսը,— պահպանվել կարող է միայն շնորհիվ այն բանի, որ նա շարունակ կոնկուրենտային պայքար է մղում» («Փիլիսոփայության աղքատությունը» 1947, էջ 166)։ Չնայած դրան, այնուամենայնիվ, մոնոպոլիան կոնկուրենցիայի հակադրությունն է։ Այն, որպես իմպերիալիզմի ամենախոր տնտեսական հիմք, նոր հնարավորություններ է ընձեռում աշխատանքի և կապիտալի միջև հակասության շարժման համար։ Բայց մոնոպոլիան չի վերացնում կապիտալիզմի արմատական հակասությունները, թեև նոր ձև է դառնում դրանց ավելի «ազատ» շարժման ու ծավալման համար։ Մոնոպոլիստական կապիտալիզմն ավելի է խորացնում այդ հակասությունը, սրում հումքի և սպառման շուկաների ձեռքբերման և տնտեսական ու քաղաքական ազդեցության ոլորտների ընդլայնման համար մղվող կոնկուրենտային պայքարն ինչպես մոնոպոլիստական միավորումների ներսում ու նրանց միջև, այնպես էլ պետությունների տարբեր խմբավորումների միջև։*

*Մոնոպոլիան հավերժ «ազատ» հնարավորություն չի տալիս կապիտալիզմի արմատական հակասությունների շարժման համար։ Արտադրամիջոցների ավելի խոշոր չափերով համակենտրոնացման և աշխատանքի հետագա հան-*

* *Տպագրվում է հարցադրման կարգով։ Խմբ.։*

բայնացման շնորհիվ այն, ի վերջո, արտադրության զարգացման համար կա-
պանք է դառնում։ Վերանում են աշխատանքի ու կապիտալի միջև հակասու-
թյան «ազատ» շարժման հնարավորությունները։ Հակասությունների արմա-
տական հաղթահարումը հասունանում և կենսական անհրաժեշտություն է
դառնում։

Վ. Ի. Լենինի կողմից իմպերիալիզմի բնութագրումը որպես կապիտալիզ-
մի բարձրագույն, վերջին ստադիա, խոսում է հենց այն մասին, որ մոնոպո-
լիան աշխատանքի ու կապիտալի միջև հակասության գոյության վերջին ձևն
է։ Արտադրության կապիտալիստական ձևի ոչնչացմամբ արմատապես հաղ-
թահարվում ու վերացվում է աշխատանքի հասարակական բնույթի և յուրաց-
ման մասնավոր ձևի միջև եղած հակասությունը։ Դրա հետ միասին «ոչնչա-
նում են ոչ միայն կոնկուրենցիան, մոնոպոլիան և դրանց անտագոնիզմը, այլ
նաև դրանց միասնությունը, դրանց սինթեզը՝ շարժումը» (Կ. Մարքս և
Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, 1950, էջ 578)։

Նյութական բարիքների արտադրության սոցիալիստական եղանակն ար-
մատապես տարբերվում է արտադրության կապիտալիստական եղանակից։
Այդ պատճառով էլ սոցիալիստական հասարակության մեջ գործում է այնպի-
սի նոր հիմնական հակասություն, ինչպիսին հասարակության հարաճուն պա-
հանջմունքների և արտադրության միջև եղած հակասությունն է։ Այս հակա-
սությունն իր ծագման, զարգացման ու լուծման առանձնահատկություններով
ևս տարբերվում է կապիտալիզմի հիմնական հակասությունից։

Նկատի ունենալով այն հանգամանքը, որ մարքսիստական փիլիսոփայա-
կան գրականության մեջ տարբեր կարծիքներ կան սոցիալիստական հասարա-
կության հիմնական հակասության վերաբերյալ, նպատակահարմար է այդ
հակասության շարժման օրինաչափությունները քննարկել հասարակական
կյանքի մի քանի այլ արմատական հակասությունների հետ կապի մեջ։

Փիլիսոփայական և, հատկապես, տնտեսագիտական գրականության մեջ
շատ է խոսվել արտադրության և սպառման միջև եղած հակասության մասին։
Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատություններում բազմաթիվ հիշա-
տակումներ կան այդ հակասության ծագման, զարգացման ու լուծման օրի-
նաչափությունների և հասարակական կյանքի համար նրա նշանակության
մասին։ Թվում էր, թե տարակարծություններ չեն լինի արտադրության և սպառ-
ման միջև հակասության շուրջը։ Բայց փաստ է, որ որոշ հեղինակներ «պա-
հանջմունք» և «սպառում» հասկացությունները նույնացնելով, առանց հիմ-
նավոր պատճառի ընդլայնում են արտադրության և սպառման միջև հակա-
սության շրջանակները, գերագնահատում դրա գործողության նշանակությունը
և նույնիսկ այն դիտում որպես սոցիալիստական հասարակության հիմնական
հակասություն։ «Պահանջմունք» և «սպառում» հասկացությունների նույնա-
ցումը որոշ հեղինակների նետում է հակառակ ծայրահեղության գիրկը։

«Պահանջմունք» և «սպառում» հասկացությունները տարբեր բովանդա-
կություն ունեն, արտացոլում են մարդկանց գործունեության թեև միմյանց
հետ սերտորեն կապված, բայց որակապես տարբեր կողմերը։ Ահա թե ինչու
չի կարելի շփոթել ինչպես պահանջմունքն ու սպառումը, այնպես էլ այն հա-
կասությունները, որ ծագում են արտադրության ու պահանջմունքների և ար-
տադրության ու սպառման միջև։ Արտադրության և սպառման միջև հակասու-
թյունը ընդհանուր սոցիալական հակասություն է։ Այն դրսևորվել է բոլոր
հասարակական-տնտեսական ֆորմացիաներում։ Ըստ որում, ոչ մի տեղ այն



հիմնական չի եղել, այն հիմնական չէ նաև սոցիալիստական հասարակության
մեջ, որովհետև հասարակական կյանքի զարգացման հիմնական տենդենցը
որոշվում է ոչ թե արտադրության և սպառման, այլ արտադրության և պա-
հանջմունքների փոխհարաբերությամբ։

Վ. Ի. Լենինը, քննադատելով մանրբուրժուական տնտեսագետների հա-
յացքները, որոնք փորձում էին աղավաղել արտադրության ու սպառման
փոխհարաբերության մարքսիստական ըմբռնումը, ցույց է տալիս, թե
ինչ է նկատի ունենում Մարքսը՝ արտադրության ու սպառման միջև
հակասություն ասելով։ Այդ հակասության գոյության հիմքը ամենևին էլ
ապրանքների իրացման դժվարությունները չեն։ Մինչև իսկ միանգամայն
պրոպորցիոնալ, իդեալականորեն հարթ իրացման դեպքում անհնարին է կա-
պիտալիզմը պատկերացնել առանց արտադրության և սպառման միջև գոյու-
թյուն ունեցող հակասության։ «Մենք լիովին կարող ենք պատկերացնել...
ամբողջ պրոդուկտի իրացումը կապիտալիստական հասարակության մեջ ա-
ռանց որևէ հավելուրդային պրոդուկտի, բայց մենք չենք կարող պատկերացնել
կապիտալիզմն առանց արտադրության և սպառման անհամապատասխանու-
թյան։ Այդ անհամապատասխանությունն արտահայտվում է... նրանով, որ ար-
տադրության միջոցների արտադրությունը կարող է և պետք է առաջ անցնի
սպառման առարկաների արտադրությունից» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 4, էջ
199—200)։

Լենինի խոսքերից հետևում է, որ արտադրության և սպառման միջև հա-
կասության գոյության բազան արտադրամիջոցների արտադրության և սպառ-
ման առարկաների արտադրության տարբերությունն է, սպառման նկատմամբ
արտադրության առաջնությունը։ Նյութական բարիքների արտադրության պրո-
ցեսում այդ հակասությունը թեև անընդհատ լուծվում է, բայց չի վերացվում։
Արտադրության նպատակը, վերջին հաշվով, սպառումն է։ Սրանք փոխադար-
ձաբար միմյանց պայմանավորում են. արտադրությունը ելակետն է, այն
սպառում է ստեղծում, իսկ սպառումը, իր հերթին, ավարտելով արտադրու-
թյան այս կամ այն կոնկրետ պրոցեսը, ստեղծում է նոր արտադրության հնա-
րավորություն։

Սոցիալիստական հասարակության մեջ սպառման հետ արտադրության
կապը անմիջական է, արտադրության նպատակը մարդկանց նյութական ու
կուլտուրական պահանջմունքների բավարարումն է։ Արտադրության զարգաց-
ման զուգընթաց աճում է ժողովրդական սպառումը, մեծանում է մասսաների
գնողունակությունը, սպառումը համապատասխանեցվում է արտադրությանը,
վերանում է տնտեսական ճգնաժամերի հնարավորությունը։ Սակայն, դա չի
նշանակում, թե սպառումն առաջ է անցնում արտադրությունից, ինչպես
ոմանք կարծում են։ Սպառումը լավագույն դեպքում կարող է միայն համա-
պատասխան լինել արտադրությանը, որովհետև սպառել կարելի է միայն այն,
ինչ արտադրված է։ Արտադրության և սպառման լիակատար «իդեալականորեն
հարթ» համապատասխանության դեպքում անգամ սպառումը հաջորդում է
արտադրությանը։ Սոցիալիստական հասարակության առանձնահատկությունն
ամենևին էլ նրանում չէ, որ սպառումն առաջ է անցնում արտադրությունից
(որը երբեք հնարավոր չէ), այլ նրանում, որ սպառումը կարող է համապա-
տասխան լինել արտադրությանը։ Դա սոցիալիզմի ժամանակ տնտեսության
պլանային-պրոպորցիոնալ զարգացման օրենքի գործողության արտահայտու-
թյունն է։

Սպառումը և պահանջմունքները որոշվում են արտադրությամբ։ Դա ընդհանուր առմամբ ճիշտ է, բայց դրանով հարցը չի պարզաբանվում։ Անհրաժեշտ է բացահայտել նաև արտադրությամբ պայմանավորված լինելու այն առանձնահատուկ կապերը, որոնք սպառման և պահանջմունքի տարբերության հիմքն են։

Սպառումը պայմանավորված է արտադրությամբ, ավելի ճիշտ, արտադրվող միջոցների քանակով ու որակով, այլ կերպ ասած, սպառման անմիջական հիմքը արտադրությունն է՝ իրականություն դարձած իր արդյունքներով։ Մինչդեռ, մարդկանց պահանջմունքների օբյեկտիվ հիմքը հասարակական կյանքի զարգացմամբ ձեռք բերված նվաճումներն են։ Այդ պահանջմունքների անմիջական չափանիշը արտադրության զարգացման մակարդակն է, իսկ տնտեսական հիմքը զարգացման այդ մակարդակով որոշվող արտադրության կարողությունները, այսինքն՝ նյութական բարիքների արտադրությունն իր օբյեկտիվ հնարավորություններով։ Մինչդեռ նրանց սոցիալական հիմքը մարդկանց շահերն են, որոնք նույնպես օբյեկտիվ բովանդակություն ունեն։ Պահանջմունքները ձևավորվում են շահերի գիտակցման շնորհիվ։ Շահերը չեն դրսևորվում այլ կերպ, քան հենց պահանջմունքների մեջ ու նրանց միջոցով, որոնք իրենց հերթին մարմնավորվում են այս կամ այն որոշակի նպատակի մեջ։ Պահանջմունքը մարդկանց մոտ ո՛չ միայն նպատակի, այլև որոշակի կամքի հիմք է դառնում, որը նպատակի իրականացման պահանջով մարդկանց գործողության է մղում։ Ըստ որում, մարդկանց կամքը գործողության փոխարկելու շարժառիթը նրանց շահագրգռվածությունն է իրենց այդ գործունեության արդյունքների մեջ։ Մարդկանց շահագրգռվածությունը որպես շարժառիթ նրանց կամքի ներքին բովանդակությունն է։

Մարդկանց պահանջմունքի հիմքը նյութական և հոգևոր բարիքների արտադրության կարողություններն են։ Միայն այս առումով է պահանջմունքը (ոչ թե սպառումը) առաջ անցնում արտադրությունից։ Բայց պահանջմունքը սերտորեն կապված է սպառման հետ։ Այն մարդու համար ինքնըստինքյան ոչինչ է, եթե սպառման միջոցով բավարարում չի ստանում։ Սպառումը բավարարվող պահանջմունք է։ Պահանջմունքները բավարարվում են միայն սպառման միջոցով։ Իսկ սպառման համար անհրաժեշտ է, որ մարդիկ ունենան սպառման հնարավորություններ, այսինքն՝ իրենց գնողունակությամբ և հասարակական դրությամբ իրավունք ունենան այս կամ այն չափով ու ձևով օգտվելու ձեռք բերված նյութական և հոգևոր բարիքներից։

Պահանջմունքը սպառումից որակապես տարբերվում է արտադրության զարգացման համար իր ունեցած նշանակությամբ։ Սպառումը նոր արտադրության հնարավորություն է ստեղծում, իսկ պահանջմունքն արտադրության զարգացման խթան է դառնում։ Սպառումը բավարարվող պահանջմունք լինելով, վերջին հաշվով, պահանջմունքի գործողության արտահայտությունն է։

Արտադրության զարգացման միջոցով հասարակական պահանջմունքները թեև բավարարվում են, սակայն արտադրության և պահանջմունքների միջև հակասությունը չի վերանում։ Ընդհակառակը, եթե պահանջմունքների բավարարմամբ հակասությունը մի կողմից լուծվում է, ապա մյուս կողմից այն ավելի է ծավալվում։ Դա բացատրվում է նրանով, որ մարդկանց պահանջմունքները արտադրության զարգացման զուգընթաց փոփոխվում, նոր բովանդակություն են ստանում։

Սպառումն ու պահանջմունքն արտահայտում են որակապես տարբեր սո-



ցիալական երևույթներ։ Այդ պատճառով արտադրության ու սպառման, արտադրության ու պահանջմունքների միջև հակասությունները չի կարելի նույնացնել։ Սոցիալիստական հասարակության հիմնական հակասությունը հասարակության նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների և արտադրության միջև հակասությունն է։

Հասարակական կյանքի հիմքը նյութական բարիքների արտադրությունն է։ Արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև հակասության շարժմամբ պետք է բացատրել հասարակական կյանքի դիալեկտիկան, հասարակական-տնտեսական մեկ ֆորմացիայից մյուսին անցնելու օրինաչափությունները, սոցիալական հեղափոխությունների արմատական պատճառները և այլն։ Սակայն, սոցիալիզմի պայմաններում արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև հակասությունը տնտեսական հարաբերությունների ներքին աղբյուրը լինելով, իրենով չի բնութագրում հասարակական կյանքի զարգացման հիմնական տենդենցը, չի արտահայտում հասարակական գործունեության հիմնական նպատակը՝ մարդկանց պահանջմունքների բավարարումը։ Ահա թե ինչու ճիշտ չէր լինի սոցիալիստական հասարակությունում արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև եղած հակասությունը հիմնական համարել։ Ճիշտ չէր լինի նաև ժխտել այն սերտ կապը, որ գոյություն ունի այդ հակասությունների միջև։ Դրանց ծագման, զարգացման ու լուծման ընդհանուր հիմքը նյութական բարիքների արտադրության սոցիալիստական եղանակն է։ Արտադրաուժերի և արտադրահարաբերությունների միջև հակասության լուծումը, որի անմիջական նպատակը արտադրության հետագա զարգացումն է, սոցիալիստական հասարակության հիմնական հակասության լուծման անհրաժեշտ պայմաններից մեկն է։

Սոցիալիստական հասարակության հիմնական հակասությունն իր անմիջական արտահայտությունն է գտնում նաև հասարակության և բնության փոխհարաբերություններում։

Հասարակության և բնության միջև հակասության ակտիվ, անընդհատ զարգացող ու փոփոխվող կողմը հասարակությունն է իր մտավոր ու արտադրական գործունեությամբ։ Բնության և հասարակության միջև հակասության լուծման նպատակը մարդկանց պահանջմունքների բավարարումն է։ Վերջին հաշվով, արտադրության զարգացմամբ են ծագում ու լուծվում հակասությունները թե՛ արտադրության ու հասարակական պահանջմունքների միջև և թե՛ հասարակության ու բնության միջև։ Բնության և հասարակության միջև հակասության լուծումը հասարակության հարաճուն պահանջմունքների և արտադրության միջև հակասության լուծման անհրաժեշտ պայմանն է։

Բնությունը մարդկանց պահանջմունքների բավարարման ոչ միայն աղբյուր է, այլև այն օբյեկտիվ հիմքը, որը, վերջին հաշվով, պայմանավորում է մարդկանց պահանջմունքների ու նպատակների ձևավորումը։ Մարդու նպատակները լինելով նրա ռեալ պահանջմունքների մարմնավորումը, օբյեկտիվ աշխարհի ծնունդն են, թեև «... մարդուն թվում է, թե իր նպատակներն աշխարհից դուրս են վերցված, աշխարհից անկախ են» (Լենին, Երկեր, հ. 38, էջ 230)։ Իր պրակտիկ գործունեության մեջ մարդը միշտ էլ ելնում է օբյեկտիվ աշխարհից։ Այդ գործունեությունը հասարակական կյանքի զարգացման յուրաքանչյուր մոմենտում ունի որոշակի բովանդակություն և հետապնդում է մարդկանց որոշակի պահանջմունքների բավարարման նպատակ։ Բայց բավարարված պահանջմունքների փոխարեն մարդկանց մոտ ձևավորվում են նոր

պահանջմունքներ, ծագում են նոր նպատակներ ու խնդիրներ։ Ահա թե ինչու յուրաքանչյուր տվյալ մոմենտում «...աշխարհը չի բավարարում մարդուն և մարդը իր գործողությամբ որոշում է փոխել այն» (Նույն տեղը, էջ 261)։

Սակայն տվյալ կոնկրետ պայմաններում ինչպիսի՞ գործունեություն պետք է ծավալել, ինչպիսի՞ նպատակներ ու խնդիրներ դնել, դրանք անմիջականորեն կախված են մարդկանց մտավոր ու արտադրական կարողություններից։ «... մարդկությունը միշտ առաջադրում է իրեն լոկ այնպիսի խնդիրներ,— ասում է Մարքսը,— որ ինքը կարող է լուծել, որովհետև մոտիկից քննելով միշտ պարզվում է, որ հենց ինքը՝ խնդիրը ծագում է միայն այն ժամանակ, երբ նրա լուծման նյութական պայմաններն արդեն գոյություն ունեն կամ, գոնե, գտնվում են լինելության պրոցեսում» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 1, 1950, էջ 428)։

Մարդու մոտ ռեալ պահանջմունքների ու նպատակների ընդհանուր օբյեկտիվ հիմքն արտաքին աշխարհը, բնությունն է, իսկ դրանց ձևավորման անմիջական աղբյուրը հասարակական արտադրության զարգացումն է, բնության նկատմամբ մարդու հզորության մեծացումը։ Հասարակության և բնության միջև հակասության լուծումը մարդկանց հարաճուն պահանջմունքների բավարարման միջոց է։

Դժվար չէ նկատել, որ մարդկանց պահանջմունքների և արտադրության միջև հակասությունն ընդհանուր սոցիալական նշանակություն ունի։ Այն արտադրության և սպառման, արտադրաուժերի և արտադրահարաբերությունների, հասարակության և բնության միջև հակասությունների նման դրսևորում է հասարակական-տնտեսական բոլոր ֆորմացիաներում, տարբեր պատմական ժամանակաշրջաններում ունենալով տարբեր բովանդակություն, ծագման, զարգացման ու լուծման տարբեր առանձնահատկություններ։ Եթե դա այդպես է, ապա հարց է ծագում, թե ինչու մարդկանց պահանջմունքների և արտադրության միջև հակասությունը, ընդհանուր սոցիալական բնույթ կրելով հանդերձ, սոցիալիստական հասարակության հիմնական հակասությունն է, իսկ մյուս հասարակական ֆորմացիաներում գործում են այլ հիմնական հակասություններ։

Միշտ էլ «շահերն են շարժում ժողովուրդների կյանքը» (Լենին), շահերն են դրսևորվում որոշակի պահանջմունքների ձևով և բովանդակություն տալիս մարդկանց բոլոր գործողություններին։ Շահերի բնույթը պայմանավորված է նյութական բարիքների արտադրության գոյություն ունեցող եղանակով։ Եթե արտադրության զարգացման մակարդակը, նրա օբյեկտիվ կարողությունները որոշում են հասարակական պահանջմունքների շրջանակն ընդհանրապես, ապա տվյալ պայմաններում տիրապետող արտադրահարաբերությունները դիֆերենցում և իրենց բնույթին համապատասխան կոնկրետություն են մտցնում այդ պահանջմունքների մեջ։ Մասնավոր սեփականության պայմաններում հասարակությունը բաժանված է հակադիր շահեր ու նպատակներ հետապնդող սոցիալական խմբերի։ Այլ կերպ չի կարող լինել, որովհետև անտագոնիզմի պայմաններում արտադրահարաբերությունները տիրապետման ու ենթարկման հարաբերություններ են։ Արտադրամիջոցների ու գործիքների սեփականատեր դասակարգերի և աշխատավոր մասսաների շահերն ու պահանջմունքները չեն կարող միատեսակ լինել։ Մասնավոր սեփականության շնորհիվ դրանք տրոհվում ու հակադրվում են միմյանց։ Ուստի, արտադրության նկատմամբ հասարակությունը միասնական պահանջմունքներ չի ներկայացնում։ Աշխատա-



վոր մասսաների անմիջական նպատակն ամենևին էլ արտադրության զարգացումը չէ, այլ նյութական բարիքների բաշխման ձևի փոփոխումը։ Մինչդեռ, տիրապետող դասակարգերի նպատակը գոյություն ունեցող արտադրահարաբերությունների պահպանումն է, քանի որ արտադրության զարգացման տվյալ պայմաններում այդ հարաբերություններն են ապահովում աշխատանքի շահագործումը։

Սոցիալիստական հասարակության մեջ արտադրամիջոցների ու գործիքների հանրային սեփականության շնորհիվ փոխվում է հասարակության սոցիալական կառուցվածքը. հասարակությունը հետզհետե դառնում է սոցիալապես միատարր։ Դրա շնորհիվ միասնական են դառնում մարդկանց արմատական շահերն ու նպատակները։ Հասարակական պահանջմունքներն այլևս չեն տրոհվում հակադրությունների։ Արտադրության և հասարակության միասնական պահանջմունքների փոխհարաբերությունը նոր բովանդակություն է ստանում։ Մարդկանց գործունեության նպատակը դառնում է հասարակության հարաճուն պահանջմունքների բավարարումը։ Ահա թե ինչու, սոցիալիստական հասարակության մեջ, ի տարբերություն անտագոնիստական հասարակությունների, հիմնական է մարդկանց հարաճուն պահանջմունքների և արտադրության միջև հակասությունը։

Մեր հասարակության սոցիալական միասնությունը ամենևին չի բացառում հակադրությունների միասնության ու պայքարի օրենքի գործողությունը սոցիալիզմի ժամանակ։ Ընդհակառակը, այդ միասնությունը նոր բովանդակություն է տալիս նրան։ Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու շրջանում որքան ամրապնդվում է հասարակության սոցիալական միասնությունը, այնքան ավելի աննշան են դառնում դասակարգային հասարակություններին բնորոշ հակասությունները։ Այնպես որ սոցիալիստական հասարակության պահանջմունքների և արտադրության միջև հակասությունն անցման շրջանում ևս շարունակում է մնալ որպես հասարակական կյանքի հիմնական հակասություն։

## Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ամյակի առթիվ

# ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ՑԵՆՏՐԱԼԻԶՄԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԸ

ՍՈՒՔԻԱՍՅԱՆ Հ. Ռ.

*Բոլշևիզմի կազմակերպական ղեկավար սկզբունքի՝ դեմոկրատական ցենտրալիզմի ճշգրիտ ըմբռնումն ու կիրառումը միշտ էական նշանակություն է ունեցել մեր կուսակցության համար։*

*Պատմական փորձը, կյանքը հաստատում է, որ որքան վեհ ու բարդ են կուսակցության խնդիրները, այնքան ավելի մեծ է նրա դերն ու նշանակությունը, այնքան ավելի կարևոր է դառնում դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի անշեղ կիրառումը։*

*ՍՄԿԿ XXIII համագումարը հատուկ ուշադրություն նվիրեց այդ հարցին և արձանագրեց, որ վերջին տարիներին, անհատի պաշտամունքի վնասակար հետևանքների վերացումից հետո, դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը ստացել է իր հետագա զարգացումը։ Համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկ. Լ. Ի. Բրեժնևը ասաց, որ «ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն վերջին ժամանակներս մի շարք կարևոր քայլեր արեց այդ ուղղությամբ։ Դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի զարգացումն իր արտահայտությունը գտավ կենտրոնում ու տեղերում կոլեկտիվ ղեկավարման սկզբունքի հետագա ամրապնդման մեջ, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների, ինչպես նաև տեղական կուսակցական օրգանների պլենումների դերը բարձրացնելու, կադրերի նկատմամբ լիակատար վստահություն ցուցաբերելու և ներկուսակցական ինֆորմացիան բարելավելու մեջ» («ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերը», Երևան 1967, էջ 116)։*

*Վ. Ի. Լենինը նշում էր, որ դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքը կուսակցության բոլոր ղեկավար մարմինների ընտրությունն է ներքևից վերև, այդ մարմինների պարբերական հաշվետվությունն իրենց կազմակերպությունների և վերադաս մարմինների առջև, կուսակցական խստագույն կարգապահություն, փոքրամասնության ենթարկումը մեծամասնությանը, վերադաս մարմինների որոշումների պարտադիր լինելը ստորադասների համար։*

*Դեմոկրատական ցենտրալիզմը կուսակցության գործունեության անառարկելի պայմանն է, այդ գործունեության անխախտ նախադրյալը, որն ապահովում է խիստ կարգապահություն, միավորում կուսակցության ուժերը*



*հանուն միասնական նպատակի, զարգացնում կուսակցական մասսաների ակտիվությունն ու ինքնագործունեությունը։*

*Կուսակցության բոլոր անդամների համար կա մի կարգապահություն, որը պարտադիր է թե՛ շարքայինների, թե՛ ղեկավարների համար։ Առանց նման երկաթյա կարգապահության կուսակցությունը չէր կարող Ռուսաստանի բանվոր դասակարգին հասցնել Հոկտեմբերյան հաղթանակին։*

*Դեմոկրատական ցենտրալիզմը օրգանապես կապված է կուսակցության կազմակերպական մյուս սկզբունքների հետ, այն իրագործում է կուսակցության կապը ժողովրդական մասսաների հետ, ղեկավարում, սովորեցնում նրանց և սովորում նրանցից։ Այդ սկզբունքի մեջ իր առավել ցայտուն դրսևորումն է գտնում բոլշևիկյան կուսակցության զարգացման հիմնական օրենքը՝ քննադատությունն ու ինքնաքննադատությունը։*

*Հայտնի է, որ դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի դեմ աջից պայքարել են օպորտունիստները, ձախից՝ անարխիստներն ու անարխոսինդիկալիստները։ Չհասկանալով լենինյան սկզբունքի դիալեկտիկան, նրանք անջատում էին ցենտրալիզմը դեմոկրատիզմից, դրանք հակադրում իրար, հարցն այսպես դնում՝ կամ ցենտրալիզմ, կամ դեմոկրատիզմ։ Այս հարցում աջերին ու ձախերին մոտեցնում, նույնացնում էր ո՛չ միայն նրանց մտածողության միակողմանիությունը, այլև այն, որ երկուսն էլ ժխտելով ցենտրալիզմը, բացարձականացնում էին դեմոկրատիզմը, կառչում նրանից։*

*1921 թվականին իր «Հանուն կուսակցության» հոդվածում Ա. Մյասնիկյանը գրում էր. «...բոլշևիկյան ցենտրալիզմն* ըստ էության դեմոկրատիզմի *հետ միասին դարձավ այնպիսի կազմակերպական շինարարության ձև, որն ստեղծեց կոմունիստների ուժեղ, կարգապահ և առողջ մասսայական կուսակցություն։ Մեր դեմոկրատական ցենտրալիզմը հանդիսանում է* կենտրոնացված ընտրական կուսակցական կազմակերպությունների սկզբունքը, որի մեջ մասն իրեն է ենթարկում ամբողջին, որտեղ տեղական շահերը զարգացվում և համաձայնեցվում են ընդհանուր շահերի հետ, որտեղ կուսակցության յուրաքանչյուր պտուտակ գիտի իր տեղը և ունի իր դերը, որոնց մեջ պահպանվում է պրոլետարական խիստ կարգապահություն, որտեղ յուրաքանչյուր օրգան, յուրաքանչյուր աշխատող լիակատար պատասխանատվություն է կրում իր բոլոր գործողությունների ու քայլերի համար» *(Ընտիր Երկեր, Երևան, 1957, էջ 297)։*

*Հեղափոխական շարժման պատմական զարգացման ընթացքում առաջին պլանի վրա է գտնվել դեմոկրատական ցենտրալիզմի՝ երկմիասնական այդ սկզբունքի, մերթ մի կողմը, մերթ՝ մյուս։ Այդ է վկայում լենինյան կուսակցության պատմությունը։*

*Ինքնակալության դաժան պայմաններում, երբ դեմոկրատիզմի կենսագործումն անհնար էր, Լենինը, լենինյանները շեշտը դնում էին ցենտրալիզմի վրա։ Մենշևիկները, անտեսելով պատմական կոնկրետ պայմանները, ըմբոստանում էին ցենտրալիզմի դեմ, պաշտպանում միայն դեմոկրատիզմը կամ, ինչպես իրենք էին ասում, ավտոնոմիզմը։ Նրանք ամպագորգոռ ճառեր էին ասում անհատ կուսակցականի ազատության մասին, պայքարում «պաշտոնական դրության» դեմ։ Մերկացնելով կազմակերպական օպորտունիզմը,*

Լենինը գրում էր. «Մենք, հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի ներկայացուցիչներս «մեծամասնության» կողմնակիցներս, շատ անգամ ենք ասել, որ կուսակցության մինչև վերջը կիրառած դեմոկրատականացումը անկարելի էր կոնսպիրատիվ աշխատանքի պայմաններում, որ «ընտրական սկզբունքն» այդ պայմաններում ֆրազ է» (Երկեր, հ. 10, էջ 19)։ Հակադրվելով մենշևիկների «բյուրոկրատիզմ», «պաշարողական դրություն» և նման հորջորջումներին, Լենինը նշում էր, որ կա դեմոկրատական ցենտրալիզմ, որն հնարավորություն կտա ստեղծելու ամուր պատվար ընդդեմ ինքնակալական կառավարության ճնշման և նրա կատաղի հալածանքների, և կա բյուրոկրատական ցենտրալիզմ, որն անտեսում, արհամարհում է մասսաների շահերը, տեղական հնարավորությունները, տնտեսական կացութաձևը, մասսաների ինքնագործունեությունը։ Նման բյուրոկրատական ցենտրալիզմն ըստ էության տեղայնություն է և ոչ թե ցենտրալիզմ։ Մենշևիզմը չկարողացավ ըմբռնել երկու ցենտրալիզմի տարբերությունը, չտեսավ նրանց երկուսի գոյությունը։

Միապետության պայմաններում շեշտը դնելով դեմոկրատական ցենտրալիզմի մի կողմի՝ «ցենտրալիզմ»-ի վրա, նշելով, դեմոկրատիզմի անհնարինությունը ընդհատակում, Լենինն ամենևին չէր անտեսում դեմոկրատիզմը, այն չէր անջատում «ցենտրալիզմից», չէր հակադրում միմյանց։ Ընդհակառակը, դեմոկրատիզմն ու ցենտրալիզմը նա դիտում էր միասնության մեջ։ Լենինյան այդ սկզբունքի «ցենտրալիզմ» կողմը շեշտվեց մինչև 1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական հեղափոխության հաղթանակը։ Միապետության տապալմամբ ստեղծվեց նոր իրադրություն, կուսակցությունը դուրս եկավ ընդհատակից։ Նոր պայմաններում լենինյան կուսակցությունը, որ ժողովրդական զանգվածների սերտ կապի մարմնացումն է, առաջին պլան մղեց դեմոկրատական ցենտրալիզմի «դեմոկրատիզմ» կողմը։ 1917 թվականի հուլիսյան դեպքերից հետո բոլշևիկները հարկադրված եղան նորից անցնելու ընդհատակ։ Ճիշտ է, կարճատև էր այդ շրջանը, բայց այդ օրերին էլ կուսակցության գործունեության մեջ շեշտվեց «ցենտրալիզմը», իսկ «դեմոկրատիզմը» կիրառվում էր որոշ սահմանափակումներով։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը նոր էտապ բացեց «դեմոկրատական ցենտրալիզմի» կիրառման ասպարեզում։ Հեղափոխության հաղթանակով բոլշևիկյան կուսակցությունը դուրս եկավ ընդհատակից, դարձավ պետական կառավարող կուսակցություն, ընդարձակվեցին դեմոկրատական ցենտրալիզմի կիրառման շրջանակները, այն դարձավ նաև պետական կյանքի ղեկավարման սկզբունք։ Նորից առաջ քաշվեց «դեմոկրատիզմը»։ Գործն այսպես ընթացավ մինչև քաղաքացիական պատերազմի սկիզբը, 1918 թվականի գարունը։ Հեղափոխության և հակահեղափոխության միջև սկսվեց կյանքի և մահու կռիվ։ Երկիրը վերածվեց ռազմական ճամբարի։ Անհրաժեշտ էր բոլոր ուժերն ուղղել հակահեղափոխությունը ջախջախելու, հեղափոխության նվաճումները պաշտպանելու նպատակին։ Այդ շրջանում, բնականաբար, առաջին պլանի վրա դրվեց «ցենտրալիզմը»։

Ինչպես նախընթաց շրջանում, այնպես էլ քաղաքացիական պատերազմի օրերին, կուսակցությունը, պատմական իրականության թելադրանքով ընդգծելով «ցենտրալիզմը», ամենևին չէր անտեսում «դեմոկրատիզմը»։ Նա «դեմոկրատական ցենտրալիզմի» երկու կողմերը դիտում էր դիալեկտիկական միասնության մեջ, որն իր արտահայտությունը գտավ կարմիր բանակի ռազմական շինարարության հարցում։ Այստեղ դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքի վրա հարձակվեցին թե՛ աջից, թե՛ ձախից։ Տրոցկիստները միակողմանիորեն բացարձականացնելով «ցենտրալիզմը», փաստորեն, արհամարհում էին բանակայինների և քաղկոմիսարների կարծիքը։ Բանակում ամուր կարգապահություն հաստատելու դիմակի տակ նրանք թույլ էին տալիս կամայականություն։ Դրա դեմ պայքարելու դրոշով հանդես եկող զինվորական օպոզիցիան, ընդհակառակը, միակողմանիորեն բացարձականացնում էր «դեմոկրատիզմը» և, ըստ էության, դուրս գալիս կանոնավոր, կարգապահ բանվորա-գյուղացիական բանակ ունենալու դեմ։ Կուսակցությունը այդ պայմաններում վճռական պայքար ծավալեց տրոցկիզմի և զինվորական օպոզիցիայի դեմ ու կտրուկ միջոցներ ձեռնարկեց կանոնավոր, գիտակցական, կարգապահ բանակ կազմակերպելու համար։

1921 թվականի գարնանը, երբ քաղաքացիական պատերազմը հիմնականում ավարտվեց և կուսակցությունն անցավ տնտեսական նոր քաղաքականության, իրադրությունն արմատապես փոխվեց։

Նէպը մեծ բեկում էր մեր երկրում։ Նէպի պայմաններում փոխվեցին դեմոկրատական ցենտրալիզմի կիրառման ձևերը, շեշտվեց նրա «դեմոկրատական» կողմը։ Սակայն, երկրում ակտիվանում էր մանրբուրժուական տարերքը։ Դասակարգային թշնամին իր համար նոր սողանցք էր որոնում, կոչ անելով «Կեցցե՛ն սովետները, առանց կոմունիստների»։ Մանրբուրժուական տարերքի կրողները կուսակցության շարքերում օպոզիցիոն զանազան խմբակներ էին կազմել և հանդես էին գալիս որպես «դեցիստներ» կամ «բանվորական օպոզիցիա»։ Սրանք բացարձականացնում էին «դեմոկրատիզմը», անտեսում «ցենտրալիզմը» և թերագնահատում կուսակցության կենտրոնացված ղեկավար դերը։ Արհմիութենական դիսկուսիայում տրոցկիզմը հանդես էր գալիս «արհմիությունները ռազմականացնելու» տխրահռչակ կոչով և գրոյի հավասարեցնում դեմոկրատիզմը։ Դարձյալ նույն պատկերը՝ դեմոկրատական ցենտրալիզմի քննադատություն աջից ու ձախից։ Հակալենինյան այդ երկու ուղղությունները մերժվեց բոլշևիկյան կուսակցության կողմից և նորից ընդգծվեց դեմոկրատական ցենտրալիզմի երկու կողմերի դիալեկտիկական միասնությունը։ Լենինը տրոցկիզմի «արհմիությունները ռազմականացնելու» կոչին հակադրեց «արհմիությունները կոմունիզմի դպրոց են» լոզունգը, շեշտը դնելով «դեմոկրատիզմի» վրա, իսկ, ի հակադրություն «դեցիստների» և «բանվորական օպոզիցիայի», կուսակցության X համագումարը Լենինի առաջարկությամբ հատուկ բանաձև ընդունեց կուսակցության միասնության և մանրբուրժուական օպոզիցիոն խմբերի մասին։ Այդ որոշումը հզոր զենք հանդիսացավ հակամարքսիստական ամեն տեսակ օպոզիցիոն տարրերի դեմ պայքարելու, կուսակցության միասնությունը պահպանելու ու ամրապնդելու գործում։

Իր կյանքի վերջին շրջանում, խորհրդածելով մեր երկրի զարգացման, համաշխարհային կոմունիստական հեղափոխության հեռանկարների, ինչպես նաև կուսակցության ապագայի մասին, Վ. Ի. Լենինը «Ինչպե՞ս վերակազմենք բանգյուղտեսչությունը» աշխատության մեջ, իրեն հատուկ եռանդով ընդգծեց, որ կուսակցության միասնությունը պետք է պահպանել աչքի լույսի պես, քանի որ դրանով է հնարավոր, վերջին հաշվով, պահպանել ու ամրապնդել պրոլետարիատի դիկտատուրայի կենսական հիմքը՝ բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքը։ Նա նշում էր, որ եթե բանվոր դասակարգի և գյուղացիության միջև պառակտում առաջանա, ապա անխուսափելի կդառնա նաև

կուսակցության պառակտումը։ «Բայց մեր սոցիալիստական հասարակարգն իր մեջ անհրաժեշտորեն չի կրում այդպիսի պառակտման հիմքեր,—գրում էր Լենինը,— և մեր Կենտկոմի ու ԿՎՀ-ի, ինչպես նաև ամբողջությամբ վերցրած մեր կուսակցության գլխավոր խնդիրն այն է, որ ուշադիր հետևենք այն հանգամանքներին, որոնցից կարող է պառակտում բխել, և կանխենք դրանք, որովհետև վերջին հաշվով մեր հանրապետության բախտը կախված կլինի այն բանից, թե արդյոք գյուղացիական մասսան կգնա՞ բանվոր դասակարգի հետ՝ հավատարիմ մնալով նրա հետ կնքած դաշինքին, թե՞ թույլ կտա, որ «նէպմանները» այսինքն՝ նոր բուրժուազիան, բաժանեն իրեն բանվորներից, պառակտում մտցնեն նրա և բանվորների միջև»։ Այդ պառակտումը, ինչպես ասում էր Լենինը, «...կործանարար կլիներ սովետական հանրապետության համար» (Երկեր, հ. 33, էջ 577—578)։

Լենինն իր վերջին աշխատություններում բազմիցս ընդգծել է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների կենսական նշանակությունը կուսակցության համար։ Այդ պարզ երևում է «Ինչպես վերակազմենք բանվորա-գյուղացիական տեսչությունը» և «Կոոպերացիայի մասին» աշխատություններում։

Տրոցկիզմի դեմ պայքարում մեծ դեր խաղաց կուսակցության X համագումարի լենինյան որոշումը. ՍՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցման համար եղած անբարենպաստ պայմաններում պահանջվում էր երկաթյա կարգապահություն, զգոնություն, ղեկավարության խիստ կենտրոնացում։ Այս հանգամանքը չէր կարող բացասաբար չանդրադառնալ դեմոկրատական ցենտրալիզմի զարգացման վրա։ Ներկուսակցական և սովետական դեմոկրատիայի որոշ սահմանափակումները, որոնք անխուսափելի էին դասակարգային թշնամու և նրա գործակալների դեմ մղվող պայքարի պայմաններում, իսկ ավելի ուշ՝ գերմանա-ֆաշիստական զավթիչների ջախջախման տարիներին, հնարավորություն ստեղծեցին անհատի պաշտամունքի առաջացման և սոցիալիստական օրինականության խախտման։ Դատապարտելով դրանք, կուսակցության XX, XXII համագումարներում, Կենտրոնական կոմիտեի պլենումներում հատուկ ընդգծվեց մեր կյանքի հետագա դեմոկրատացման անհրաժեշտությունը, որը բխում է կոմունիստական հասարակության կառուցման պահանջներից, հասարակության անդամների ակտիվության բարձրացումից։ Ուստի անհետաձգելի են դառնում տնտեսական և հասարակական կյանքի բոլոր բնագավառների ղեկավարման գիտական հիմունքների կատարելագործումը, սոցիալիստական դեմոկրատիայի, հասարակության կառավարման գործերում ժողովրդական ամենալայն զանգվածների մասնակցությունը, ինքնագործունեության և ինքնավարության ձևերի կատարելագործումը, հասարակության նկատմամբ կուսակցության քաղաքական ղեկավարության մակարդակի բարձրացումը։ «Սոցիալիստական դեմոկրատիայի համակողմանի ծավալում ու կատարելագործում,— ասված է ՍՄԿԿ ծրագրում,— բոլոր քաղաքացիների ակտիվ մասնակցություն պետության կառավարմանը, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարմանը, պետական ապարատի աշխատանքի բարելավում և նրա գործունեության նկատմամբ ժողովրդական վերահսկողության ուժեղացում՝ այս է սոցիալիստական պետականության զարգացման գլխավոր ուղղությունը կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում» («ՍՄԿԿ ծրագիրը և կանոնադրությունը», էջ 123, 1964)։

Սոցիալիստական դեմոկրատիան նպաստավոր պայմաններ է ստեղծում աշխատավորների ամենալայն զանգվածներին ներգրավելու պետական, տըն-



տեսական և հասարակական գործերը վարելու, երկրի ղեկավարմանը մասնակցելու համար։

Մեր երկրի զարգացման օբյեկտիվ ընթացքով այսօր, ավելի քան երբեք, բարձրացել է լենինյան կուսակցության՝ որպես ժողովրդական զանգվածների կազմակերպչի, դաստիարակի ու առաջնորդի դերը։ «ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի, սովետական հասարակության միասնության ամրապնդման շնորհիվ,— ասված է կուսակցության ծրագրում,— բանվոր դասակարգի կոմունիստական կուսակցությունը վերածվեց սովետական ժողովրդի ավանգարդի, դարձավ ամբողջ ժողովրդի կուսակցություն, ընդլայնեց իր ղեկավար ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա» («ՍՄԿԿ ծրագիրը և կանոնադրությունը» էջ 164, 1964)։ Կուսակցությունը ողջամտորեն ունկնդրում է մասսաների ձայնին, արտահայտում նրանց ձգտումները, իր որոշումներում արտացոլում հասարակության զարգացման հասունացած հարցերը։ Մեր կյանքի դեմոկրատացման ցուցանիշ է, օրինակ, այն, որ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի նախաձեռնությամբ վերջին տարիներին համաժողովրդական քննարկման դրվեցին ու լուծվեցին տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր արմատական հարցերը։

Կոմունիստական կուսակցության և ժողովրդի միասնությունը սովետական կարգի ամենախոր դեմոկրատիզմի մարմնացումն է։ Սոցիալիստական դեմոկրատիան անսահմանափակ հնարավորություններ է ընձեռել կյանքի բոլոր բնագավառներում մասսաների ստեղծագործական ակտիվության համար։ Այստեղից պարզորոշ երևում է, որ կուսակցությունը, ձգտելով առավել դեմոկրատացնել կյանքի ոլորտները, չի անտեսում ցենտրալիզմը։ Ինչպես միշտ, այսօր էլ կուսակցությունը դեմոկրատիզմն ու ցենտրալիզմը կիրառում է օրգանական կապի մեջ, որն առավել ակնհայտ է դառնում մեր երկրի տնտեսական կյանքի ղեկավարման ասպարեզում։

Այս տեսակետից սկզբունքային նշանակություն ունեն ՍՄԿԿ Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան և նոյեմբերյան պլենումների որոշումները։ Կուսակցությունն ուղղեց տնտեսական քաղաքականության ասպարեզում թույլ տրված սխալները և վերականգնեց կուսակցության կազմակերպական լենինյան սկզբունքը։ ՍՄԿԿ XXIII համագումարը որոշ փոփոխություններ մտցրեց կուսակցության կանոնադրության մեջ, որոնց նպատակն էր առավել բարձրացնել կուսակցության անդամի կոչումը, կոմունիստների պատասխանատվությունը իրենց կազմակերպությունների և կուսակցության ողջ գործունեության համար։ Համագումարը կոչ արեց զարգացնել ներկուսակցական դեմոկրատիան, ապահովել կուսակցական կազմակերպությունների ակտիվությունը և մարտունակությունը։

Սոցիալիստական էկոնոմիկայի պլանային կառավարման հիմքում դրված է դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքը։ Այն սոցիալիստական տնտեսության պետական ղեկավարումը օրգանապես միացնում է տեղական նախաձեռնությանը, աշխատավորության ստեղծագործական ակտիվությանը։ էկոնոմիկայի մեջ դեմոկրատական ցենտրալիզմի կիրառումը հենվում է խորը սոցիալիստական տնտեսության բնույթի, առաջին հերթին, արտադրամիջոցների հանրային սեփականության վրա։

Իրականացվող տնտեսական ռեֆորմի շնորհիվ, անշուշտ, հետագա զարգացում կստանան դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի տնտեսական ձևերը, մեթոդները։ Խնդիրն այն է,—ասում է Ա. Ն. Կոսիգինը,— որ

հետևողականորեն ներդրվեն այդ մեթոդները, ամրապնդվի և կատարելագործվի կենտրոնացված պլանային ղեկավարումը և միաժամանակ զարգացվեն տնտեսության կառավարման դեմոկրատական հիմունքները, ըստ ամենայնի նպաստեն մասսաների ստեղծագործական ակտիվության ծավալմանը։ Այդ հիմունքների կիրառումը բացառում է որևէ բյուրոկրատիզմ, բյուրոկրատական ցենտրալիզմ, որն, ինչպես Լենինն էր ասում, անտեսում, արհամարհում է մասսաների շահերը, տեղական հնարավորությունները, մասսաների ինքնագործունեությունը։

Ծավալելով բոլշևիկյան քննադատությունն ու ինքնաքննադատությունը, անհրաժեշտ է անդուլ պայքար մղել հանուն կարգապահության ամրապնդման՝ մեր կյանքի բոլոր ոլորտներում։

Սոցիալիստական դեմոկրատիան խարսխված է աշխատավորության գիտակցական կարգապահության վրա։ Ժողովրդական տնտեսության ղեկավարման սիստեմի դեմոկրատացումն ուժեղացնում է անձնական պատասխանատվությունը, բարձրացնում հասարակական պարտքի զգացումը։

Հասարակական կյանքի դեմոկրատացումը նոր հասարակարգի կառուցման գործում հզոր ազդակ է նաև սոցիալիզմի համագործակցության երկրների համար։ Այն մեծ նշանակություն ունի նաև կապիտալիզմի երկրներում գործող կոմունիստական կուսակցությունների, նրանց շուրջը աշխատավորությանը համախմբելու համար։

Դեմոկրատական ցենտրալիզմը մեկընդմիշտ տրված կազմակերպական անփոփոխ սկզբունք չէ, այն զարգանում է, փոխակերպվում, հարստանում նոր գծերով ու հատկանիշներով։ Կազմակերպական այդ սկզբունքի զարգացումը դիալեկտիկական մի պրոցես է, որի մեջ դրսևորվում է իրական կյանքի զարգացման օբյեկտիվ ընթացքը։

Կոմունիզմի կառուցումը անխզելիորեն կապված է ժողովրդական լայն զանգվածների ակտիվության բարձրացման հետ։ Աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը նպաստում է դեմոկրատական ցենտրալիզմի դեմոկրատական կողմի զարգացմանը, ապահովում նրանց մասնակցությունը երկրի կառավարմանը։ Աշխատավորների հասարակական կազմակերպությունների դեմոկրատացումը լծակ է նրանց ինքնագործունեության, կոմունիստական ինքնավարության համար։

Հասարակական-քաղաքական կյանքում վերականգնելով լենինյան նորմերը, կուսակցությունը զարգացնում է դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքները, ապահովում կոմունիստների ավանգարդային դերը կոմունիստական հասարակարգի կառուցման գործում։

# ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ԹԱՓԱՆՑՈՒՄԸ ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

ՊԱՆԿՈ Մ. Ա.

Երբ մենք 20 տարեկան էինք, լսեցինք Լենինի կոչը—Կոմունիստական ինտերնացիոնալի կոչը և մեր ավագ ընկերների հետ ընդգրկվեցինք հեղափոխական մարտիկների այդ հիանալի ջոկատի շարքերը,— ասել է Մորիս Թորեզը 1936 թ., Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության VIII համագումարում։

Դժվար է գերագնահատել լենինյան գաղափարների ազդեցությունը Ֆրանսիայի բանվորական շարժման վրա, ազդեցություն, որը տարածվեց բոլոր բնագավառների, ինչպես և գրականության ու արվեստի վրա։

1934 թվականին առաջին անգամ ֆրանսերեն լույս է տեսել Վ. Ի. Լենինի՝ Կուսակցական կազմակերպությունը և կուսակցական գրականությունը հոդվածը, այնուհետև երեք անգամ այն վերահրատարակվել է Ֆրանսիայի կոմունիստական մամուլում։

Կոմունիստական կուսակցականությունը ֆրանսիական գրականության մեջ առավել ցայտուն սկսեց դրսևորվել Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո։

Հետպատերազմյան առաջին իսկ տարիներին հեղափոխական վերելքի ազդեցությամբ Ֆրանսիայում ստեղծվեց կոմունիստական կուսակցություն. դրան զուգընթաց սկսեցին բուռն զարգանալ հեղափոխական գրականությունն ու արվեստը, որոնց այնքան կարևոր նշանակություն էր տալիս Վլադիմիր Իլյիչը։ Ժողովրդի կենդանի փորձն ու մարտական տրադիցիաներն էին այդ գրականության ու արվեստի աղբյուրը։ Ֆրանսիական կոմունիստական գրականության ստեղծման համար մղվող պայքարում (որն սկիզբ է առել մինչև ֆրանսիական կոմունիստական կուսակցության կազմավորումը) մեծ է եղել Վ. Ի. Լենինի դերը։ Այս շրջանով է բնորոշվում ֆրանսիական գրականության մեջ կոմունիստական կուսակցականության ձևավորման առաջին փուլը։

XIX դարի վերջերի, XX դարի սկզբների ռեալիստական արձակում իր դեմոկրատական հայացքներով առանձնապես աչքի էր ընկնում Անատոլ Ֆրանսը։ Բայց նա միայն գրող չէր, այլև՝ մարտիկ։ Նրա գործունեության մեջ քաղաքական կիրքը երևան էր գալիս այն պահերին, երբ բախվում էր չարիքի՝ ռեակցիայի հետ։ Եթե այդ անբասիր ոճաբանի գեղարվեստական ստեղծագործության մեջ նրան կրնկակոխ հետևում էին պատմության «անիմաստ շրջա-

պտույտի» գաղափարները, ապա քաղաքական-հասարակական իր գործունեությամբ Ա. Ֆրանսը, Մարսել Կաշենի խոսքերով ասած՝ «...ամենևին էլ սկեպտիկ չէր. ընդհակառակը, նա կրքոտ քաղաքագետ էր... Հենց 1898 թվականին՝ «Դրեյֆուսի գործի» կապակցությամբ նա մտավ կուսակցական պայքարի մեջ։ Այդ պահից ի վեր նա չէր դադարում այդ պայքարին ակտիվ մասնակցելուց» (Marcel Cachin, «Anatol France et l'idée revolutionnaire». Ecrits et portraits, Editeurs Français Réunis, Paris 1964, p. 131—132)։

1905 թվականին Անատոլ Ֆրանսին ոգեշնչում էին Ռուսաստանում տեղի ունեցող հեղափոխական իրադարձությունները։ Ինչպես վկայում է Մարսել Կաշենը, 1905 թ. հեղափոխության ժամանակ Ֆրանսն ակտիվ մասնակցում էր բոլոր այն միջոցառումներին, որոնց նպատակն էր մերկացնել ցարական բռնակալությունը Ռուսաստանում։ Միտինգներում ու մամուլում նա հանդես էր գալիս ի պաշտպանություն ռուսական հեղափոխության և նշավակում էր մահաբեր ցարիզմի ու ֆրանսիական բուրժուազիայի հրեշավոր դաշինքը բռնակալների հետ։ Այդ տարիներին Ֆրանսը մտերմացավ սոցիալիստական կուսակցության լիդեր Ժան Ժորեսի հետ և մտավ սոցիալիստական կուսակցության շարքերը։ Ռուսական հեղափոխության ճնշումը՝ 1905—1907 թվականներին, ծանր անդրադարձավ հումանիստ գրողի վրա. հոռետեսությունն ու շփոթվածությունը պաշարեցին նրան։

Անատոլ Ֆրանսի այնպիսի երկեր, ինչպիսիք են՝ **Պինգվինների կղզին, Աստվածները ծարավի են** և **Հրեշտակների ապստամբությունը**, որոնք երևան եկան 1907 թվականից հետո, կենսահաստատ տրամադրություններից նրա հեռանալու վկայությունն են։

Սակայն իր այդ տարիների հասարակական գործունեությամբ Ֆրանսն ավելի շատ լավատես է, քան հոռետես։ Այս առթիվ հատուկ ուշադրության է արժանի 1911 թվականի փետրվարի 12-ին «Յումանիտե» թերթում հրապարակված նրա **Դյուրանի գործը** հոդվածը (Ժյուլ Դյուրանը ածխագործ դոկերների արհմիության քարտուղարն էր, որին ֆրանսիական իշխանությունները անարդարացի դատապարտել էին մահապատժի)։

Պահանջելով անհապաղ բանտից ազատել Դյուրանին, Ֆրանսը բոցաշունչ կոչով դիմում է բանվոր դասակարգի հզոր ջոկատին։ Պրոլետարական միասնության, միաձուլության, հանուն իսկական ազատության մղվող պայքարի ոգով է համակված նրա նամակի ամեն մի տողը։

Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության ստեղծումը բարենպաստ ազդեցություն ունեցավ Ֆրանսի հասարակական-քաղաքական գործունեության վրա։ 1921 թվականի հունվարի սկզբներին (Տուրի պատմական համագումարից հետո) նա առաջին գրողներից էր, որ մտավ կոմունիստական կուսակցության շարքերը։ Ջառամյալ, պատկառազդու գրողը բանվոր դասակարգի կուսակցության մեջ մտավ որպես ազնիվ հայրենասեր, խորապես հասկանալով, որ կոմունիստները պայքարում են ամենամարդասիրական գաղափարի հաղթանակի համար, և որ իմպերիալիզմի կողմնակիցների քաղաքականությունը աղբյուրն է այն ողջ չարիքի, որից տառապում է մարդկությունը և որ հարկավոր է մեկընդմիշտ վերջ տալ այդ չարիքին։

Մարսել Կաշենի վկայությամբ Լենինին խիստ հուզել էին Ֆրանսի հոդվածները հեղափոխության մասին. այսպես՝

1922 թվականի նոյեմբերի 8-ին Անատոլ Ֆրանսը «Յումանիտեում» հրա-



պարակեց **Ողջույն սովետներին** հոդվածը։ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հինգերորդ տարեդարձին նվիրված իր այս ուղերձում նա գրում էր, որ սովետական հանրապետությունն «...իր հետ բերել է մի նոր ոգի, վտանգ սպառնալով բոլոր այն պետություններին, որոնք վարում են ճնշման և անարդարության քաղաքականություն... Եթե Եվրոպայում դեռ կան արդարության բարեկամներ, թող հարգանքով ողջունեն այդ հեղափոխության հինգերորդ տարեդարձը, հեղափոխություն, որն այնքան դարերից հետո աշխարհին բերել է ժողովրդի համար կառավարող, ժողովրդի կողմից իրականացվող իշխանության փորձը» (Salut aux Soviets, Le PCF, La culture et les intellectuels, Editions Sociales, P. 1962, p. 237)։

Կառավարական իդեոլոգիական ապարատը դեռ մինչև առաջին համաշխարհային պատերազմը «դաստիարակել էր» մի շարք ազգայնական գրողների, որոնք արդարացնելով ֆրանսիական միլիտարիզմը, քարոզելով լատինական ռասայի գերազանցությունը գերմանական ռասայի նկատմամբ, զարգացնում էին ծայրահեղ ազգայնականության գաղափարները։ Ֆրանսիական գրականության այդ աննախընթաց անկումը ծանր անդրադարձավ առաջավոր մտավորականության վրա։ Շովինիստական միլիտարիզմի վտանգի տակ էր դրված համաշխարհային կուլտուրայի բախտը։ Մարդկությունը, ինչպես նշում էր Վ. Ի. Լենինը, կանգնած էր երկընտրանքի առաջ. «...կամ զոհաբերել ամբողջ կուլտուրան, կամ թե չէ հեղափոխական ճանապարհով թոթափել կապիտալիստական լուծը, վերացնել բուրժուազիայի տիրապետությունը և նվաճել սոցիալիստական հասարակություն ու կայուն հաշտություն» (հ. 26, էջ 473)։ Հիրավի, համաշխարհային կուլտուրան փրկվեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությամբ։

Ֆրանսիայում ձևավորվեց հեղափոխական գրականությունը, որի ամենացայտուն ներկայացուցիչն էր Հանրի Բարբյուսը։ Անձամբ ապրած լինելով ճակատային կյանքի բոլոր սարսափները, Բարբյուսը **Կրակը** պատմական վեպում շարադրել է իր բոլոր ապրումներն ու հուզումները։ Նրա պատկերած բոլոր ռազմաճակատային աղետներն ընթերցողի հոգում ատելություն են սերմանում իմպերիալիստական պատերազմը սանձազերծողների նկատմամբ և դարձնում նրանց հակապատերազմական ժողովրդական ճակատի ակտիվ մարտիկներ։

**Կրակը** երկը տարերային կուսակցականության վառ արտահայտությունն էր, թեև այն տարիներին Հանրի Բարբյուսը դեռ կոմունիստական կուսակցության շարքերում չէր։

Գրական տարբեր ուղղությունների գլխավոր թեման էին՝ պատերազմը, նրա սարսափներն ու աղետները։ Հանրի Բարբյուսը, Լենինի խոսքերով ասած՝ մի արտասովոր ուժով ու տաղանդով, ճշմարտացի ցույց տվեց զինվորի կյանքը ռազմաճակատում։ **Կրակը** վեպում Բարբյուսը հանդես է եկել որպես XIX դարի գրականության ռեալիստական տրադիցիաների շարունակող. այդ վեպում որոշակի դրսևորված են սոցիալիստական ռեալիզմի գեղարվեստական նոր մեթոդի գծերը։

Գրողի՝ խորապես հուզական ստեղծագործությունը գրավում է ո՛չ միայն իր համոզիչ, իրական կերպարներով, այլև խոր ու առաջավոր գաղափարներով։ Հանրի Բարբյուսի **Կրակը**, Լեոն Մուսինակի բնորոշմամբ, թե՛ պատմության և թե գրականության պատկանող մի գլուխգործոց է, որը լինելով

*1914—1918 թթ. պատերազմի մասին գրված ամենախոշոր երկը, մեծ նշանակություն է ունեցել ո՛չ միայն Ֆրանսիայում, այլև ամբողջ աշխարհում, արժանացել Լենինի ամենաբարձր գնահատականին, որը հոգ էր տանում, որպեսզի գիրքը շուտով ռուսերեն թարգմանվելիս, որպեսզի չնվազի բարբյուսյան համոզչականության ուժը։*

*Բարբյուսն իր առաջ խնդիր էր դրել գտնել ժողովրդի տառապանքի և դժբախտությունների աղբյուրը, ուղիներ որոնել դրանց վերացման, միլիտարիզմի արյունահեղ ոպանդը անվերադարձ կասեցնելու համար։ Գրողն այդ որոնումներին է նվիրել իր ողջ հետագա գործունեությունը։*

*Հանրի Բարբյուսն իր հասարակական գործունեությամբ ու բոցաշունչ գրչով նվիրվեց գրականության ու արվեստի առաջադեմ գործիչներին կոմունիստական գրականության շուրջը համախմբելու գործին։*

*Հարկավոր է հատուկ ընդգծել Բարբյուսի* Լույսն անդունդից *աշխատության, ինչպես և* Մարտիկի խոսքը *գրքի նշանակությունը, որոնք լույս են տեսել Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության ստեղծման նախօրյակին՝ 1920 թվականին։*

*Դիմելով Ֆրանսիայի գրողներին, պրոֆեսորներին, դասատուներին, ուսանողներին, դերասաններին, գիտնականներին, տեխնիկներին, Բարբյուսը գրել է. «Ձեր լիազորությունները պարտավորեցնում են ձեզ լուրջ պատասխանատվություն կրել մեր ապրած այս ահեղ դարաշրջանում, երբ ավարտվում է պատմության փշոտ ճանապարհը, և բացվում հարթ մարգագետինը»։ «Թո՛ղ այս աշխարհի վիթխարի կյանքը վերջապես սկսի իր ապստամբությունը մահվան դեմ։ Թո՛ղ, ուրեմն, սկսվի զայրույթով ու կամքով զինված այդ վերածնունդը»։*

*Հանրի Բարբյուսն իր սուր գրիչն ուղղեց երկրում տիրող անարխիստական ճոռոմաբանության դեմ, որն Իլյիչը դեռ 1916 թվականին ամենախիստ քննադատության էր ենթարկել* Օպոզիցիայի խնդիրների մասին Ֆրանսիայում՝ *Սաֆարովին ուղղված իր նամակում։ «Ոչ թե անարխիստական ֆրազ հեղափոխության մասին,—գրել է Լենինը,— այլ երկարատև, լուրջ, հաստատակամ, համառ, սիստեմատիկ աշխատանք* բանվորների շրջանում ամենուրեք *անլեգալ կազմակերպություններ ստեղծելու ուղղությամբ,* ազատ, *այսինքն՝ անլեգալ գրականություն տարածելու ուղղությամբ, իրենց կառավարությունների դեմ* մ ա ս ս ա ն ե ր ի *շարժում նախապատրաստելու ուղղությամբ։ Ահա թե ի՛նչ է հարկավոր բոլոր երկրների բանվոր դասակարգին (Երկեր, հ. 22, էջ 164)։*

*Հանրի Բարբյուսն առաջին գրողն էր, որ Լենինից հետո (1920 թ.) մերկացրեց և դատապարտեց Ֆրանսիայում այդ գրական ուղղությունը, որը ժողովրդի ուշադրությունը շեղում էր մեծ մարտից և, այդպիսով, ստեղծում «պարադոքսային անարխիա կամ անճարակություն»։ Նա գալիս է այն եզրակացության, որ հեղափոխության հաղթանակը Ռուսաստանում հանդիսանում է հեղափոխական փիլիսոփայության հաղթանակը՝ Արիստոտելից, Դեկարտից սկսած մինչև մարքս-լենինյան ուսմունքը (տե՛ս* «Aux hommes de pensée», op. cit., p. *226)։*

*Մորիս Թորեզի բնորոշմամբ Բարբյուսը կոմունիստական պրոպագանդայի մի հսկա էր, նրա ձայնը հնչում էր որպես ահազանգ։ Բարբյուսը գրական կարիերիզմին, անարխիզմին և անհատապաշտությանը լենինյան հետևողականությամբ հակադրում էր սոցիալիզմի հեղափոխական գաղափարով ոգեշնչ-*



*ված իսկական ազատ գրականությունը։ «Մի՞թե պրոֆեսիոնալ գրողը, որ կոչված է ճշմարտությունը ցույց տալու իր երկերում, պետք է անտեսի գոյություն ունեցող չարիքը և այդ չարիքից բուժվելու առկա միջոցները։ Սոցիալական ու քաղաքական մեծ գաղափարներից սիստեմատիկորեն խուսափող գրական գործիչը ատրոֆիայի է ենթարկում գրողի իր միսիան, անարգում մարդկային արժանապատվությունը...»,—գրել է Բարբյուսը (Նույն տեղը, էջ 226—227)։*

*1919 թվականին Հանրի Բարբյուսի ղեկավարությամբ հիմնվեցին «Կլարտե»* (Clarté) *խումբն ու հանդեսը, որոնք բուռն եռանդով ու համարձակ պաշտպանում էին երիտասարդ սովետական պետության նվաճումները, պայքարում նախապաշարմունքների, ողջ ռեակցիոն գաղափարախոսության դեմ։* Կլարտե *խումբը բացեիբաց հայտարարեց, որ համամիտ է լենինյան սկզբունքներին — ինտերնացիոնալի սկզբունքներին։* Կլարտեն *հանդես էր գալիս գրականության ու արվեստի առաջավոր գործիչների միավորման օգտին։ Խումբը ղեկավարում էին բազմաթիվ երկրների խոշորագույն գրողները։*

*Հանրի Բարբյուսի և Վայան-Կուտյուրիեի հիմնադրած* Կլարտե *խումբը մտավորականության մեջ լայնորեն տարածում էր հեղափոխական գաղափարներ, պայքարում բուրժուական ռեակցիոն գրականության դեմ։ Բարբյուսը կոմունիստական կուսակցության ստեղծումից անմիջապես հետո չմտավ նրա շարքերը, բայց պատերազմի ծագման պատճառների մասին նրա հետազոտությունները, իսկ հետագայում իր այս բրոշյուրում շարադրված կոմունիստական սկզբունքները նրան ավելի ու ավելի էին մոտեցնում կուսակցությանը։ Բարբյուսը մերկացրեց բուրժուական պրոպագանդայի ռեակցիոն հերյուրանքը կոմունիզմի մասին։ «Կոմունիզմը,— գրում էր նա,—բանականության և գիտակցության հավերժական ճշմարտությունների գործնական կիրառումն է արդի հասարակական կյանքի տնտեսական պայմանների նկատմամբ...»* («Aux intellectuels», Le PCF, La culture et les intellectuels, op. cit. p. *231)։*

*Դեռ այն ժամանակ Բարբյուսը լիակատար վստահություն հայտնեց կոմունիստների վերջնական հաղթանակի, այն մարդկանց նկատմամբ, որոնք «կվերափոխեն մայր ցամաքի դեմքը, և մարդկությունը կփրկվի նրանց ջանքերով» (Նույն տեղը, էջ 234)։*

*Ելնելով վերոհիշյալ ըմբռնումից, Հ. Բարբյուսը որոշեց էսթետիկական իր կրեդոն։ Այդ ժամանակաշրջանն այնքան հարուստ էր քաղաքական սուր իրադարձություններով, որ նա երկյուղում էր, թե արվեստը համատարած քաղաքական բնույթ կստանա։ «Խոսքն այն մասին չէ, որ ողջ գրականությունն ու արվեստը ի սպաս դրվեն սոցիոլոգիային ու քաղաքականությանը։ Մեր վեհ զբաղմունքով մենք կտրականապես պետք է հետևյալ վերապահումն անենք. այս աշխարհում գոյություն ունի միայն սոցիալական արդարություն... Գոյություն ունեն զբաղմունքներ, կրքեր, հույզեր, անհուն երջանկություն և ինտիմ տառապանքներ։ Այստեղ արդեն մարդը ոչ թե հանրապետության սահմանափակ, դրական ու չափելի տարր է, այլ ամբողջական աշխարհ, համապարփակ կենտրոն» (Նույն տեղը, էջ 235)։*

*Առաջավոր ֆրանսիական գրականության մեջ ուրույն տեղ է գրավում մեծ հումանիստ Ռոմեն Ռոլանի ստեղծագործությունը։*

*1914—1918 թվականների իմպերիալիստական պատերազմի առաջին խսկ*

օրերից Ռոլանը հանդես եկավ որպես անհաշտ հակամիլիտարիստ։ Մինչպատերազմյան շրջանում բուրժուական քննադատությունը թշնամաբար դիմավորեց նրա Տոնավաճառը հրապարակում և Ընկերուհիներ երկերը։ Ավելի ուժեղացան շովինիստական քննադատների հարձակումները, երբ առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Ռոլանը հանդես եկավ իմպերիալիստական սպանդի դեմ։ Ռեակցիոն մամուլը հեղեղված էր մեծ գրող-հումանիստին զրպարտող հայտարարություններով։

Պատերազմի տարիներին Ռոլանը բարեկամացավ ռուս քաղաքական էմիգրանտների հետ, որոնք մեծ ազդեցություն ունեցան նրա աշխարհայացքի զարգացման վրա։ Վ. Ի. Լենինի գործունեության մասին Ռոլանն իմացել էր Ա. Վ. Լունաչարսկուց։ Ռոլանի Պատերազմական տարիների օրագիրը, որն ընդգրկում էր 1914 թ. հուլիսի 31-ից մինչև 1919 թ. հուլիսի 11-ն ընկած ժամանակաշրջանը, փայլուն հաստատումն է այն բանի, թե Ռոլանը որքա՜ն իրեն մոտ է ընդունել Հոկտեմբերի հեղափոխական գաղափարները։ Սովետական Ռուսաստանը և նրա ճակատագիրն են Ռոլանի Օրագրի կենտրոնական թեման։ Գրողին ոգեշնչում են նորաստեղծ սոցիալիստական պետության հաջողությունները։ «Թող Եվրոպան աշխատի այնպիսի նոր կազմակերպություններ ստեղծել, ինչպիսիք են սովետները Ռուսաստանում՝ ժողովուրդների նոր ինտերնացիոնալի այդ կորիզը»,—գրում էր նա 1917 թվականին (R. Roland «Journal des années de guerre. Cahier XIX», p. 21)։

Լենինն ուշադրությամբ հետևում էր առաջադիմական տարրերի զարգացմանը Ֆրանսիայում։ Դեռ 1916 թվականին նա գրում էր. «Ճիշտ չէ, թե ֆրանսիացիք անընդունակ են սիստեմատիկ անլեգալ աշխատանքի։ Ճիշտ չէ... Ես հավատում եմ ֆրանսիական հեղափոխական պրոլետարիատին»[1]։

1919 թվականի դեկտեմբերի 5-ին խորհուրդների համառուսաստանյան VII համագումարում Համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեի և Ժողկոմխորհի զեկուցման մեջ բնութագրվում է այդ տարիների «Յումանիթե» թերթը, երբ այն սոցիալիստական կուսակցության օրգանն էր և II ինտերնացիոնալի գաղափարների՝ համախոհ։

Խիստ ուշագրավ են Անատոլ Ֆրանսի ելույթները «Յումանիտեում», որոնք ուղղված են հեղափոխական Ռուսաստանի բլոկադայի դեմ։ Ոգևորված Անատոլ Ֆրանսը եկել էր այն եզրակացության, որ անխուսափելի է սոցիալիզմի լիակատար հաղթանակը ամբողջ աշխարհում։ «Ի՞նչ է սոցիալիզմը,—գրում էր Ֆրանսը,— մարդկության խիղճն է այն» (А. Франс, Рассказы, Публицистика, Гослитиздат, М.-Л., 1950, стр. 15)։

«Յումանիտե» թերթն այն ժամանակ միայն անունով էր ժողովրդական. փաստորեն այն ներկայացնում էր օպորտունիստներին, որոնք, սակայն, առաջավոր շրջանների հանդեպ տածած համակրանքի ազդեցությամբ նույնպես միացել էին՝ ի պաշտպանություն երիտասարդ սոցիալիստական պետության մղվող պայքարի։

«Յումանիտեի» այդ շրջանի գործունեությունը Լենինը բնութագրել է հետևյալ կերպ.

«Այս թերթը, որ միշտ II Ինտերնացիոնալին էր պատկանում, պատերազմի ժամանակ կատաղի շովինիստական էր, այնպիսի սոցիալիստների տեսակետի

[1] Մեջբերումն արված է Մորիս Թորեզի Ընտիր երկերից։ Քաղաքական գրականության հրատարակչություն, Մոսկվա, 1959, հ. 2, էջ 533 (ռուս.)։



վրա էր կանգնած, ինչպիսին են մեր մենշևիկները և աջ էսեռները, և մինչև այժմ էլ հաշտեցնողի դեր է խաղում...» (Լենին, Երկեր, հ. 30, էջ 265—266)։

«Յումանիտեն» իսկական կուսակցական դիրք գրավեց մի քանի տարի անց (1920 թ. դեկտեմբերից) միայն, երբ նրա ղեկավարները դարձան գրականության կուսակցականության լենինյան սկզբունքներին հավատարիմ մարդիկ, որոնք ճիշտ էին հասկացել Լենինի՝ «Յումանիտեի» հին կազմի օպորտունիստական գծի քննադատությունը։

Պատերազմի առաջին տարիներին Լենինը գտնվում էր Շվեյցարիայում և ուշադրությամբ հետևում Ֆրանսիայի առաջավոր մտավորականության շրջանում հակաիմպերիալիստական տրամադրությունների տարածմանը։ 1915 թվականի սեպտեմբերին Ցիմերվալդի կոնֆերանսում Լենինը «բազմիցս փորձում էր համոզել ֆրանսիական պատգամավորներին, որ նրանք հանդես գան հեղափոխական մարքսիզմի և III Ինտերնացիոնալի օգտին, մասսաներին ոտքի հանեն ընդդեմ պատերազմի, ինչպես սոցիալ-շովինիզմի, այնպես էլ անարխո-սինդիկալիզմի դեմ մղվող պայքարի օգտին (Морис Торез, Избр. произв. т. 2, стр. 524)։

Ֆրանսիացիների ձախ թևի ամենաակտիվ ներկայացուցիչներից մեկն էր Մարսել Կաշենը, որի հեղափոխական գործունեությունը բարձր է գնահատել Իլյիչը։

Դեռ 1905 թվականին Կաշենն իր մատերիալիստական հայացքները շարադրել է Բանվոր դասակարգը և սոցիալիզմը խորագիրը կրող բրոշյուրում։ Մարսել Կաշենը մեծ ջանքեր է գործադրել մարքս-լենինյան գաղափարների տարածման գործում։ 1920 թվականին նա ժամանեց Մոսկվա, մասնակցելու կոմունիստական Ինտերնացիոնալի կոնգրեսին՝ խորհրդակցական ձայնի իրավունքով։ Նիստին ներկա էին Ինտերնացիոնալի ղեկավարները՝ Լենինի գլխավորությամբ։ Զեկուցումներով հանդես եկան՝ իտալական պատվիրակության կողմից Սառատին, հունգարացի մի ընկեր, ապա՝ երկու ֆրանսիացի պատվիրակ, այնուհետև՝ Իլյիչը, հիշում է Մարսել Կաշենը։

«Նա հիանալի էր խոսում ֆրանսերեն...

««Յումանիտեում»,— ասաց Լենինը,— ես միշտ հաճույքով եմ կարդում գործադուլների ձեր հանգամանակաթերթերը կամ կուսակցական նյութերը։ Փաբրիկի բանվորներն իրենց նամակներում արտահայտում են իրենց կռիվը, զայրույթը և իրականության ճիշտ գնահատականը։ Ձեր հիմնական խնդիրն է՝ այնպիսի պարզորոշ ծրագիր շարադրել բանվորներին, որը ճիշտ վերլուծի արդի դարաշրջանի փաստերը, երբ կապիտալիստական ռեժիմը քայքայվում է արագ տեմպերով։ Պրոպագանդան ինչպես թերթերում, այնպես էլ բանավոր, դուք պետք է հանձնարարեք հավատարիմ, փորձված ընկերների, պրոլետարիատի մարքսիստական տեսությամբ զինված առաջավոր ջոկատին։ Կարճ ասած՝ եթե «Յումանիտեն» ուզում է կատարել իր միսիան, ապա նախ և առաջ չպետք է իր միևնույն էջում շարադրի միմյանց հակասող ամենատարբեր նյութեր։ Թող միաբան, համերաշխ ու տրամաբանորեն հետևողական լինի թերթը։ Սույն պայմանների առկայությունն անհրաժեշտ է նաև կուսակցական գործունեության մեջ» (Marcel Cachin, «Rencontre avec Lenine», 1920, Ecrits et portraits, op. cit., p. 91—93)։

Մոսկվայից Փարիզ վերադառնալուց հետո Մարսել Կաշենը մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին հավատարիմ հեղափոխական գրողների հետ միա-

սին լայնորեն լուսաբանում էր սովետական իրականության հարցերը, ինչպես նաև տարածում Կոմինտերնի հրատարակած գրականությունը։

Տուրի համագումարի նախօրյակին (1920) երևան եկավ հատուկ ուշադրության արժանի մի գիրք ևս—Նամակներ իմ բարեկամներին, որի հեղինակն էր Պոլ Վայան-Կուտյուրյեն։ Համաշխարհային պատերազմի շրջանում հակամիլիտարիստական դիրքերում էր նա և հարում էր Ֆրանսիայի սոցիալիստական կուսակցության ինտերնացիոնալիստական ձախ թևին։ Մորիս Թորեզը Ֆրանսիայի կոմկուսակցության IX համագումարում (1937 թ. դեկտեմբերի 25—29-ին) իր հաշվետու զեկուցման մեջ բարձր գնահատեց տաղանդը Վայան Կուտյուրեի՝ «...կուսակցությանը նվիրված անդամի, որն անկեղծ հավատով ու խանդավառությամբ պաշտպանում էր աշխատավորության շահերը, կրքոտ պայքարում և իր հետևից տանում մարդկանց, գրում էր, խոսում, երգում, նկարում, որը զինվոր լինելով՝ կազմակերպում էր իր ընկերներին՝ համաշխարհային պատերազմի նախկին մասնակիցներին, հեղափոխական մտավորական լինելով՝ համախմբում էր իր եղբայր բանվորներին ու գյուղացիներին, տաղանդավոր գրող և բացառիկ ձիրքի տեր ստեղծագործող լինելով՝ նպաստում էր մտավորականության հզոր շարժմանը...» (Մորիս Թորեզ. Ընտիր երկեր, հ. I, էջ 216)։

Իմպերիալիստական պատերազմի տարիներին Վայան-Կուտյուրեն միացավ իր բարեկամ գրողներ Ռայմոն Լեֆևրին և Հանրի Բարբյուսին։

Վայան-Կուտյուրեն Նամակներ իմ բարեկամներին գրքում (1920 թ.) խիստ դատապարտում էր I իմպերիալիստական պատերազմը։ Պատերազմի ահավոր պատկերների նկարագրման հետ մեկտեղ լուսաբանում գրականության ու արվեստի զարգացման ամենաբարդ խնդիրներից մի քանիսը։ Նա մարտնչում էր հանուն այն բանի, որ իսկական ժողովրդականությունն արտահայտվի «Նոր ժամանակների գրականությամբ, որն արիաբար նայում է հերոսության աչքերին», որն «իր արմատներով սկիզբ է առնում ամենահին մասսաների խորքից...» (Поль Вайян Кутюрье, Избранное, Л., 1939, стр. 76)։ Այդ «նոր ժամանակների երիտասարդ գրականությունը» Վայան-Կուտյուրեն հակադրում էր «միջակության ու ստրկության ճուռմերի» գրականությանը։

1921 թվականին Վայան Կուտյուրեն Մոսկվա ժամանեց՝ մասնակցելու Կոմինտերնի III կոնգրեսին։ Այստեղ երիտասարդ ժուռնալիստը և գրողը տեսավ Վ. Ի. Լենինին, լսեց նրա ելույթները։ Կոմինտերնի ֆրանսիական սեկցիայի նիստում Վայան-Կուտյուրեն հադիպեց Իլյիչին։ Նրանք զրուցում էին գյուղացիության մասին, ֆրանսիացի կոմունիստների տակտիկայի մասին։

Ֆրանսիական հեղափոխական գրականության մեջ կուսակցականության նոր փուլ է սկսվում 20-ական թվականների երկրորդ կեսին։ «Յումանիտե» թերթը դառնում է Վայան-Կուտյուրեի, Մարսել Կաշենի, Հանրի Բարբյուսի հասարակական և հրապարակախոսական գործունեության կենտրոնը։ «Յումանիտեի» միջոցով հեղափոխական գրողները ո՛չ միայն արձագանքում էին օրվա հրատապ իրադարձություններին, այլև շարադրում իրենց կուսակցական հայացքներն անցյալի կուլտուրական ժառանգության պաշտպանության, սովետական իրականության վերաբերյալ տեղեկությունների տարածման, ինչպես նաև երիտասարդ սովետական գրականության զարգացման մասին։

«Յումանիտե» թերթը հրապարակեց Մորիս Թորեզի հոդվածների մի շարք, որը մեծ ազդեցություն ունեցավ ժամանակակից առաջավոր գրողների վրա։



Թորեզի՝ Ստրասբուրգում արտասանած ճառը[1] խոր տպավորություն թողեց հատկապես Ռոմեն Ռոլանի վրա. Ֆրանսիայի կոմկուսակցության գլխավոր քարտուղարին նա դիմեց մի նամակով, ուր գրում է.

> «Թանկագին ընկեր Թորեզ.
>
> Այս պահին, երբ Ստրասբուրգում արտասանած Ձեր ճառը ատելության հեղեղ առաջացրեց Ձեր դեմ, ես իմ անկեղծ համակրանքն եմ հայտնում Ձեզ։ Դուք ասացիք կուռ ճշմարտությունը, կուսպ էիք և աննկուն։ Մենք դժվարին ժամանակ ենք ապրում այս ամիսներին, և ես հիացած եմ կոմունիստական կուսակցության իմաստությամբ։ Փաստորեն նրա վրա է հենվում ժողովրդական ճակատը։ Եվ ահա թե ինչու 93 թվականի Լեռան նման նա մարտնչում է ձախերի ու աջերի կատաղի հարձակումների, ինչպես և ճահճի դոդոշների դեմ։ Ֆրանսիայի ժողովուրդը թող համախմբվի այդ իսկական մարտիկների շուրջը։
>
> Ժան Քրիստոֆը, որի մասին Դուք հիշատակել էիք, Ձեր ձեռքն է սեղմում։
>
> Ռոմեն Ռոլան»։

Ժողովրդական ճակատի շրջանը (1934—1935 թթ.) նշանակալից է նրանով, որ Վ. Ի. Լենինի՝ գրականության կուսակցականության և Տոլստոյի վերաբերյալ հոդվածները Ֆրանսիայի կոմկուսակցությունն սկսեց հրատարակել ֆրանսերեն, որը և բնորոշում է լենինյան գաղափարների ներթափանցումը ֆրանսիական գրականության կուսակցականության ասպարեզում։

Լ. Տոլստոյի ստեղծագործությունը որոշակի դեր է խաղացել Ռոլանի գրական գործունեության համար։ Որպես գրականության ու արվեստի բացառիկ գործիչ Ռոլանը երկար տարիներ ուսումնասիրել էր Լև Տոլստոյին, նա հիացած էր Տոլստոյի լենինյան գնահատականով. «Գրականության պատմագրի համար,— գրում էր Ռոլանը Տոլստոյի վերաբերյալ Լենինի հոդվածի մասին,— հետաքրքրական կլիներ պարզել, որ Ռուսոյի, Դիդրոյի, Վոլտերի, բոլոր մեծ արվեստագետների մոտ հեղափոխության առարկան, որը պատկանում է ապագային, նրանցից առաջ էր ընկնում, թեև նրանք չէին էլ նկատում այդ, որից կհրաժարվեին, եթե կարողանային կանխատեսել այդ ապագան։ Դա Լենինի այն աշխատությունն էր, որը նա իրեն հատուկ ճշտակի ու սուր շիտակությամբ սկսել էր իր սիրած գրողի մասին, ցույց տալով, թե ինչպես Լև Տոլստոյը հանճարեղ կերպով մերկացնում, դիմակազերծ էր անում այն ժամանակվա հասարակարգի կեղծիքն ու հանցագործությունները, նրա դեմ ուղղելով իր քննադատությունը, որն ինքնին հեղափոխության կոչ էր, իսկ մյուս կողմից՝ ինչպես նույն Տոլստոյը, այդ քննադատությունից բխող հեղափոխական գործունեության հանդեպ սարսափով ու զայրույթով երես էր շուռ տալիս և գոչում՝ «Ո՛չ», թաքնվելով «արևելյան անշարժության» միստիկայի հետև, որը փորձում էր կանգնեցնել արեգակի շարժումը՝ ժխտելով այն» («Ленин. Искусство и действие». Сб. «О Ленине», т. I, М., 1939, стр. 76)։

Հատկապես ակներև է լենինյան գաղափարների ազդեցությունը Մարսել Կաշենի հետազոտություններում. էսթետիկայի վերաբերյալ հետաքրքրական մի շարք աշխատություններ ունի նա, որոնք նվիրված են Ֆրանսիայի խոշորագույն գրողներ Օնորե դը Բալզակի, Անատոլ Ֆրանսի, Ռոմեն Ռոլանի, Հանրի Բարբյուսի, Պոլ Վայան-Կուտյուրեի, Լուի Արագոնի ստեղծագործություններին։

---

[1] Մ. Թորեզի այս ճառից կատաղած, Հիտլերը բողոք հայտնեց Ֆրանսիայի կառավարությանը։

Գրական երևույթների նկատմամբ կիրառելով հետազոտության լենինյան մեթոդը, Մարսել Կաշենը հաջողությամբ լուսաբանել է Ֆրանսիայի առաջավոր գրողների և արվեստագետների գրական ու հասարակական գործունեությունը։

Ժողովրդական ճակատի շրջանում գրականության ու արվեստի մարզում մարքս-լենինյան հայացքների պրոպագանդման գործում մեծ դեր խաղացին Ֆրանսիայի հեղափոխական գրողների և արվեստագետների ասոցիացիան (որը կազմակերպվել էր 1932 թվականի մարտին), «Կոմունա» (Commune) և «Եվրոպա» (Europe) հանդեսները։ 1935 թվականին «Կոմունայում» հրապարակվել էին Լենինի հոդվածները Տոլստոյի մասին՝ Վ. Պոզների թարգմանությամբ։ 1936 թվականին Ֆրանսիայի կոմունիստական կուսակցությունը լույս ընծայեց արվեստի վերաբերյալ Մարքսի և Էնգելսի ասույթների ժողովածու, իսկ 1937 թվականին՝ գրականության ու արվեստի վերաբերյալ Լենինի ընտիր հոդվածների ժողովածու, որը կազմել էր Ժան Ֆրևիլը։

Լենինյան գաղափարների պրոպագանդման ասպարեզում Ֆրանսիայի կոմկուսակցության ճիշտ քաղաքականության շնորհիվ Ֆրանսիայում հաղթահարվել է գրականության մեջ և արվեստում կոմունիստական կուսակցականության ձևավորման դժվարին փուլը. այն դարձել է մասսայական գրականություն։ Լենինի գործարար խորհուրդներն օգնել են համարձակ առաջ մղելու արվեստը ազգային կուլտուրայի առաջադիմության ուղիով։ Բացի դրանից, այս խորհուրդներն օգնեցին հասկանալու կուսակցության գաղափարայնության և ռեալիզմի դասակարգային, քաղաքական, ինչպես և իմացաբանական ու ճանաչողական հիմունքները։

Կուսակցության պայքարը կոմունիստական գաղափարների համար գիտակցված և խորապես հիմնավորված քաղաքական գիծ է գրականության մեջ և արվեստում, որը ֆրանսիական հեղափոխական-դեմոկրատական գաղափարախոսության արտահայտությունն էր՝ ֆրանսիական գրականության մեջ կոմունիստական կուսակցականության սաղմնավորման շրջանում։

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍՈՒՄ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Մոսկվա։ Ժողովրդական տնտեսության նվաճումների համամիութենական ցուցահանդես։ Դա մի կանաչ քաղաք է, կենդանի թանգարան՝ մեր հզոր տերության կեսդարյա պատմության, սովետական մարդու հրաշագործ մտքի և ձեռքի նյութեղեն վկան, նրա մաքառումների և անօրինակ սխրանքների իրեղեն ապացույցը։

Շքամուտքից ներս մտնելիս քո դեմ հառնում է ճարտարապետական սքանչելի մի շինություն՝ կենտրոնական տաղավարը։ Այստեղ ցուցադրվում են սովետական իշխանության տարիներին երկրում տեղի ունեցած քաղաքական, սոցիալ-տնտեսական կարևորագույն վերափոխումների պատկերը, ՍՍՀՄ մոտ 100 փոքր ու մեծ ժողովուրդների լենինյան բարեկամությունն ու համագործակցությունը։ Ցուցահանդեսի մյուս 72 տաղավարների տասնյակ հազարավոր ցուցանմուշները հսկա հայելու պես արտացոլում են քաղաքական, տնտեսական և կուլտուրական շինարարության, գիտության ու տեխնիկայի զարգացման, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման բնագավառում սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները։

Այդ ամենը շարադրել մի հոդվածում, գրեթե անհնար է։ Ուստի, համառոտակի պատմենք միայն «Կոսմոս» և «Ատոմային էներգիա» տաղավարների մասին։

### ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ ԼՈՒՍԱԲԱՑԸ

Ցուցահանդեսի բոլոր այցելուներին, ամենից առաջ, հրապուրում է «Կոսմոս» տաղավարը։ Մարդիկ ավելի շատ լսել ու կարդացել են տիեզերական թռիչքների ու տեխնիկայի մասին, իսկ այստեղ ամեն ինչ ցուցադրվում է իր բնական տեսքով, մոտիկից տեսանելի ու շոշափելի։ Մանավանդ հոբելյանական տարվա էքսպոզիցիան նոր է, հարուստ ու բազմազան։

Ընդարձակ ցուցասրահը մտնելիս աչքիդ առաջ բացվում է անսովոր մի աշխարհ՝ իրական ու հեքիաթային, զարմացնող ու հիացնող։ Էքսպոզիցիայի եզակի ցուցանմուշը Արդյունաբերության հրապարակում տեղադրված «Վոստոկ» տիեզերական հզոր հրթիռն է՝ իր բնական տեսքով ու չափսերով։ Դրա միջոցով էր, որ պատմության մեջ առաջին անգամ սովետական քաղաքացի Յու. Գագարինի վարած համանուն տիեզերանավը դուրս բերվեց երկրագնդի ուղեծիր... ուղի։

Էքսպոզիցիայի գիտական ապարատուրան, բազմապիսի գործողություններ կատարող ավտոմատ սարքերն ու գործիքները, տիեզերքի հետախույզ ավտոմատ կայանները, տարբեր տրամաչափի և հզորության հրթիռներն ու շարժիչները, տիեզերագնացների կենցաղն ու առօրյան արտացոլող իրերն ու ստենդները համգամանորեն ներկայացնում են տիեզերական հետազոտությունների տասնամյա պատմությունը։

Ահա տիեզերագնացության տեսության հիմնադիրներից մեկի՝ Կ. Ցիոլկովսկու 1903 թվականին նախագծած հրթիռի մոդելը (հեղուկ վառելանյութի համար)։ Մեծ երազողը տվեց հրթիռի շարժման հավասարման վերլուծությունը, վերանայեց հրթիռային թռիչքի մեխանիկայի մի շարք հարցեր, կանխատեսելով մարդու հավանական թռիչքը դեպի աստղերը։ Նրա տեսական գաղափարներն իրականացան հենց իր հայրենիքում։ Միջազգային գեոֆիզիկական տարվա ծրագրին համապատասխան, 1957 թվականի հոկտեմբերի 4-ին Սովետական Միությունում, աշխարհում առաջին անգամ, արձակվեց Երկրի արհեստական արբանյակը, որի ազդանշաններն ավետեցին տիեզերքի նվաճման դարաշրջանի լուսաբացը։

Արբանյակն առաջին հավաստի պատկերացումը տվեց վերին մթնոլորտի և ուղեծրով շարժվող տիեզերական սարքերի ֆիզիկական պայմանների, վերին մթնոլորտում և իոնոսֆերայում առկա գեոֆիզիկական մի շարք երևույթների մասին։ Սակայն գիտնականներին հուզում էր նաև մի այլ հարց. ուղեծրային թռիչքի ժամանակ, անկշռայնության պայմաններում, կենսաբանական ի՞նչ փոփոխություններ են կատարվում կենդանի օրգանիզմում։ Դրա համար նրանք օգտագործել են Լայկա շանը։ Էլեկտրական լույսով ողողված ստենդից խոհուն ու խելացի աչքերով այցելուներին է նայում տիեզերքի առաջին ուղևորը։ Նրա շուրջը դրված են այն սարքերը, որոնց օգնությամբ Երկիր են հաղորդվել գիտական բազմազան տեղեկություններ։ Ահա և հերմետիկ խցիկի մակետը, ուր տեղավորվել էր Լայկան և մի շաբաթ ճանապարհորդել տիեզերքում, «պատմել» իր ինքնազգացողության մասին, հավաստիացրել իր գիտնական տերերին, որ կենդանու օրգանիզմը կարող է տանել նման թռիչքի անկշռայնության պայմանները։

Ցուցանմուշներին ուղեկցող կարճառոտ մակագրությունները պատմում են երկրորդ արբանյականավի քաշի, գիտական սարքերի մասին։ Միաժամանակ տեղեկացնում, որ այն, լինելով Երկիր վերադարձած առաջին արբանյականավը, գիտնականներին հնարավորություն տվեց ավելի մոտիկից ուսումնասիրելու նրա վրա արտաքին միջավայրի ներգործության հետևանքները։

Կարդում ենք մի այլ ծանոթագրություն. «Երրորդ արբանյակ. քաշը 1327 կգ, ընդ որում գիտական ու չափիչ ապարատուրայինը՝ 968 կգ։ Արբանյակը գոյատևեց մոտ երկու տարի, երկրի շուրջը կատարելով ավելի քան 10 հազար պտույտ։ Արբանյակում տեղակայված էներգասնման հիանալի աղբյուրի՝ արևգակնային մարտկոցների միջոցով միայն հնարավոր դարձավ երկար ժամանակ գիտական ինֆորմացիաներ ստանալ ռադիացիոն գոտու արտաքին զոնայի, վերին մթնոլորտի խտության, Երկրի մագնիսական դաշտի, առաջնային կոսմիկական ճառագայթների ինտենսիվության և ֆիզիկական այլ երևույթների մասին»։ Դա մի թռչող լաբորատորիա էր՝ սովետական հրթիռների հզորության ցուցանիշը։

1960 թվականի մայիսից մինչև հաջորդ տարվա մարտը ՍՍՀՄ-ում արձակվել է 5 արբանյականավ։ Արձակման գլխավոր նպատակն էր տիեզերանավերի



բոլոր սիստեմների կատարելագործումը, մարդու առաջին թռիչքի ուղեծրի հետազոտումը, բժշկակենսաբանական ուսումնասիրությունների շարունակումը՝ մարդու լուսնային թռիչքը նախապատրաստելու նպատակով։

## ՏԻԵԶԵՐՔԻ ԱՎՏՈՄԱՏ ՀԵՏԱԽՈՒՅԶՆԵՐԸ

Ընդարձակ ցուցասրահի մի հատվածը զբաղեցնում են ավտոմատ գիտական կայանները։ Էքսկուրսավարը այցելուներին ծանոթացնում է յուրաքանչյուր կայանի «տիեզերական» կենսագրությանը։

— Միջմոլորակային տարածության, հեռու և մոտ տիեզերքի մասին կուտակված առաջին ինֆորմացիաները,— ասում է նա,— արտաքուստ փոքր թվացող թիվն ու փաստը ստուգելու և վերստուգելու խիստ կարիք կար։ Այդ խնդիրը պատվով կատարեցին «Կոսմոս» սերիայի բազմաթիվ արբանյակները, որոնք 1962 թվականից սկսած արժեքավոր տվյալներ են հաղորդում վերին մթնոլորտի, իոնոսֆերայի, երկրի ամպային սիստեմների, ռադիացիոն գոտիների, կոսմիկական ճառագայթների մասին։ Տևական ուսումնասիրությունների շնորհիվ կուտակվել է ընդարձակ ինֆորմացիա ինչպես գիտական, այնպես էլ կիրառական պրոբլեմների շուրջը։

Հրթիռաշինության արագ զարգացումը նպաստեց տիեզերքի ավելի խոր ու բազմակողմանի հետազոտման ծրագրերի իրականացմանը։ Տաղավարում ցուցադրվող «Էլեկտրոն—1» և «Էլեկտրոն—2» գիտական կայանները տանող հրթիռի և հրթիռային հատուկ սիստեմի օգնությամբ 1964 թվականի հունվարին դուրս բերվեցին տարբեր ուղեծրեր։ Այս անգամ նախատեսված էր կոմպլեքս սինխրոնիկ չափումներ կատարել Երկրամերձ տիեզերական տարածության զանազան կետերում։ Դրանք անհրաժեշտ են Երկրի մոտակայքում տեղի ունեցող պրոցեսների վերաբերյալ լրիվ ու հանգամանալից պատկերացում կազմելու համար, սկսված հետազոտությունները շարունակվեցին հետագայում արձակված «Էլեկտրոն—3» և «Էլեկտրոն—4» կայանների միջոցով։

Այցելուներն ակնապիշ դիտում են «Պրոտոն—1» տիեզերակայանը, որի արձակմամբ սկսվեց կոսմիկական ճառագայթների հիմնավոր և մանրազնին ուսումնասիրությունը։ Առավել զարմանք են պատճառում տիեզերակայանը բնութագրող տվյալները։ Ուշագրավ է, որ տանող հրթիռն ուներ ավելի քան 60 միլիոն ձիաուժ հզորություն։ Կատարելագործված այդ հրթիռի ուժի մասին է խոսում նաև այն, որ նրա ուղեծիր դուրս բերած օգտակար բեռի ընդհանուր քաշը 12,2 տոննա էր։ Կայանի օգնությամբ ուսումնասիրվում էին գերհզոր էներգիայի տարրական մասնիկների առանձնահատկությունները, միկրոաշխարհի գաղտնիքները։ Այս կարգի հետազոտությունները շարունակվեցին «Պրոտոն—2» և «Պրոտոն—3» կայանների միջոցով։

## ՈՒՂԵԾՐՈՒՄ Է ՄԱՐԴԸ

Տաղավարի աչքի ընկնող տեղում փակցված են սովետական անվեհեր տիեզերագնացների լուսանկարները, այնտեղ դրված են «Վոստոկ» սերիայի տիեզերանավերի առանձին մասերը։

Բազմակողմանի նախապատրաստումից հետո տեղի ունեցավ մարդու աշխարհում առաջին տիեզերական թռիչքը։ Այն փայլուն կերպով կատարեց սովետական տիեզերագնաց Յու. Ա. Գագարինը՝ 108 րոպե մնալով տիեզերքում։ Ահա 4725 կգ քաշ ունեցող նավի մակետը և վեց շարժիչներով տանող հրթիռը՝

20 միլիոն ձիաուժ հզորությամբ, որի մոդելը տեղավորված է տաղավարի շքամուտքի առջև։

Մեր երկրի աշխատավորները, աշխարհի բոլոր առաջադեմ մարդիկ երբեք չեն մոռանա ականավոր տիեզերագնաց-օդաչու, Սովետական Միության հերոս, գնդապետ Յուրի Ալեքսեևիչ Գագարինի պայծառ կերպարը և ԺՏՑ-ի «Կոսմոս» տաղավարն այցելելիս միշտ սրտի անհուն կսկիծով կհիշեն մեծ հայրենասերի ողբերգական մահը, որը տեղի ունեցավ 1968 թ. մարտի 27-ին՝ ինքնաթիռով վարժական թռիչք կատարելիս տեղի ունեցած աղետի հետևանքով։

Յու. Ա. Գագարինի թռիչքը տիեզերագնացության սկիզբն էր և սովետական գիտության ու տեխնիկայի համաշխարհային հաղթանակը։ Այդ սխրանքին հաջորդեց տիեզերագնաց Գ. Տիտովի թռիչքը «Վոստոկ—2» տիեզերանավով։ Այն ավելի տևական էր՝ իր հատուկ և ավելի մեծ ծրագրով։

Տիեզերքի նվաճման հաջորդ էտապը Ա. Նիկոլաևի և Պ. Պոպովիչի համատեղ թռիչքն էր 1962 թվականի օգոստոսի 11-ին։ Խմբային թռիչքի առանձնահատկությունն այն էր, որ Պոպովիչի վարած «Վոստոկ—4» նավը դուրս բերվեց ուղեծիր «Վոստոկ—3»-ից մեկ օր հետո. երկու տիեզերանավերն էլ սլանում էին նույն ուղեծրով՝ իրարից ընդամենը 6,5 կմ հեռավորությամբ։ Տանող հրթիռի ղեկավարող սիստեմների բացառիկ ճշգրտության, տիեզերանավերի ու նրանց սիստեմների կատարելության փայլուն վկայությունն էր այդ։

Մյուս տարում իրագործվեց երկրորդ խմբային թռիչքը, որն ավելի զարմացրեց ու հիացրեց համայն մարդկությանը։ Դա «Վոստոկ» սերիայի երկու տիեզերանավերի համատեղ թռիչքն էր. նավերից մեկը վարում էր Վ. Բիկովսկին, իսկ մյուսը՝ աշխարհում առաջին կին տիեզերագնացը՝ Վ. Տերեշկովան։ Թռիչքի խնդիրն էր շարունակել մարդու, հատկապես կնոջ օրգանիզմի և նրա աշխատունակության վրա տիեզերական յուրահատուկ պայմանների ներգործության ուսումնասիրումը։

Թռիչքների գիտահետազոտական հնարավորություններն ավելի ընդլայնվեցին սովետական գիտնականների կողմից բազմատեղ տիեզերանավի ստեղծմամբ, որով հաջող երթ կատարեցին տիեզերագնացներ Վ. Կոմարովը, Բ. Եգորովը և Կ. Ֆեոկտիստովը։ Գիտական աշխատողի ներկայությունը նավում թույլ տվեց իրականացնել աշխատանքի ավելի լայն ծրագիր։

Մարդու կողմից տիեզերքի անմիջական ուսումնասիրման գործում խոշոր քայլ էր նաև «Վոսխոդ—2»-ի թռիչքը, որի ընթացքում տիեզերագնաց Ա. Լեոնովը հատուկ հարմարանքի միջոցով, առաջին անգամ, խցիկից դուրս եկավ բաց տիեզերք և անօդ տարածության մեջ մնաց 10 րոպե։

Մեծ ուշադրությամբ են դիտվում հիշյալ տիեզերանավի գիտական ապարատուրաները և բաց տիեզերքում տիեզերագնացին պատկերող հեռուստատեսային լուսանկարի խոշորացված ստենդը։ Հետաքրքրական են տիեզերագնացների երկնային, վառ գույներով հագուստները, հերմետիկ ձեռնոցները, կոստյումները, սկաֆանդրը, որոնք ունեն տիեզերագնացին ջրից ու ջերմությունից պաշտպանող հատկություն։

## ԵՐԿՐԻ ՍՈՒՐՀԱՆԴԱԿՆԵՐԸ ՀԱՐԵՎԱՆ ՄՈԼՈՐԱԿՆԵՐԻ ՎՐԱ

Մարդու ձգտումն անսահման է, ինչպես ինքը՝ տիեզերքը։ Նա չի գոհանում ձեռք բերածով, իր մոլորակի զննումով։ Նա ձգտում է ճանաչել, հասկանալ հեռու և մոտ աստղերի կյանքը, որպեսզի անսխալ որոշի իր տեղն ու դերը, իր



գոյության իմաստն ու նպատակը այս անսահման տիեզերքում։ Ահա թե ինչու սովետական գիտնականները ծրագրեցին ուսումնասիրել արեգակնային համակարգության մյուս մոլորակների ֆիզիկական առանձնահատկությունները՝ մարդու ապագա միջմոլորակային թռիչքն իրականացնելու նպատակով։ Այդ համարձակ ծրագրի իրականացումն ապահովելու համար նրանք ամենից առաջ լուծեցին միջմոլորակային թռիչքների ժամանակ վառելիքի խնայողության հարցը։ Ստեղծվեցին բազմաստիճան հզոր հրթիռներ, որոնք ապահովեցին ավտոմատ գիտական կայանների միջմոլորակային թռիչքները. հրթիռների վերջին աստիճանի արագությունը 8 կմ/վրկ-ից հասավ 11,2 կմ/վրկ-ի։

Լուսնի՝ երկնային ամենից մոտ մարմնի ուսումնասիրությունն սկսվեց առանց ուշացման, առաջին արհեստական արբանյակի արձակումից անմիջապես հետո։ 1966 թվականի կեսերին արդեն 10 ավտոմատ կայաններ կային Լուսնի մակերեսի վրա՝ արձակված մեր Միության և ԱՄՆ-ի կողմից։ Էքսկուրսավարը մեզ ծանոթացնում է «Լունիկ—1» ավտոմատ կայանի հետ, որն արձակվելուց 34 ժամ հետո գտնվելով Լուսնից 5—6 հազար կիլոմետր հեռավորության վրա, դուրս եկավ ուղեծիր, որպես Արևի առաջին արհեստական արբանյակ. այնուհետև դիտում ենք «Լունիկ—3» ավտոմատ միջմոլորակային կայանը, որը հաջողությամբ լուսանկարեց Լուսնի Երկրից անտեսանելի կողմը։ Խնամքով կատարված ֆոտոիլյուստրացիաները հստակ ցույց են տալիս գեղեցկուհի Լուսնի բոլոր կնճիռներն ու բծերը...

Լուսնի հետազոտման հերթական փուլին անցնելու համար հարկ եղավ կազմակերպել ավտոմատ կայանների փափուկ վայրէջքը նրա մակերեսի վրա՝ տանող, առավել հզոր բազմաստիճան հրթիռների օգնությամբ։ Այս տեսակետից հետաքրքրական էր 1583 կիլոգրամանոց «Լունիկ—9» ավտոմատ կայանը, որը թռիչքի երրորդ օրը, աշխարհում առաջին անգամ, փափուկ վայրէջք կատարեց Լուսնի վրա (Մրրիկների օվկիանոսի արևելյան հատվածում)։ Նա Երկրին էր հաղորդում Լուսնի մակերևույթի հեռուստատեսային պատկերը և զանազան հեռուստաչափիչ ինֆորմացիաներ։

Ահա և «Զոնդ» սերիայի 3 ավտոմատ կայանները, որոնք անվնաս վայրէջք են կատարել Լուսնի վրա, կարևոր տեղեկություններ հաղորդել միջմոլորակային մագնիսական դաշտի պլազմայի, կոսմիկական ճառագայթների, տիեզերական երկարալիք ռադիոճառագայթման և այլնի մասին, ինչպես նաև Լուսնի մակերեսի այն հատվածների հեռուստատեսային պատկերը, որը մինչև այդ չկար։ Այժմ փաստորեն կա Լուսնի մակերեսի այն հատվածների հեռուստատեսային համայնապատկերը, և որոշակի պատկերացում նրա մակերեսի գոյացությունների մասին։ «Զոնդ» սերիայի ավտոմատ կայանների արձակումն իրագործվեց էլեկտրառեակտիվ պլազմային շարժիչների միջոցով։ Այդ գործում դարձյալ առաջնությունը պատկանում է Սովետական Միությանը։

Տաղավարում ցուցադրվող միջմոլորակային ավտոմատ կայանների («Զոնդ», «Վեներա», «Մարս») թռիչքները վկայում են, որ նոր էտապ է սկսվում Երկրամերձ մոլորակների ուսումնասիրման բնագավառում։

Տիեզերական տեխնիկան, սակայն, միայն հետազոտական նպատակների համար չէ. այն օգտագործվում է նաև ժողովրդական տնտեսության կարևոր, գործնական խնդիրները լուծելիս։ Այժմ, Երկրի արհեստական արբանյակները ծառայում են որպես կապի և օդերևութաբանական հետազոտությունների միջոց։ Դրա ապացույցն է «Մոլնիա—1» կապի արբանյակը, որի մոդելը տաղավարի ուշագրավ ցուցանմուշներից է։

«Կոսմոս» տաղավարի էքսպոզիցիան սովետական գիտնականների, ինժեներների, տեխնիկների տասնամյա բեղնավոր գործունեության յուրահատուկ հաշվետվությունն է Մեծ Հոկտեմբերի 50-ամյակի և տիեզերքի ուսումնասիրման 10-ամյակի առթիվ։

## ԱՏՈՄԸ ԴԱՌՆՈՒՄ Է ԲԱԶՄԱԿԵՆՑԱՂ

XX դարը նշանավորվեց ատոմային էներգիայի հայտնագործմամբ։ Հրաշագործ ատոմը հետզհետե թափանցում է կյանքի ամենաբազմազան ոլորտները, դառնում վիթխարի էներգիայի՝ լույսի, ուժի աղբյուր, հիվանդությունների աշխատորոշման ու բուժման միջոց, արդյունաբերական ու տեխնոլոգիական պրոցեսների հսկիչ ու ղեկավար։

«Ատոմային էներգիա» տաղավարի էքսպոզիցիան գլխավորապես նվիրված է ատոմային էներգիայի խաղաղ նպատակների օգտագործմանը... Մի ընդարձակ դահլիճում ցուցադրված են ՍՍՀՄ տարբեր վայրերում կառուցված ատոմային էլեկտրակայանների ռեակտորների մակետները և գործող մոդելները։ Ահա մի մոդել «Ромашка» սարքավորման, որն աշխարհում առաջին անգամ ատոմային էներգիան անմիջականորեն փոխարկեց էլեկտրականի։ Ցուցադրվում է նաև համաշխարհային պրակտիկայում առաջին անգամ կիրառվող «СМ—2» մարկայի հետազոտական ռեակտորի մակետը։ Այդ ռեակտորը գործում է միջանկյալ նեյտրոններով, ջրային դանդաղեցուցչի առկայությամբ։ Ուշագրավ է Վ. Ի. Կուրչատովի անվան բելոռուսական ատոմային կայանի ռեակտորի մակետը. ԲԱԷՍ-ի առաջին և երկրորդ բլոկների ընդհանուր հզորությունը կազմում է 500.000, իսկ ջերմային հզորությունը՝ 846.000 կվտ.։ Առանձին հետաքրքրություն է ներկայացնում Նովո-Վորոնեժի ատոմային կայանի մակետը. այն ՍՍՀՄ-ում կառուցված առաջին հզոր ատոմային էլեկտրակայաններից է, որը էլեկտրաէներգիա է մատակարարում երկրի եվրոպական մասի արդյունաբերական կենտրոնին։ Կայանի հզորությունը 640.000 կվտ. է։ 24 ժամում էլեկտրակայանը ծախսում է 700 գրամ ուրան, որը փոխարինում է 2,5 հազար տոննա քարածխի։ Այս փաստը վկայում է, թե ինչ հսկայական նշանակություն է ստանում ատոմը՝ էլեկտրաէներգիայի այդ նոր աղբյուրը։

Այցելուներին գրավում է «БН—350» մարկայի արագ նեյտրոններով գործող ատոմային էլեկտրակայանի ռեակտորի սիմվոլիկ մակետը։

Վերջինս կառուցվում է Կասպից ծովի ափին, էլեկտրաէներգիա է մատակարարելու Շևչենկո քաղաքին և նրա արդյունաբերական կենտրոնին։ Բացի այդ կապահովի ջրի թորող սարքերի աշխատանքը, որը մեկ օրում կարտամղի 120 հազար մ³ խմելու ջուր։ Դա ՍՍՀՄ-ում առաջին հզոր ռեակտորն է, որը գործելու է արագ նեյտրոններով՝ ծառայելով երկու նպատակի։ Դահլիճի էքսպոնատները կարծես իրենց ասելիքը եզրափակում են մի դիագրամով, որտեղ տրված է Միության ատոմային էլեկտրակայանների հզորության աճը։ Այսպես. 1964 թվականին ատոմային կայանների ընդհանուր հզորությունը կազմել է 900.000 կվտ. 1970 թվականին այն հասնելու է մի քանի միլիոնի, իսկ 1980 թվականին՝ մի քանի միլիարդ կիլովատի։

Արդի միջուկային ֆիզիկայի ակտուալ ու հրապուրիչ պրոբլեմներից մեկն իրերի կառուցվածքի գաղտնիքի մեջ թափանցելն է։ Այդ խնդիրը հաջողությամբ լուծվում է տեխնիկական բարդ սարքավորումների՝ լիցքավորված մասնիկների արագացուցիչների օգնությամբ։ Արագացուցիչ մասնիկների էներգիան այժմ հասնում է մի քանի տասնյակ միլիարդ էլեկտրոնվոլտի։ Հզոր արագացուցիչ-



ների կառուցմամբ ՍՍՀՄ-ը աշխարհում բռնում է առաջին տեղը։ Այս հանգամանքը մեծ չափով նպաստեց միջուկային և տարրական մասնիկների ֆիզիկայի արագ զարգացմանը։

Այստեղ ցուցադրվում է աշխարհում առաջին հզոր արագացուցչի, ինչպես նաև աշխարհում առաջին մեկ միլիարդ էլեկտրոնվոլտ էներգիայի կիբեռնետիկական արագուցուցչի մակետը։ Տաղավարում կան տարբեր տիպի և հզորության արագացուցիչների սխեմաներ, մակետներ՝ սկսած ամենափոքրից, որոնք ունեն մի քանի միլիոն էլեկտրոնվոլտ էներգիայի մասնիկներ և վերջացրած տասնյակ միլիարդ էլեկտրոնվոլտ մասնիկների արագացուցիչներով։

Ուշագրավ ցուցանմուշներից է «Լենին» ատոմային սառցահատի գործող մոդելը։ Պրակտիկան ցույց տվեց, որ «Լենին» ատոմագնացին անհասանելի չէ Հյուսիսային Սառուցյալ Օվկիանոսի և Արկտիկական ծովերի ոչ մի տեղամաս։ Հետևաբար, ատոմային էներգիայի կիրառումը լայն հեռանկարներ է բացում նավագնացության զարգացման բնագավառում։

Հետաքրքրական է նաև տաղավարի այն սրահը, ուր ցուցադրվում են ռադիոակտիվ իզոտոպների կիրառությունը ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում, տեխնոլոգիական պրոցեսները հսկելու և ղեկավարելու համար։ Ի տարբերություն սովորական հսկիչ-չափիչ ապարատների, ռադիոիզոտոպային սարքավորումների առավելությունն այն է, որ բացառվում է որևէ կոնտակտ նյութի կամ նրա միջավայրի հետ։ Այն կարող է լինել թունավոր ու վնասակար ամենից առաջ մարդու համար։ Ռադիոակտիվ սարքերի կիրառմամբ ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության մեջ տարեկան տնտեսվում է մոտ 200—240 մլն ռուբլի։

Ռադիոակտիվ իզոտոպները լայնորեն ներդրվում են բժշկության մեջ։ Ստեղծված են բազմատեսակ թերապևտիկ և ախտորոշիչ ապարատներ, որոնք թույլ են տալիս ռադիոակտիվ դեղամիջոցների օգնությամբ անսխալ ախտորոշել և հաջողությամբ բուժել շատ հիվանդություններ։ Այսպես, ցուցադրվող «Ռոկուս», «Գամմա-բետտա» թերապևտիկ սարքավորումները, «Բետատրոնը» նախատեսված են չարորակ ուռուցքներով հիվանդների համար։ Այսպիսով, ռադիոիզոտոպային ախտորոշումը դառնում է կլինիկական ախտաբանության հիմնական մեթոդներից մեկը։

***

Այս երկու տաղավարների էքսպոզիցիաները դիտելուց հետո օրինական հպարտությամբ է լցվում մարդու հոգին, բայց և մտահոգվում է մարդը... Տիեզերք և ատոմ... Մեր դարը խորհրդանշող այս մոգական բառերը անհասկանալի մի տագնապ են արթնացնում աշխարհի տարբեր կողմերում։ Իսկ եթե ռազմամոլները, որոնք նույնպես ունեն հրթիռա-տիեզերական տեխնիկա, այն օգտագործեն մարդու հանճարով ստեղծված հազարամյա քաղաքակրթությունը ոչնչացնելու համա՞ր։ Դա սոսկալի է։ Սովետական մարդիկ և աշխարհի առաջադեմ ուժերը բնավ չեն կարող հաշտվել այդ դաժան մտքի հետ։ Ուստի, ամեն կերպ պայքարում են իմպերիալիզմի ռազմատենչ ուժերին սանձահարելու, ատոմի և հրթիռային տեխնիկայի ամենազոր ուժը ծառայեցնելու բացառապես աշխարհը շենացնելու, մարդու հոգսերը թեթևացնելու, նրա երջանիկ ու խաղաղ ապագան կառուցելու վսեմ նպատակին։

ՅԱՎՐՅԱՆ Ա. Գ.

պայքարի ավարտմանը,— հնչում էր նրա հավատով լի ձայնը, ՀԼԿԵՄ VIII համագումարի ամբիոնից. նա զեկուցում էր կոմերիտմիության մարքս-լենինյան դաստիարակության խնդիրների մասին:

Շատ սիրված, համակրելի, անսահման նվիրված ղեկավար էր նա, ինչ-որ առինքնող կրակ կար նրա մեջ, որով ոգևորել, հմնայել գիտեր ամենքին:

Որտեղ էլ աշխատել է նա՝ Լոռի-Փամբակում, Լենինականի գավկոմում թե Երևանում, կարճ ժամանակամիջոցում աշխատողները համակրել, կապվել են նրա հետ: Երիտասարդ ու խանդավառ գործչին հաճախ տեղափոխում էին կուսակցական տարբեր աշխատանքի. որտեղ դժվար էր գործը, այնտեղ էր Պապիկը՝ մարդամոտ, չափից ավելի զգայուն ու ուրտացավ ընկերների, ենթակաների նկատմամբ: Դժվարությունները շատ էին, և նա կարողանում էր իր ընկերական կապերն օգտագործել իրեն հանձնարարված գործը գլուխ բերելու համար: Դժվար է մեռնել միշտ, ամենուրեք քեզ օգնող, սիրված մարդուն: Իսկ Պապիկին շատ էին սիրում: Երբ նրան տեղափոխում էին այլ աշխատավայր, նրա աշխատանքային ընկերները, նրան ճանաչողները ափսոսում, տխրում, նամակով դիմում էին Կենտրոնական կոմիտե, խնդրելով թողնել նրան իրենց մոտ, իրենց հետ գործելու:

Թե՛ գավառային կոմիտեներում, թե՛ Հայաստանի կենտրոնական կոմիտեում կազմ. բաժնի վարիչ, թե՛ տրանսպորտի գծով ՀԿ(բ)Կ ԿԿ-ի քարտուղար եղած ժամանակ նա ակտիվ մասնակցել է Հայաստանի կոմունիստական կուսակցության համագումարներին, իսկ նրա ելույթները լսողները մինչև օրս էլ հիշում են նրան՝ որպես մեր կուսակցության համոզված գաղափարական մարտիկի, փայլուն հռետորի. խոսքի անմիջականությամբ, մատչելիությամբ ու կոնկրետությամբ նա կարողանում էր հիմնավորել իր կարծիքը, համոզել լսողներին, մագնիսացնել ողջ դահլիճը:

Հայաստանում սոցիալիստական շինարարության առաջին քայլերն էին արվում: Երևանում շահագործման հանձնվեց առաջին հիդրոէլեկտրակայանը (1926 թ. մայիս), կառուցվեց ձեթօճառի գործարանը (ն. թ. նոյեմբեր), սկսվեց Հայաստանի քիմիական արդյունաբերության առաջնեկի՝ Երևանի կարբիդի գործարանի, ապա՝ Ձորագէսի շինարարությունը: Ամենուր կարելի էր տեսնել Պապիկին, քաթանե հասարակ բլուզով, երկարաճիտ կոշիկներով, շատ հաճախ անգլխարկ, իսկ ձմեռը՝ կաշվե կարճ պիջակով, կաշվե գլխարկով և միշտ ոգևորված ու ժպտուն, սղալելով գանգուրները, հպարտությամբ ու հրճվանքով ասում էր՝ Երևան մայրաքաղաքը մայրաքաղաք է դառնում:

Իսկ երեկոյան, երբ ընկերներով հավաքվում էին Գ. Եսայանի, երբեմն էլ Ա. Խանջյանի մոտ, ոգևորությամբ նա արտասանում էր իր սիրած բանաստեղծներից՝ Թումանյանից, Տերյանից, Իսահակյանից... Այնպես էր արտասանում վերջինիս Հավերժական սերը, ասես էլ-Սամանն էր սիրավառ. այդ պահերին տխրում էր նա, կարծես հիշելով իր վաղամեռիկ քամբիշին՝ Սիրունիկին... Այդ ժամանակ նա հավատում էր սիրո հավերժությանն ու զորությանը՝

Ես չե՛մ թողնի, ես չեմ թողնի դու մեռնիս:

Հուզված լսողները սրտանց ափսոսում էին, որ նա դերասան չի դարձել. չէ՛ որ անկետաներից մեկում նա գրել էր, որ կուլտուրայի բնագավառում կարող է և դերասան լինել... Այդ պահերին երևան էր գալիս նրա երազուն— լիրիկականությունը և, ովքեր կարդացել էին, հիշում էին «Կոմունիստում» տպված նրա գողտրիկ, կրակոտ բանաստեղծությունները: Անչափ շատ էր սիրում Չարենցին, նրա և՛ լիրիկական, և՛ մարտաշունչ էպիկական գործերը.

— Հեղափոխությունը ծնեց Չարենցին, և Եղիշեն պարտքի տակ չմնաց,— ասում էր հրճվանքով Պապիկը. նա բարձր էր գնահատում իր ժողովրդի արժանիքները, բայց բնավ տուրք չէր տալիս ազգային սնապարծությանը: Գաղափարական այդ կոմունիստն իր հայացքներով սահմանափակ չէր, արժեքավորում, հիանում էր ռուս և համաշխարհային կլասիկների լավագույն գործերով:

Մոսկվա: Միջազգային լենինյան դասընթացներ, ուր սովորում էին աշխարհի տարբեր երկրների, տարբեր ազգությունների երիտասարդ կոմունիստները: Անհրաժեշտ էր մարդասեր ու մարդամոտ ընկեր՝ այդ դասընթացների կուսակցական կազմակերպությունը ղեկավարելու համար: Սովետական Միության կոմունիստական կուսակցության կենտրոնական կոմիտեի որոշմամբ Պապիկն ազատվում է ՀԿ(բ)Կ ԿԿ-ի քարտուղարի պարտականություններից և առաջադրվում միջազգային լենինյան դասընթացների կուսակցական կազմակերպության քարտուղար: Եվ, ինչպես ամենուրեք, այստեղ ևս Պապիկը կարճ ժամանակամիջոցում բացառիկ հեղինակություն ձեռք բերեց ունկնդիրների շրջանում, կարողացավ համախմբել նրանց իր շուրջը: Միաժամանակ նա սովորում էր Կարմիր պրոֆեսուրայի տնտեսագիտական բաժնում, ամենայն խորությամբ յուրացնում մարքս-լենինյան ուսմունքը:

1931 թվականին Պապիկը կրկին Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմում է. «Այլ աշխատանքի անցնելու կապակցությամբ... ընկեր Պապիկին ազատ համարել տրանսպորտի գծով քարտուղարի պարտականություններից»



-կարդում ենք Կենտկոմի նախագահության որոշումը: Ուրեմն, կուսակցությունն անհրաժեշտ է գտնում նրա ներկայությունը Լենինականում. և նա Լենինականում է, քաղաքային կոմիտեի քարտուղար: Թեև կարճատև, բայց այդ պոստում ևս արդյունավետ գործեց Պապիկը:

Հավաքվել են ընկերները... Ճանապարհում են այդքան կարճ ժամանակամիջոցում այդպես հարազատացած քարտուղարին... բաժանումը, ինչպես միշտ, ծանր է... Նորապսակ Պապիկը կնոջ՝ բժշկուհի Թամարայի հետ գնացք է նստում ու մեկնում... Կրասնի Լիման. Լուգանսկի երկաթուղու, իսկ 1936 թ. մայիսից Հարավ-Արևմտյան երկաթուղու քաղբաժնի պետ:

Ե՛վ կուսակցության, և՛ կոմերիտմիության գծով նրա հետ աշխատողները, նրան ճանաչողները անկեղծ ափսոսանքով ու ջերմությամբ. մեծ հիացմունքով պատմում են նրա մասին՝ որպես անձնուրաց, բյուրեղյա կոմունիստի, մարքսիզմի գաղափարների բոցավառ պրոպագանդիստի: Ջերմ էր նրա հմայքը և՛ որպես մարդ, և՛ որպես գործիչ: Իր և ուրիշների նկատմամբ չափազանց պահանջկոտ, աշխատասեր, հոգատար պատրաստակամությամբ նա լսում, աջակցում էր իրեն դիմողներին: Ինքն անձամբ լինում էր տեղերում, հետաքրքրվում, հարցուփորձ անում, ինչով կարողանում, օգնում էր... Այստեղ ևս նա ոչ մի ջանք չէր խնայում կուսակցության վստահությունն արդարացնելու համար:

1936 թվականին Պապիկն արժանանում է մեր երկրի մեծագույն պարգևին՝ Լենինի շքանշանին:

***

Բացվեց աշխատանքային սովորական առօրյան ավետող առավոտը: Ինչպես միշտ, Պապիկը ամենքից շուտ էր գնում աշխատանքի: Նախաճաշից մի փոքր առաջ լսվեց հեռախոսի զանգը:

— Մոսկվայից քեզ կանչում են, գնա տուն, հանգստացիր, պատրաստվիր, որ վաղը մեկնես:

Այդ օրը, թերևս այլևս երբեք, նա չնախաճաշեց. և ոչ էլ ճաշեց... Անտրամադիր տուն եկավ ու պառկեց...

Երեք տարի առաջ էր նա դուրս եկել Հայաստանից և այլևս ոտք չէր դրել այնտեղ... Իսկ այժմ նրան կանչում են Մոսկվա... Հուշե՜ր, հուշեր, ծանր խորհրդածություններ, «մեղքերի» որոնումներ... Երկար ու ձիգ, անքուն գիշեր...

Առավոտյան օգնականի հետ գնացին կայարան... Պապիկն ամենևին նման չէր իրեն, ասես ծերացել, ծանրաքայլ ու մռայլ էր դարձել. մըտավ իր վագոնը, պայուսակը ցած դրեց ու դուրս եկավ: Երկար սպասեց օգնականը, բայց նա չեկավ: Անջատեցին գնացքը նրա վագոնից. գնացքը շարժվեց. քաղբաժնի պետի վագոնը մնաց տեղում...

— Դեպոյի կողմը գնաց,—ասացին օգնականին, և մի խումբ մարդիկ վազեցին դեպի դեպոն: Հենց այդտեղ էլ Պապիկը վերջ էր տվել իր կյանքին... Նա չէր ուզել գնալ ու էլ ետ չգալ...

Մինչև այժմ էլ ժպտերես, կենսախինդ ու վառվռուն երիտասարդին, անսասան, խիզախ ու համարձակ գործչին ճանաչողները չեն հավատում, որ նա չկա...

Այնպե՜ս անհարիր էին մահն ու երեսունյոթամյա Պապիկը...

ՍԱՐՈՅԱՆ ԷՄՄԱ

տաքրքրական փաստեր է բերում Անդրկովկասի ականավոր բոլշևիկների հետ Վ. Ի. Լենինի սերտ կապերի մասին, նշում, որ այդ կապերը երկրամասի կուսակցական կազմակերպությունների աշխատանքի հաջողությունն ապահովող կարևոր գործոններից էին։

Պատերազմ հայտարարելու երկրորդ օրը Բաքվի բոլշևիկները լույս ընծայեցին «Պատերազմ՝ պատերազմին» թռուցիկը, որով կոչ արեցին պայքարել իմպերիալիստական պատերազմի դեմ։

Մեր կարծիքով, մենագրությունն անհամեմատ ավելի կշահեր, եթե հեղինակը փորձեր հանգամանորեն քննարկել համաշխարհային պատերազմի հետևանքով արևմտահայության առջև ծառացած խնդիրները, ինչպես և խոսեր այդ առնչությամբ Անդրկովկասի բոլշևիկների գրաված դիրքի մասին։ Գրքի 232—239 էջերում հեղինակը մի փոքր պարզունակ է ներկայացրել այն պրոբլեմները, որոնք մինչև օրս էլ մեր պատմաբանների գործերում պատշաճ լուսաբանված չեն։ Հեղինակը գրում է. «Պատերազմի, խաղաղության և հեղափոխության հարցերի վերաբերյալ լենինյան տեսությամբ զինված Անդրկովկասի բոլշևիկները պարզաբանում էին մասսաներին, որ հայ ժողովրդի ազատագրության միակ ուղին սոցիալիստական հեղափոխության ուղին է» (էջ 239)։ Դա անվերապահորեն ճշմարիտ էր արևելահայության համար։ Բայց չէ՛ որ օսմանյան կայսրության մեջ խոսք անգամ չէր կարող լինել սոցիալիստական հեղափոխության մասին։ Ուրեմն ո՞րն է արևմտահայության ազատագրության բոլշևիկյան ֆորմուլան՝ առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին և սկզբին։ Այս հարցին է, որ պետք է պատասխաներ հեղինակն իր գրքում։

Բազմաթիվ նոր հետաքրքրական փաստաթղթեր են բերված աշխատության վեցերորդ գլխում— Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունները սոցիալիստական հեղափոխությանն անցնելու լենինյան պլանի կենսագործման համար մղած պայքարում:

Երկրամասի չափազանց բարդ պայմաններում Հոկտեմբերի գաղափարների իրականացման համար պահանջվում էր բոլոր ջանքերի մեծագույն լարում։ Հաղթահարելով այդ ժամանակվա դժվարությունները, Անդրկովկասի կուսակցական կազմակերպությունները կարողացան պահպանել իրենց սերտ կապերը կուսակցության կենտկոմի և անձամբ Լենինի հետ, դժվարին պայքար էին մղում հանուն պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հաղթանակի։ 1917 թ. մայիսի 1-ին «Սոցիալ-դեմոկրատ» հայերեն թերթում Ստ. Շահումյանը գրել է. «Կովկասին ամենից առաջ հարկավոր է միջազգային համերաշխություն...»։ Երկրամասի բոլշևիկների ջանքերով Լենինի աշխատությունները լայնորեն պրոպագանդվում էին Անդրկովկասի բազմազգ պրոլետարիատի շրջանում։

Հեղինակը հանգամանորեն անդրադարձել է Կովկասի բոլշևիկյան կազմակերպությունների I համագումարին, ցույց տվել նրա մեծ նշանակությունը աշխատավորությանը կուսակցության շուրջն ավելի սերտ համախմբելու գործում։ Մեծ հետաքրքրությամբ են ընթերցվում այն էջերը, ուր խոսվում է Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի առաջին արձագանքների մասին Անդրկովկասում։ «Իրականացավ,— գրել է Սարիղամիշի բոլշևիկների առաջնորդ Ստեփան Ալավերդյանն այդ օրերին.— Մենք կանգնած ենք համաշխարհային կարևորություն ունեցող պատմական փաստի առաջ, փաստ, որի նմանը չի հիշում մարդկային պատմությունը» (էջ 318—319)։

Անդրկովկասի բազմազգ պրոլետարիատը բոլշևիկների ղեկավարությամբ հերոսաբար պայքարում էր սոցիալիստական հեղափոխության լենինյան պլանի իրականացման համար։

Երեք տարի տևեց սովետական իշխանության հաղթանակի համար մղված պայքարը Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում։ Ահա այդ հարցերին է նվիրված մենագրության յոթերորդ գլուխը։ Այստեղ է թե՛ «Թուրքահայաստանի» մասին հայտնի դեկրետը և թե Բաքվի կոմունայի հերոսական էպոպեան։ Կոմունայի համար ճակատագրական այդ պահին Վլադիմիր Իլյիչն ասել է. «Ամեն ինչ Բաքվի համար»։

Գրքում ցույց է տրված, որ Բաքվի բոլշևիկներն Ստեփան Շահումյանի հմուտ ղեկավարությամբ անում էին ամեն ինչ, օգտագործելով անգամ ամենափոքր հնարավորությունը, հակահեղափոխության միավորված ուժերից Բաքուն պաշտպանելու համար։ Բաքվի կոմունարները ցուցաբերեցին իրենց անսահման նվիրվածությունը սովետական իշխանությանը, ժողովրդին, կոմունիզմի գործին։

Լավ կլիներ գրքում վեր հանել Սարդարապատի ճակատամարտի պատմական նշանակությունը, արտացոլել թուրքական զավթիչների դեմ Հայաստանի աշխատավորության հերոսական դիմադրությունը Երևանի մատույցներում։ Չէ՛ որ թուրքերի այդ հարձակումը ամենավտանգավորն էր Անդրկովկասի սովետական իշխանության համար 1918 թվականի գարնանը, և այդ հարձակմանը հակահարված տալը դժվարագույնն էր երկրամասի բոլշևիկների առջև ծառացած խնդիրներից։

Այս գլխի հաջորդ էջերում վերլուծված է Բաքվի կոմունայի անկումից հետո Անդրկովկասում ստեղծված քաղաքական իրադրությունը, լուսաբանված է գերմանա-թուրքական ու անգլո-ամերիկյան ինտերվենտների ու նրանց դրածոների



դեմ կոմունիստական կազմակերպությունների սովետական իշխանության համար մղած պայքարի հիմնական մոմենտները։

Սովետական իշխանության հաղթանակը Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում լենինյան ազգային քաղաքականության հաղթանակ էր, որը նոր էտապ բացեց ժողովուրդների պատմության մեջ։ Այդ նոր էտապի սկզբնավորումը անխզելիորեն կապված է մեծ Լենինի անվան հետ։ Այդ միտքը կարմիր թելի պես անցնում է ողջ գրքի միջով։ Այդ են հաստատում նաև այն նյութերը, որ հեղինակը օգտագործել է ութերորդ գլխում— Վ. Ի. Լենինը և Անդրկովկասի բոլշևիկների պայքարը հանուն ժողովրդական տնտեսության վերականգնման և ժողովուրդների բարեկամության ամրապնդման:

Լենինն անձամբ ճանաչում և բարձր էր գնահատում Սովետական Անդրկովկասի կուսակցական, պետական, զինվորական ու տնտեսական շատ գործիչների։ Նա հոգատար էր ազգային կադրերի նկատմամբ, միաժամանակ պահանջկոտ, իր նամակներով, հեռագրերով, ինչպես և անձնական հանդիպումների ժամանակ նա օգնում էր նրանց՝ ճիշտ կողմնորոշվելու սոցիալիզմի գործնական ու տեսական հարցերում։ Մենագրության մեջ բերված բազմաթիվ օրինակները ցույց են տալիս, որ Լենինը քաջատեղյակ էր Սովետական Անդրկովկասի տնտեսական, քաղաքական ու կուլտուրական զարգացման վիճակին։ Անդրկովկասի բոլշևիկները միշտ էլ երախտագիտությամբ էին ընդունում ու անշեղորեն կատարում Լենինի խորհուրդներն ու ցուցումները։ Երկրամասի աշխատավորությունն անսահման սիրում էր մեծ առաջնորդին, շնորհակալությամբ ընդունում Սովետական Ռուսաստանի անգնահատելի օգնությունը։

Վլադիմիր Իլյիչն ընդգծում էր, որ անհրաժեշտ է ուշադիր ու հոգատար լինել նախկինում ցարիզմի կողմից ճնշված ազգերի տնտեսական, քաղաքական ու կուլտուրական պրոբլեմների նկատմամբ, միավորման ժամանակ խիստ պահպանել սովետական հանրապետությունների լիակատար իրավահավասարության սկզբունքը։ Աշխատավորներին, կոմունիստներին նա դաստիարակում էր պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության ոգով, կոչ անելով նրանց անողոք պայքար մղել մեծապետական շովինիզմի և տեղական նացիոնալիզմի ամեն մի դրսևորման դեմ։

Անդրկովկասի աշխատավորները ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական ընտանիքում, եզրափակում է աշխատությունը հեղինակը, Լենինի ամենահաղթ դրոշով, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ աննախընթաց հաջողությունների հասան տնտեսական ու կուլտուրական կյանքում և պայքարում են հանուն կոմունիստական հասարակարգի կառուցման։

Գ. Ղարիբջանյանի աշխատությունը խիստ անհրաժեշտ գիրք է ընթերցող լայն շրջանների համար։ Դժբախտաբար, գրքին կցված չեն օգտագործված գրականության բիբլիոգրաֆիա և այլ ցանկեր, որոնք այնպես անհրաժեշտ են այդպիսի ակադեմիական հրատարակություններին, մանավանդ որ գրքի պոլիգրաֆիական ու գեղարվեստական ձևավորումն անթերի է։

ԿԻՐԱԿՈՍՅԱՆ Ջ. Ս.
Պատմական գիտությունների դոկտոր

# ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԴՐՎԱՏՈՒՄԸ «ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՈՒՂԻՈՎ» ԹԵՐԹՈՒՄ

էջմիածին։ Երբեմնի գավառական փոքրիկ մի կենտրոն, ուր չորս տասնյակ տարիներ առաջ կավածեփ տներ էին միայն, նեղ, աղբածածկ փողոցներ... Վանքի ու տների պատերի տակ ծվարած մալյարիայով ու տիֆով տառապող հազարավոր գաղթականներ...

Նոյեմբերյան հեղափոխությունն ամբողջովին փոխեց նրա տեսքը, դարձնելով այն հանրապետության զարգացող քաղաքներից մեկը։ էջմիածինն այժմ հայտնի է իր գործարաններով, արդյունաբերական ձեռնարկություններով, կուլտուր-լուսավորական, գիտահետազոտական բարեկարգ հիմնարկություններով։ Վերելք են ապրում նաև շրջանի գյուղերը, բանավանները, որոնց առօրյան, հետաքրքրական գործերն ու ձեռնարկումներն արտացոլվում են շրջանային թերթի էջերում։

Արդեն յոթերորդ տարին է, ինչ լույս է տեսնում ՀԿԿ էջմիածնի շրջկոմի և շրջսովետի օրգան «Կոմունիզմի ուղիով» թերթը՝ հայերեն և ադրբեջաներեն. այն սիստեմատիկ լուսաբանում է քաղաքի և շրջանի կուլտուրական կյանքը, ծանոթացնում գիտության նվաճումների, առաջավոր կոլտնտեսությունների, սոցիալիստական մրցության առաջավորների հետ։ Թերթում հրապարակվում են և ընթերցողների նամակները, ակնարկներ լավագույն աշխատողների՝ գրադարանավարների, մանկավարժների, հողագործների և այլոց մասին։

Ակնրախ են թերթի խմբագրության ջանքերը շրջանի կուլտուրական կյանքի, առաջընթացի դրվատման ուղղությամբ։ Հետաքրքրական է Մակար Եկմալյանի անվան երաժշտական յոթնամյա դպրոցի քսանամյակին նվիրված էջը։ Հիմնադրման առաջին տարում ընդամենը 15 աշակերտ, մեկ ուսուցիչ և մի դաշնամուր ունեցող դպրոցն իր քսանամյակը տոնում է 300 աշակերտներով, որակյալ ուսուցիչներով. այն ունի ուսումնա-արտադրական հարուստ բազա, նոտաների գրադարան։ Շրջանավարտներից շատերն ուսումը շարունակում են Միության և հանրապետության կոնսերվատորիաներում։ Դպրոցը սերտ կապերի մեջ է Երևանի Չայկովսկու, Սարաջևի, Լենինականի Կոմիտասի անվան № 2 և Արարատյան դաշտավայրի երաժշտական դպրոցների հետ. հաճախակի կազմակերպվում են դպրոցի սաների և Երևանի կոնսերվատորիայի ուսանողների հանդիպումներ։ Տարեցտարի աճում է ընդունվողների թիվը։ Այստեղ սովորում են նաև շրջանի գյուղերի երեխաները։ Մի այլ համարում կարդում ենք այդ դպրոցի դիրեկտոր Լ. Մկրտչյանի

Դպրոցի երկրորդ վաստակավորը հոդվածը՝ նվիրված երգչախմբի ղեկավարին։

1946 թվական։ Հազարավոր հայերի հետ տուն է վերադարձել նաև Մ. Շարբաթյանի ընտանիքը։ Հայրենի երգը հայրենի հողում—անսեթևեթ տվեց երաժշտասեր խմբավարին. շուտով նրա ղեկավարած երգչախումբը լայն ճանաչում գտավ շրջանում ու նրանից դուրս և 50-ամյակին նվիրված երևանյան երաժշտական փառատոնում արժանացավ երկրորդ կարգի մրցանակի։ Վաստակավոր ուսուցիչն իր գիտելիքները սիրով հաղորդում է սաներին, ծանոթացնում նրանց հայ, ռուս, արևմտաեվրոպական կոմպոզիտորներին։ Նրա սաներից շատերն աչքի են ընկել շրջանային և հանրապետական մրցույթներում։

Թերթը հաճախ է անդրադառնում շրջանի գեղարվեստական ինքնագործ խմբերին. այսպես՝ դրանց գործունեությունն է արտացոլված Ինքնագործ խմբի հաջողությունը և հոգսերը, Երգչախումբը մրցանակակիր, Գյուղի ինքնագործ խումբը և այլ հոդվածներում։

Գյուղի աշխատավորի կուլտուրական հանգստի հետաքրքրական, բովանդակալից կազմակերպմամբ են մտահոգված ակումբների, գրադարանների և կուլտուրայի տների ղեկավարները։ Նրանց պատասխանատու և պատվաբեր գործունեությունը ևս արտացոլված է թերթում։ Երբ գործը կատարում են սիրով հոդվածում գոհունակությամբ է խոսվում Ն. Ջեյվա գյուղի կոլտնտեսության ակումբի վարիչ Յ. Ներսիսյանի մասին։ Նրա ջանքերով հաճախ կազմակերպվում են դասախոսություններ, զրույցներ տարբեր թեմաներով. սենյակներում և ակումբի միջանցքներում փակցված են մեր հայրենիքի առօրյան պատկերող դիագրամներ, պլակատներ, լուսանկարներ, զետեղված են ստենդներ։ Շատ բան է արված գրքի պրոպագանդման ուղղությամբ։ Ներքին Ջեյվացին սիրում է գիրքը, գիտե նրա արժեքը։

Մի այլ հոդվածում՝ Միշտ անհանգիստ ու պրպտող, կարդում ենք Արագած գյուղի գրադարանի մասին, որը մեր հանրապետությունում առաջինն է արժանացել գերազանց աշխատանքի գրադարանի կոչման։ Նրա անմխիթար վիճակը չհուսահատեցրեց մեծ հայրենականից վերադարձած Յ. Այվազյանին։ Գրքի պրոպագանդման նպատակով հասարակական հիմունքներով ֆերմայում նա ստեղծեց գրադարան։ Արդյունավետ էին նրա ջանքերը գրադարանի հարստացման բնագավառում։ Այն այժմ ունի 8184 կտոր գեղարվեստական և մասնագիտական գիրք. մշտական ընթերցողների թիվն արդեն անցել է 650-ից։

Թերթում ինֆորմացիաներ են տպագրվել շրջանի գրադարաններում ու ակումբներում կազմակերպված հանդիպումների (բանաստեղծներ Հովհ. Շիրազի, Լևոն Միրիջանյանի և այլոց հետ), լույս տեսած նոր գրքերի քննարկումների մասին։

Անցյալ տարի լրացավ հեղափոխության մեծ երգիչ, հայ ժողովրդի հանճարեղ բանաստեղծ Եղիշե Չարենցի ծննդյան 70-ամյակը։ Այդ առթիվ հետաքրքրական հոդվածներ են գրել Ս. Սարգսյանը (Մեծ բանաստեղծը) և Ս. Արզումանյանը (Չարենցը և հեղափոխությունը)։ Հոդվածներ են տպագրվել նաև կենսաբան Լ. Օրբելու ծննդյան 85, անվանի ծովանկարիչ Հ. Այվազովսկու՝ 150-ամյակի առթիվ։

Թերթն իր էջերը սիրով է նվիրել սկսնակ բանաստեղծներին։ Հոկտեմբերյան հեղափոխության 50-ամյակի առթիվ շրջանային գրադարանում կազմակերպված գրական խմբակի պարապմունքներին մասնակցել են բանվորներ, դպրոցականներ, կոլտնտեսականներ, ինժեներներ, ուսուցիչներ։ Եվ ահա թերթը ամբողջ մի էջ է նվիրել դրան, տպագրել նրանց բանաստեղծությունները։

Սակայն, պետք է ասել, որ թերթում սակավ ենք հանդիպում երիտասարդ սկսնակ բանաստեղծների, արձակագիրների բանաստեղծություններին, ակնարկներին, թերությունները ձաղկող ֆելիետոններին։ Թերթը, մեր կարծիքով, չպետք է բավարարվի առիթից առիթ էջեր տրամադրելով նրանց. պետք է դառնա առաջին ընդարձակ ասպարեզը, ուր կարտացոլվեն շնորհալի երիտասարդների առաջին գրական քայլերը։

Թերթը պետք է ուղղություն տա սկսնակին, ցույց նրա սխալները, խրախուսի, թևավորի նրան։ Այս բնագավառում մեծ են թերթի անելիքներն ու հնարավորությունները։

Ժողովուրդների բարեկամության պրոպագանդման լավագույն միջոց են ՍՍՀՄ տարբեր ժողովուրդների ականավոր մարդկանց, գրականության ու կուլտուրայի գործիչներին նվիրված հոդվածները։ Այդ առումով հետաքրքրական է Ք. Աղախանյանի կենսագրական ակնարկը՝ նվիրված հայ և ադրբեջանցի ժողովուրդների բարեկամության ջերմ պաշտպան, գրող Ջալիլ Մահմեդկուլիզադեի ծննդյան 100-ամյակին։ Ապրելով ու գործելով ադրբեջանցի ու հայ բնակչություն ունեցող Նախիջևանում, Երևանում, Թիֆլիսում, Բաքվում,— կարդում ենք թերթում,— նա լավ ծանոթ էր հայ ժողովրդի կյանքին, կենցաղին, տիրապետում էր հայերենին... իր հայ հերոսների կերպարները նա ստեղծել է անմիջական դիտումների, անձնական տպավորությունների հիման վրա։

Թերթի էջերում հանդես են գալիս հայ և ադրբեջանցի թղթակիցները, որոնք անդուլ պրոպագանդում են ժողովուրդների բարեկամության լենինյան գաղափարը։

Խմբագրության մշտական ուշադրության առարկան է մատաղ սերնդի, պատանեկության դաստիարակության օջախների՝ մսուր-մանկապարտեզների, դպրոցների վիճակը։ Ամեն այդպիսի նորաբաց հաստատություն իր արժանի գնահատականն է գտնում թերթում։ Սամաղարի կոլտնտեսության միջոցներով կառուցվել է մանկապարտեզի երկհարկանի նոր շենքը. թերթը խրախուսում է այդ նախաձեռնությունը, մյուս կոլտնտեսություններին ևս մղում նման հանրօգուտ քայլի։

Վերջին տարիներին բարելավվել է նաև շրջանի բնակչության կենցաղ-սպասարկումը։ Կառուցվել են նորանոր օբյեկտներ։ Այս բնագավառը ևս չի վրիպել թերթի ուշադրությունից։ Այստեղ հաճախ ենք կարդում գյուղերում նոր կառուցվող բաղնիքների, կենցաղ-սպասարկման օբյեկտների, հիվանդանոցների, ծննդատների, բուժարանների, կուլտուրայի տների, բանվորական ճաշարանների մասին։

Բարեկեցիկ են «Կոմունիզմի ուղիով» թերթի խմբագրության աշխատանքային պայմանները. դրանք հնարավորություն են ընձեռում խմբագրությանը՝ ավելի սերտորեն կապվելու էջմիածնի շրջանի գյուղերի բնակչության, աշխատավորների հետ, կազմակերպելու հանդիպումներ, ցուցահանդեսներ, ուր ներկայացվում են շրջանի ինքնուս ստեղծագործողների աշխատանքները, խրախուսվում դրանցից լավագույնները։ Կազմակերպվող այդ ցուցահանդեսները մեծ չափով նպաստում են բնակիչների կուլտուրական մակարդակի բարձրացմանը։

Այս տեսակետից հետաքրքրական է Հոկտեմբերի 50-ամյակին նվիրված ցուցահանդեսը, ուր կային յուղաներկ կտավներ, գրաֆիկական գործեր, քանդակներ և այլն։ Թերթում հանգամանորեն ներկայացվում է ինքնուս ստեղծագործողների ցուցահանդեսը։ Ահա ինչ է գրում թերթը թոշակառու, 87-ամյա Աբրահամ Միշիկյանի գործերի մասին. «Ձնայած տարիքին, նա, ինչպես երևում է իր վրձնած կտավներից, պատանու խանդավառությամբ է նայում կյանքին։ Նրան ոգևորել են ծաղկող Հայաստանն ու նրա կառույցները...»։ «Կոմունիզմի ուղիով»-ը հիացած է նաև Քնարիկ Բուդաղյանի գործերով։ Նրա ստեղծագործություններն աչքի են ընկնում ինքնատիպությամբ, հայկական զարդանկարների հմուտ օգտագործմամբ։

Ինքնուս նկարիչ Ջաբար Կուլիևին է նվիրված Ա. Տերտերյանի՝ Երգը գույների լեզվով հոդվածը։ «Արվեստի սերը փոքրիկ Ջաբարի ձեռքը

վրձին է տվել։ Սկզբում աշակերտական տետրերի էջերի վրա, ապա ավելի մեծ կտավներում, չնայած անվարժ, բայց գծվել են նրա առաջին նկարչական խզբզոցները... Իր նկատմամբ ունեցած պատասխանատվության զգացումն ու աշխատասիրությունը նրան տանում են պրոֆեսիոնալ նկարչի սանդուղքներն ի վեր», գրում է հեղինակը։

Ջ. Կուլիևի անունը հայտնի է ո՛չ միայն էջմիածնի, այլև Վեդիի, Արտաշատի, Բասարգեչարի և այլ շրջանների աշխատավորությանը։ 1961 թվականին, ինքնուս ստեղծագործողների Մոսկվայում բացված համամիութենական ցուցահանդեսում ցուցադրվել են նաև նրա գործերը։ Կուլիևի «Սեխերով» նատյուրմորտը Մոսկվայում բարձր գնահատականի է արժանացել։ Այդ նկարի մասին գրվել է. «... հեղինակը շատ հաջող է ընտրել գույները, կարողանալով գտնել այնպիսի համադրություն, որի շնորհիվ այդ նկարը շատ երկար է մնում դիտողների հիշողության մեջ։ Կուլիևն, անկասկած, ունի նկարելու մեծ շնորհք»։

Այստեղ են ցուցադրվել նաև խաչատուր Եսայանի, Հովհաննես Շամբերյանի, Ռեգինե Ղազարյանի, Արմեն Աթայանի ստեղծագործությունները։ Խ. Եսայանի կտավներում տեսնում ենք Ադրիատիկ ծովը, Վենետիկի ջրանցքները, Փարիզի աստվածամոր տաճարը... Հովհաննես Շամբերյանի արվեստն աչքի է ընկնում իր անկեղծությամբ, անմիջականությամբ։ Հայրենի բնաշխարհի ներշնչանքն ես զգում նրա կտավներում։ Հարուստ է Արմեն Աթայանի թեմատիկան, վառ՝ երևակայությունը։ Նա «գիտե գույների լեզուն ներդաշնակել ասելիքի հետ, ստեղծել անմիջական տրամադրություն և դրանով վարակել դիտողին... Նրա կերտած հայրենի բնությունը հիացնում է բոլորին», գրում է Գ. Դերիկյանը։

Բայց միայն ուրախալի այս առաջընթացը, բարգավաճումը չէ, որ արտացոլված է թերթում։ Նրա աշխատողներին մտահոգում են շրջանի կյանքում եղած թերությունները, վրիպումներն ու բացերը, որոնց կապակցությամբ ստացվում և տպագրվում են աշխատավորների նամակներն ու բողոքները, օգտակար առաջարկները։ Եվ թերթը ժամանակին արձագանքում, ուղիներ է նշում դրանց վերացման համար։ Այսպես՝ Աղջաղշլաղ գյուղից Ի. Սիրանյանը, Գ. Պետրոսյանը, Ա. Երվանդյանը Գյուղի ճոգսերը վերնագրով նամակում գրում են, որ չունեն ակումբ, երկու տարի է զրկված են կինոյից, անկանոն է գործում գրադարանը, պակաս է էլեկտրաէներգիան։ Տպագրվել են նաև Միշտ մի բան պակաս է, Բացակայում է սպասարկման կուլտուրան, Որ սպառողը գոհ մնա, Անուշադրության մատնված ճաշարանը, Զպետք է ճանգստանալ ճաջողություններով և այլ նամակներ։

Ուրախալի ու խրախուսելի են «Կոմունիզմի ուղիով» թերթի ստեղծագործ ջանքերը, միշտ տեսնել մեր կյանքի լուսավոր ու նոր կողմերը, խրախուսել առաջավոր փորձի տարածումը հայրենի գյուղերում։ Իրոք, նորարար մարդկանց գործունեությունն է նշված թերթի կիզակետը։ Եվ դա լավ է։

Թերևս անհրաժեշտ լինի առաջիկայում մերթ ընդ մերթ շրջանի կուլտուրական վերելքն իմաստավորող, ընդհանրացնող բնույթի մի քանի հոդվածներ տպագրել՝ նվազագույն վիճակագրական տվյալներով հանդերձ։

ԱՍԱՏՐՅԱՆ ՋԵՓՅՈՒՌ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.

Адрес редакции.—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59գ.: Հեռախոսներ. խմբագիր՝ 7—16—90, պատ. քարտուղար՝ 7—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 7—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 7—19—80։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ — Ստորագրված է տպագրության 14/V 1968 թ.։

ՎՖ 03117 — Պատվեր 1068 — Տիրաժ 11.468 — Գինը 25 կոպ.։

Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51։

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Քեզ սիրող Վ. Ուլյանով *(Վ. Ի. Լենինի նամակները մորը)*, Մ., 1967, 143 էջ։

*Գրքում զետեղված են Պետերբուրգից, Գերմանիայից, Անգլիայից, Ֆրանսիայից, Շվեյցարիայից և այլ վայրերից 1893—1916 թթ. Վլադիմիր Իլյիչի Մարիա Ալեքսանդրովնա Ուլյանովային գրած նամակները (1835—1916)։*

ԿՐՈՒՊՍԿԱՅԱ Ն. Կ.—Պետք է սովորենք Իլյիչից—*Հոդվածների ու ելույթների ժողովածու։ Մ.,* «Молодая гвардия» *հրատ., 1967, 255 էջ։*

*Վ. Ի. Լենինի կնոջ՝ անվանի կոմունիստ-մանկավարժի սույն ժողովածուում զետեղված աշխատություններում պատմվում է Վ. Ի. Լենինի մանկության, ուսման, աշխատանքի, կոմունիստական կուսակցություն կազմակերպելու ու սովետական պետության ստեղծման ու ղեկավարման մասին։*

ԳՈՆՉԱՐՈՎ Ա. Դ. և ԼՈՒՆՅԱԿՈՎ Պ. Ի.—Վ. Ի. Լենինը և գյուղացիությունը։ *Մ., Քաղհրատ., 1967, 199 էջ։*

*Այս գրքում հեղինակները պատմել են, թե ինչպես Վ. Ի. Լենինը, հենվելով մասսաների վրա, նրանց հետ էր որոշում կուսակցության և կառավարության անելիքները գյուղում։*

ՇԱԼԱԳԻՆՈՎ Վ. Կ.—Պաշտպանությունը հանձնարարված է Ուլյանովին։ *Նովոսիբիրսկ Արևմտյան Սիբիրի հրատ., 1967, 132 էջ։*

*Վ. Ի. Լենինի այս դրվագի մասին առաջին անգամ է գրվում։ Հեղինակը պատմում է, թե ինչպես մեծ առաջնորդը Պետերբուրգի համալսարանն ավարտելուց հետո (1892—1893 թթ.) նշանակվել է Սամարայի օկրուգի դատարանի երդվյալ հավատարմատարի-փաստաբանի օգնական և պաշտպանել թշվառ գյուղացիների 10 գործ, ընդդեմ կալվածատերերի։*

ՆԵԼԻԴՈՎ Ն. Վ. և ԲԱՐՁՈՒԳՈՎ Պ. Վ.—Լենինյան դպրոցը Լոնժյումոյում։ *Մ., 1967, 78 էջ։*

*1911 թ. հիմնադրվեց Լոնժյումոյի լենինյան դպրոցը, որի գործունեությունն ու նշանակությունն է արտացոլվում այս գրքում։ Այդ մասին Վսեվոլոդ Վիշնևսկին գրել է, որ հենց այստեղ ծնվեց ՍՍՀՄ և ողջ աշխարհի կոմունիստական լուսավորության գործը։*

ՅՈՒԶԲԱՇՅԱՆ Բ. Տ.—Գորկին և գրականագիտության մի քանի հարցեր։ *Եր., «Հայաստան» հրատ., 1968, 380 էջ։*

*Մ. Գորկու ծննդյան 100-ամյակի առթիվ հրապարակված այս մենագրության մեջ հեղինակն ուսումնասիրել է սոցիալիստական ռեալիզմի ստեղծագործական մեթոդի ծագման ու ձևավորման պատմական ժամանակաշրջանը, գաղափարական զարգացման օրինաչափությունները և այլն, բացահայտելով Մ. Գորկու գեղարվեստական ստեղծագործության և նրա տեսական-գեղագիտական սկզբունքները։*

ԽԱՉԱՏՐՅԱՆ Լ. Ս.—Հայկական ՍՍՀ էկոնոմիկան *(Զարգացման համառոտ տեսությունն ու հեռանկարները), Մ.,* «Экономика» *հրատ., 1967, 104 էջ։*

*Արտացոլված են Հայաստանի ժողովրդական տնտեսության 1966—1970 թթ. զարգացումն ու հեռանկարները։*

Սովետական Միության Կոմունիստական կուսակցության հեղափոխական թեորիայի զարգացումը։ *Մ., 1967, 456 էջ։*

*Կոլեկտիվ այս մենագրությունը նախատեսված է մեր կուսակցության պատմությունն ու մարքս-լենինյան թեորիան ուսումնասիրողների համար։ Զետեղված հոդվածները նվիրված են մարքս-լենինյան թեորիայի ստեղծագործական զարգացմանն ու ՍՄԿԿ-ի գործունեությանը։*

ԳԻՆԸ 25 Կ. 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## *ԳՅՈՒՐՁԱՆ ԻՆԿՈՒԲԱՏՈՐՈՒՄ*

*Ինկուբատորում կարելի է աճեցնել ո՛չ միայն հավի ճտեր, այլև օձեր: Անցյալ տարվա վերջին Տաշքենդում Ուզբեկական գիտությունների ակադեմիայի կենդանաբանության ու պարազիտոլոգիայի ինստիտուտի հատուկ ինկուբատորում ստացվել է սերունդ ամենաթունավոր օձից՝ գյուրզայից:*

*Արհեստական պայմաններում թունավոր օձերից սերունդ ստանալը գործնական մեծ նշանակություն ունի: Բժշկության և դեղագործական արդյունաբերության մեջ մեծ է օձի թույնի պահանջը, իսկ օձերի թիվը բնական պայմաններում գնալով նվազում է:*

## *ՁՈՒԿԸ... ԽԵՂԴՎՈՒՄ Է*

*Հնդկական օվկիանոսի արևելյան շրջանում հայտնաբերվել է ձուկ, որը շնչում է մթնոլորտային օդով և ոչ թե ջրից արտազատվող թթվածնով: Այդ ձուկն ունի հատուկ օդապահեստ: Եթե խանգարեն նրան օդ վերցնել, ապա նա կենդանու նման կխեղդվի:*

## *ՀԱՑԸ ՓՈԽԱԿԵՐՊՎՈՒՄ Է... ՁՎԻ*

*Մագդեբուրգի (ԳԴՀ) գիտնականներին անվանում են «ցրտի կախարդներ»: Նրանք մշակել են թարմ ձվերի կոնսերվացման նոր մեթոդ: Սկզբում ձուն սառեցնում են C-ի 20°-ում, իսկ հետո չորացնում լրիվ վակուումի պայմաններում և ձուն վեր է ածվում հացի: Հացերը կարելի է պահել ցելոֆոնի ծրարում, մեկ տարուց ավելի: Որպեսզի հացը վերածվի ձվի, հարկավոր է այն լուծել տաք ջրում:*

## *ԴՈՄՆԱ-ՌՈԲՈՏ*

*Մոսկվայի ինժեներները նախագծել են դոմնային վառարանների կառավարման ավտոմատ սիստեմ, որի շնորհիվ անցյալի գիրկը կանցնի մետաղագործության ևս մի ծանր պրոֆեսիա. մոռացության կըմատնվի հնոցաբանվորի մասնագիտությունը, որը ծնվել է մետաղագործության հետ մեկտեղ:*

## *ՀՈՐՄՈՆ ՄԻՋԱՏՆԵՐԻ ԴԵՄ*

*Հարվարդի (ԱՄՆ) համալսարանում սինթեզվել է նոր պրեպարատ. այդ բնական պայմաններում միջատների գլխում գտնվող երկու փոքրիկ գեղձերից արտադրվող հորմոնն է: Այն անհրաժեշտ է միջատներին, բայց միայն զարգացման սկզբում: Սեռական հասունությունից հետո հորմոնի զատումը լրիվ ընդհատվում է: Այդ ժամանակ միջատը դառնում է հորմոնի նկատմամբ չափազանց զգայուն, և երբ սինթետիկ պրեպարատն ընկնում է հասուն միջատի օրգանիզմի մեջ, խանգարվում է նրա նորմալ զարգացման ընթացքը և միջատը սատկում է:*

## *ԹՌՉՈՂ ՀԱՐԿԵՐ*

*Պատրաստի հարկերից տներ պատրաստելու ինդուստրիալ մեթոդ են մշակել ԳԴՀ-ի շինարարները: Նրանք առաջարկում են բլոկները կոմբինատից շենքի տեղը հասցնել ուղղաթիռներով: Դա տասնյակ անգամ ավելի օգտավետ է, քան բեռնատար ավտոմեքենաներով տանելը: Տասներկու հարկանի տունը հավաքում են 190 ժամում:*

## *ՀԻՎԱՆԴՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵԴԵԿՏՈՐ*

*Վաշինգտոնի մի խումբ բժիշկների ստեղծած այս դեդեկտորն աշխատում է հետևյալ սկզբունքով: Ազատ ռադիկալներն (բիոքիմիական պրոցեսների ընթացքում խոշոր մոլեկուլներից անջատվող շատ ակտիվ մասնիկները) ունակ են տալու պարամագնիսային ծագում ունեցող ազդանշաններ: Այդ ազդանշանները որսում են սպեկտրոմետրերի և էլեկտրոնային նոր սարքերի միջոցով: Հետազայում պարզվեց, որ այդպիսի ազդանշանների բնույթը տարբեր է, այն կախված է նրանից, թե ինչպիսի հյուսվածքներից են դրանք ստացվում, հիվա՞նդ, թե՞ առողջ:*

*Դիագնոստիկ այդ դեդեկտորով կարելի է հայտաբերել դեղնախտը, երիկամների հիվանդությունները, սրտի արատները և նույնիսկ, որն առավել կարևոր է՝ քաղցկեղի նախնական ստադիաները:*